ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1957

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ



### ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ








# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐԸ

*Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի բյուրոյի որոշմամբ 1957 թվականի հոկտեմբեր և նոյեմբեր ամիսներին անցկացվելու են սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներ և շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսներ։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն սկզբնական պարտիական կազմակերպություններին, պարտիայի շրջկոմներին ու քաղկոմներին պարտավորեցրեց հաշվետու ընտրական ժողովներն ու պարտիական կոնֆերանսներն անցկացնել գաղափարական ու կազմակերպական բարձր մակարդակով, կոմունիստներին ու բոլոր աշխատավորներին ՍՄԿՊ XX համագումարի որոշումները լիովին իրականացնելու համար մոբիլիզացնելու նշանաբանով։*

*Այս կարևոր քաղաքական միջոցառումը հաջող անցկացնելու համար պարտիայի շրջկոմներն ու քաղկոմները պարտավոր են հենց սկզբից խորապես մտածված նախապատրաստական աշխատանք կատարել։ Պետք է նկատի ունենալ, որ մեր պարտիայի XX համագումարից հետո ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների կյանքում խոշոր ու կարևոր փոփոխություններ են տեղի ունեցել։ Պարտիական կազմակերպությունների պրակտիկ աշխատանքը դարձել է ավելի խոր ու բովանդակալից, բարձրացել է պարտիական կոմիտեների դերը որպես քաղաքական ու կազմակերպական ղեկավար օրգաններ, բարձրացել է նրանց պատասխանատվությունը տնտեսության ու կուլտուրայի վիճակի համար, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, մեքենա-տրակտորային կայանների, սովետական տնտեսությունների, հիմնարկությունների և ուսումնական հաստատությունների աշխատանքի համար։*

*Առաջիկա հաշվետու-ընտրական ժողովների ու պարտիական կոնֆերանսների նշանակությունը մեծանում է նաև նրանով, որ դրանք տեղի են ունենալու համաժողովրդական տոնի՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի մոտալուտ 40-րդ տարեդարձի առթիվ առաջացած քաղաքական ու արտադրական վիթխարի վերելքի պայմաններում։*

*Հաշվետու-ընտրական ժողովներն ու պարտիական կոնֆերանսները կարևոր իրադարձություններ են պարտիական կազմակերպությունների կյանքում։ Պարտիայի շրջկոմներն ու քաղկոմները պարտավոր են լուրջ ուշադրություն դարձնել նրանց հաջող նախապատրաստման ու անցկացման վրա։*

*Պարտիական ժողովներն ու կոնֆերանսները գործնական և քաղաքական բարձր մակարդակով կանցնեն այն դեպքում, երբ հաշվետու զեկուցումները կազմված լինեն ինքնաքննադատական ոգով, կոմունիստներին մոբիլիզացնեն թերությունները վերացնելու համար, պարտիական կազմակերպությունների առջև կոնկրետ խնդիրներ դնեն։ Պարտիական կոմիտեները պետք է այնպես*

տանեն գործը, որ հաշվետու զեկուցումներում ուղղակի ու լրիվ պատասխաններ տրվեն այն հարցին, թե պարտիական կազմակերպությունն ու ամեն մի կոմունիստ ինչպես են կենսագործել պարտիայի որոշումները։

Ինչպես անցյալ հաշվետու-ընտրական ժողովները ցույց տվին, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն զգալիորեն ամրապնդվել, կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մեծ փորձ են կուտակել։ Աճել է նրանց ազդեցությունը տնտեսական ու քաղաքական խնդիրների հաջող լուծման գործում, ուժեղացել է կոմունիստների մասնակցությունը պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ. նրանք բարձր ակտիվություն էին ցուցաբերում հաշվետու զեկուցումների և հետագա խնդիրների քննարկման գործում, համարձակորեն և սուր քննադատում էին սխալներն ու թերությունները. աշխատանքի արդյունքները գնահատելիս՝ բարձր պահանջկոտություն էին ցուցաբերում։

Հայաստանի ԿՊ Կենտկոմի բյուրոն պարտիայի շրջկոմներին ու քաղկոմներին պարտավորեցրել է հաշվետու ժողովներում և կոնֆերանսներում բոլոր պայմաններն ստեղծել քննադատության ու ինքնաքննադատության լայն ծավալման համար, որպեսզի կոմունիստները կարողանան խորամուխ լինել գործի էության մեջ, օգնեն երևան հանելու պարտիական բյուրոների գործունեության մեջ եղած լուրջ թերությունները և խելամիտ միջոցներ նշեն դրանց վերացման համար։

Հաշվետու զեկուցումներում նշելով տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում ձեռք բերած անվիճելի հաջողությունները՝ միաժամանակ անհրաժեշտ է կոմունիստների գլխավոր ուշադրությունը դարձնել այն չլուծված խնդիրների, եղած թերությունների վրա, որոնք խանգարում են մեր առաջընթացին։ Կոմունիստների հոգատարությունը պետական առաջադրանքների հաջող կատարման նկատմամբ, եղած ռեզերվների ու հնարավորությունների լավագույն օգտագործման նկատմամբ—ահա թե ինչի վրա պետք է կենտրոնացվի պարտիական ընկերների ուշադրությունը։

Զեկուցումների քննարկման ընթացքում քննադատության ու ինքնաքննադատության մակարդակը մեծ չափով կախված կլինի նրանից, թե պարտիայի շրջկոմներն ու քաղկոմներն ինչպես կնախապատրաստեն ժողովներն ու կոնֆերանսները։ Ամենից առաջ խոսքը վերաբերում է նրան, որ պարտիական կոմիտեների հաշվետվությունները լինեն բովանդակալից ու սուր, որ նրանք տան շրջանի, քաղաքի գործերի վիճակի խոր վերլուծությունը, հաջողությունների հետ միասին ցույց տան նաև թերությունները և դրանց պատճառները։ Արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է լինեն հետագա տեխնիկական պրոգրեսի, արտադրության կազմակերպումը բարելավելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու հարցերը։

Արդյունաբերության առջև դրված մեծ ու բարդ խնդիրների իրականացումը պարտիական կազմակերպություններից կպահանջի, որ նրանք խորապես թափանցեն արտադրության էկոնոմիկայի մեջ, ժամանակին բացահայտեն ու վերացնեն թերությունները, բարձրացնեն արդյունաբերության բոլոր աշխատողների ստեղծագործական ակտիվությունը։ Այս նպատակով պարտիական կազմակերպություններին անհրաժեշտ է կատարելագործել ադմինիստրացիայի



գործունեությանը վերահսկելու մեթոդները, քաղաքական աշխատանքը հմտորեն զուգակցել տնտեսական աշխատանքի հետ։

Պարտիական կոմիտեները պարտավոր են գործն այնպես տանել, որ ոչ մի ետ մնացող ձեռնարկություն չլինի, որ ձեռնարկությունների արտադրական պլանները կատարվեն ոչ միայն համախառն արտադրանքի, այլև ըստ ասորտիմենտի, ըստ տրված նոմենկլատուրայի, կատարվեն համաչափորեն, թե՛ քանակական և թե՛ որակական ցուցանիշներով։

Պարտիական ժողովներում ու կոնֆերանսներում պետք է լայնորեն քննարկվեն կոմունալ տնտեսության, բնակարանային շինարարության և աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերը։ Կոնֆերանսներում ու հաշվետու-ընտրական ժողովներում պետք է մեծ ուշադրություն հատկացվի քաղաքական ու տնտեսական աշխատանքի ճիշտ զուգակցման հարցերին, պարտիական-կազմակերպական և իդեոլոգիական գործունեությունն ամեն կերպ ուժեղացնելու, կադրերի ընտրությունը, տեղաբաշխումը բարելավելու հարցերին։

Ի՞նչպես է պարտիական կոմիտեն կատարում պարտիայի ու կառավարության դիրեկտիվներն ու ցուցումները, ի՞նչպես է ուղղություն տալիս սովետական, տնտեսական, պրոֆմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների գործունեությանը, ի՞նչպես է կապված պարտիական մասսաների հետ, աշխատավորների հետ, ի՞նչպես է աշխատում կադրերի հետ—այս բոլոր հարցերը պետք է լայնորեն լուսաբանված լինեն հաշվետու զեկուցումներում և դրվեն կոմունիստների քննարկմանը։

Պարտիական հաշվետու-ընտրական ժողովները գյուղում զուգադիպում են գյուղատնտեսական եռուն աշխատանքների ժամանակաշրջանին։ Պարտիական ժողովներն այնտեղ պետք է անցնեն կոմունիստների, բոլոր կոլտնտեսությունների, ՄՏ կայանների, սովետական տնտեսությունների աշխատողների մոբիլիզացման նշանաբանով՝ գյուղատնտեսության զարգացման միջոցառումները գործնականում իրականացնելու համար։ Գյուղական կոմունիստների անհետաձգելի խնդիրը պետք է լինի բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների հաջող ավարտումը։ Նրանք պետք է բոլոր միջոցները ձեռք առնեն, որ ամեն մի կոլտնտեսություն և սովետական տնտեսություն լավ նախապատրաստվի անասունների ձմեռմանը, բավարար քանակությամբ կեր ունենա, կարգի բերի անասնապահական շենքերը, խիստ կարևոր է նաև սերմացուն առանձնացնել, ժամանակին աշնանացանք կատարել, ցրտահերկ անել և դրանով իսկ եկող տարվա բարձր բերքի հիմքը դնել։

Պարտիան ուսուցանում է, որ մասսաներն իրենց ղեկավարներին ստուգում են ժողովներում, ակտիվի նիստերում, կոնֆերանսներում, համագումարներում՝ նրանց հաշվետվությունները լսելով, թերությունները քննադատելով, վերջապես այս կամ այն ընկերներին ղեկավար օրգաններում ընտրելու կամ չընտրելու միջոցով։ Այսպիսի ստուգումը, ցածից եկող ստուգումը մարդկանց ստուգելու ամենազորավոր եղանակներից մեկն է։

Պարտիական օրգանների անպայման ընտրովի լինելը, նրանց հաշվետու լինելը պարտիական մասսաների առաջ, քննադատության ու ինքնաքննադատության ազատությունը պարտիական կյանքի հաստատուն նորմերն են։ Դրանք նպատակ ունեն համակողմանի ստուգել պարտիական օրգանների ու

նրանց ղեկավարների գործունեությունը, ակտիվացնել կոմունիստներին, նոր կադրեր առաջ քաշել, բարելավել ամբողջ պարտիական աշխատանքը։

Կոմունիստական շինարարության խնդիրները պահանջում են, որ պարտիական կազմակերպությունները շարունակ կատարելագործեն տնտեսության և կուլտուրայի զարգացումը ղեկավարելու մեթոդները, բարձրացնեն պարտիական-քաղաքական և պարտիական-կազմակերպական աշխատանքի մակարդակը։ Պարտիական օրգանների հաշվետվություններն ու ընտրությունները կոչված են խիստ կարևոր դեր խաղալու այդ գործում։

Հաշվետու-ընտրական ժողովներն ու պարտիական կոնֆերանսները բարձր մակարդակով անցկացնելու վճռական պայմանն այն է, թե ինչպես են կազմված հաշվետու զեկուցումները։ Պետք է նկատի ունենալ, որ հաշվետու զեկուցում պատրաստելը սոսկ պարտիական կազմակերպության կամ պարտիայի շրջկոմի քարտուղարի գործը չէ։ Հաշվետու զեկուցումը քաղաքական կարևոր փաստաթուղթ է, որի մեջ ամփոփվում են հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշխատանքի արդյունքները, ձևակերպվում են պարտիական կազմակերպության հերթական խնդիրները, ուստի և պարտիական կոմիտեի բոլոր անդամները պետք է մասնակցեն հաշվետու զեկուցումը նախապատրաստելուն և իրենց պատասխանատու զգան պարտիական կազմակերպության առջև։ Միայն այդ միջոցով հնարավոր է լիովին երևան հանել աշխատանքում եղած թերությունները և ուղիներ նշել դրանց վերացման համար։

Հայտնի է, որ մակերեսային, ոչ ինքնաքննադատական հաշվետվությունները կոմունիստների ակտիվությունն ու սուր քննադատություն չեն հարուցում, զեկուցողները ժողովին սխալ ընթացք են տալիս, երբ չափից ավելի են խոսում նվաճումների մասին և շատ քիչ են կանգ առնում թերությունների և այդ թերությունները թույլ տվող մարդկանց վրա։

Անցյալ տարիների փորձը ցույց է տվել, որ հաշվետու-ընտրական ժողովներն ու պարտիական կոնֆերանսները կոմունիստների մեծ ակտիվության, աշխատանքում եղած թերությունների ծավալուն քննադատության պայմաններում են անցնում, երբ պարտիական կոմիտեները լավ են նախապատրաստում ժողովներն ու կոնֆերանսները, ինչպես հարկն է խորհում են իրենց գործունեության արդյունքների մասին, խնամքով ընդհանրացնում են կատարված աշխատանքի փորձը, սկզբունքայնորեն երևան են բերում թերությունները և կոմունիստների քննարկմանն են դնում բովանդակալից հաշվետու զեկուցումներ։

Ժողովներում ու կոնֆերանսներում պետք է լուրջ ուշադրություն հատկացվի պարտիական կազմակերպությունների իդեոլոգիական աշխատանքի հարցերի վրա։ Այժմ, երբ պարտիան ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հզոր վերելք է կազմակերպել, առաջնակարգ նշանակություն է ստանում մասսաների մոբիլիզացումը խոշոր ու բարդ խնդիրների լուծման համար, աշխատավորների կոմունիստական դաստիարակության համար։ Շատ կարևոր է, որ խորապես քննարկվեն կադրերի, բոլոր կոմունիստների մարքսիստական-լենինյան դաստիարակության հարցերը, մասսայական ու քաղաքական աշխատանքի, գիտական հիմնարկությունների գործունեության հարցերը։

Պարտիական կազմակերպությունների իդեոլոգիական աշխատանքը պետք է մարտական բնույթ կրի։ Նա կոչված է օր առ օր աշխատավորներին պարզաբանելու աշխարհում տեղի ունեցող իրադարձությունները, մեր պարտիայի քաղաքականությունը, ոգեշնչելու մասսաներին՝ պայքարելու կոմունիստական



շինարարության նախատեսված պլանների իրականացման համար։ Պարտիական կազմակերպությունները պետք է ամենօրյա հոգատարություն ցուցաբերեն աճող սերնդի կոմունիստական դաստիարակության, կոմերիտմիության ամբողջ աշխատանքը բարելավելու նկատմամբ։

Պարտիական կազմակերպությունները պարտավոր են մինչև վերջ հաղթահարել պրոպագանդայի ու ագիտացիայի կտրվածությունը կյանքից։ Մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքը, մեր ամբողջ պրոպագանդան ու ագիտացիան կոչված են պարտիական, սովետական ու տնտեսական կադրերին, սովետական բոլոր մարդկանց օգնելու կոմունիստական շինարարության գործնական խնդիրների լուծման գործում, նպաստելու սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա հզոր վերելքի, ժողովրդի բարօրության բարձրացման ուղղությամբ պարտիայի ու կառավարության որոշումների կենսագործմանը։

Հաշվետու-ընտրական ժողովները ներպարտիական դեմոկրատիայի լենինյան սկզբունքների գործնական մարմնավորումն են կյանքում։ Կոմունիստները անմիջականորեն մասնակցություն են ունենում պարտիական կյանքի, տնտեսական ու կուլտուրական շինարարության արմատական հարցերի քննարկմանը, գնահատական են տալիս ղեկավար պարտիական օրգանների գործունեությանը, իրենց առջև կանգնած խնդիրների իրականացման ուղիներն են նշում։

Ներպարտիական դեմոկրատիայի սկզբունքների խստիվ պահպանումը հաշվետու-ընտրական ժողովների բարձր մակարդակի կարևոր պայմանն է։ Կենտրոնական Կոմիտեն իր որոշման մեջ պարտիական կոմիտեներին պարտավորեցրել է խստորեն պահպանել ներպարտիական դեմոկրատիան, վճռականորեն կասեցնել քննադատության ու ինքնաքննադատության լայն ծավալմանը խանգարելու ամեն մի փորձ։

Ընդունված որոշումների կատարման ստուգումը, նախատեսված միջոցառումների կենսագործման նկատմամբ մշտական հոգատարությունը կազմակերպական աշխատանքի հաջողության կարևորագույն պայմանն է։ Բոլոր որոշումների մեջ, որոնց իրականացման համար պայքարի են կոչված պարտիական կազմակերպությունները, հաշվետու-ընտրական ժողովների ու կոնֆերանսների որոշումները հատուկ տեղ են գրավում։ Այդ որոշումների մեջ ընդհանրացվում է հաշվետու ժամանակաշրջանում կազմակերպության կուտակած աշխատանքի փորձը, բացահայտվում են հիմնական թերությունները, նշվում են հետագա աշխատանքի ուղիները։

Պարտիական կոմիտեները պարտավոր են հաշվետու ժողովներից ու պարտիական կոնֆերանսներից անմիջապես հետո ուսումնասիրել բոլոր քննադատական դիտողությունները, միջոցներ նշել դրանց իրականացման համար, սահմանել կատարման ժամկետներ և այդ գործին պատասխանատու անձեր։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները բոլշևիկյան դաստիարակության դպրոց են։ Այդ ժողովներում ու կոնֆերանսներում կոմունիստները կանեն շատ արժեքավոր առաջարկություններ, որոնց նպատակը կլինի բարելավել պարտիական, սովետական ու տնտեսական աշխատանքները։ Կարևոր է, որ յուրաքանչյուր քննադատական դի-

տողություն ու առաջարկություն հաշվի առնվի, որ պարտիական մասսաների փորձն ուշի-ուշով ուսումնասիրվի և ընդհանրացվի։

Հաշվետու-ընտրական ժողովների ու պարտիական կոնֆերանսների կարևոր գործն է պարտիական օրգանների ընտրությունը։ Ընտրությունների ընթացքում պարտիական օրգաններում պետք է առաջադրվեն առավել հեղինակավոր կոմունիստներ, լավ պատրաստված կադրեր, որոնք ստուգված են պարտիայի քաղաքականության հաջող իրականացման համար մղվող պայքարում։ Հայաստանի ԿՊ Կենտկոմի բյուրոն պարտիական կոմիտեներին պարտավորեցրել է ապահովել յուրաքանչյուր թեկնածության ազատ քննարկումը, ղեկավար պարտիական օրգաններում այնպիսի կոմունիստների ընտրությունը, որոնք աչքի են ընկել գործնական աշխատանքում, ընդունակ են գլխավորելու պարտիական կազմակերպությունը և գործով իրականացնելու պարտիական որոշումները։

Պարտիական կոմիտեների ընտրությունների կարգը պայմանավորված է ՍՄԿՊ Կենտկոմի հրահանգով, որի դրույթները պետք է լրիվին ու խստորեն պահպանվեն։ Կենտրոնական Կոմիտեն ռեսպուբլիկական, քաղաքային ու շրջանային թերթերին պարտավորեցրել է սիստեմատիկաբար լուսաբանել հաշվետու-ընտրական ժողովների և շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսների ընթացքը։

Հաշվետու-ընտրական ժողովների հաջող անցկացումը հզոր միջոց կլինի պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքի հետագա բարելավման, պարտիական ու արտադրական կյանքում յուրաքանչյուր կոմունիստի ակտիվության բարձրացման համար։ Ժողովները սկզբնական պարտիական կազմակերպություններին կօգնեն է՛լ ավելի բարձրացնելու իրենց դերը մասսաներին մոբիլիզացնելու գործում՝ պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրների լուծման, կոմունիստական շինարարության նորանոր հաջողությունների հասնելու համար։

Ընթացիկ տարում պարտիական հաշվետու-ընտրական ժողովների բնորոշ առանձնահատկությունն այն է, որ դրանք տեղի են ունենալու այնպիսի իրադրության մեջ, երբ համաժողովրդական պայքար է մղվում իրականացնելու ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները և ՍՄԿՊ Կենտկոմի դիրեկտիվները՝ սոցիալիստական արդյունաբերության հետագա զարգացման և գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի մասին։ Հենց այս էլ որոշելու է այն բարձր պահանջկոտությունը, որով կոմունիստները գնահատելու են կատարված աշխատանքի արդյունքները, բացահայտելու են եղած թերությունները և միջոցներ են մշակելու պարտիական կազմակերպությունների գործունեությունը ավելի բարելավելու համար։

---

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

*Հ. ՄԱՐԳԱՐՅԱՆ*

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար

Շուտով քառասուն տարի կլրանա աշխարհը ցնցող այն նշանավոր օրից, երբ «Ավրորա»-ի համազարկերը ազդարարեցին մարդկության նախապատմության վախճանը և նրա իսկական պատմության սկիզբը։ Երկրագնդի մեկ վեցերորդ մասում հաղթանակած պրոլետարիատը պատմության մեջ առաջին անգամ սովետական սոցիալիստական կարգեր հռչակելով՝ հաստատեց իր դիկտատուրան, բանվորների և գյուղացիների իշխանությունը։

Ամբողջ սովետական ժողովուրդը տնտեսական-կուլտուրական մեծ վերելքով է դիմավորում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի փառապանծ տարեդարձը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան վճռական ու շրջադարձային դեր խաղաց ամբողջ աշխարհի մարդկության բախտի առումով։ Այն ժամանակ, երբ ամբողջ աշխարհում մոլեգնում էր իմպերիալիստական արյունահեղ պատերազմը և մարդկությունը հոշոտվում էր կապիտալիստական տերությունների մագիլներում, առաջին անգամ հնչեցին Հոկտեմբերի փրկարար կոչերը՝ «Խաղաղություն աշխարհին», «Խաղաղություն խրճիթներին, պատերազմ պալատներին»։ Այն տարիներին, երբ պատերազմող բոլոր երկրներում անասելի շովինիստական մոլուցքն էր գործում, մարդկությանը տրվեց ժողովուրդների եղբայրացման վսեմ լոզունգը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փոթորիկներից ծնված ժողովուրդների ինտերնացիոնալ միասնության ու բարեկամության գաղափարը համակեց առաջավոր մարդկության միտքը։ Այսօր Հոկտեմբերի վեհ գաղափարների դրոշի ներքո պայքարող մարդկանց բանակը արդեն հաշվվում է ոչ թե միլիոններով, նրանց թիվը անցել է միլիարդից։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան մեկընդմիշտ հռչակեց մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացում, բոլոր ազգերի ինքնորոշման իրավունք։ Ցարական Ռուսաստանում, որը ժողովուրդների բանտ էր, նա վերացրեց ազգային ճնշումը, ապահովեց բոլոր ազգությունների քաղաքական իրավահավասարություն։ Ռուսաստանի ժողովուրդները, որոնք նախկինում ճնշված էին ու հետամնաց, հնարավորություն ստացան տնտեսապես ու կուլտուրապես հասնելու աշխարհի առաջավոր երկրների մակարդակին, իսկ շատ կողմերով նաև անցնելու նրանցից։

Լենինյան ազգային քաղաքականությունը ամենալայն ասպարեզ բացեց անծայրածիր սովետական երկրի բոլոր ժողովուրդների քաղաքական ու տնտեսական զարգացման համար, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական նրանց կուլտուրայի բարգավաճման համար։

Ցարական Ռուսաստանի նման բազմազգ մի երկրում, որտեղ ազգային

հալածանքն էր իշխում, սոցիալիստական հարաբերությունների վրա հիմնված նոր, սովետական բազմազգ պետության ստեղծումը բոլորի համար դարձավ ազգային հարցի իսկական լուծման, ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համագործակցության իրականացման օրինակ։ Դա ռևոլյուցիոնացնող մեծ օրինակ ծառայեց ամբողջ աշխարհի ժողովուրդներին այն պայքարում, որ մղում են նրանք սոցիալական ու ազգային ազատագրության համար։ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի մեծ գաղափարները և վիթխարի նվաճումները արտակարգ թափ հաղորդեցին ազգային-ազատագրական շարժմանը իմպերիալիստների կողմից ճնշված գաղութային ու կախյալ երկրներում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան էր, որ գաղութային ռևոլյուցիաների ու ժողովրդա-ազատագրական պայքարի դարաշրջան բացեց, և այդ հասցրեց նրան, որ Եվրոպայում ու Ասիայում մի ամբողջ շարք երկրներ անջատվեցին կապիտալիստական սիստեմից, որոնց մեջ ստեղծվեցին ժողովրդա-դեմոկրատական կարգեր և հաջողությամբ իրականացվում է սոցիալիզմի կառուցումը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գաղափարները Ասիայի, Արաբական Արևելքի և Աֆրիկայի բազմաթիվ ժողովուրդների պայքարի հանեցին իմպերիալիստական գաղութային ճնշման դեմ, իրենց երկրների ազգային անկախության ու սուվերենության համար։ Եվ այս ամենը հասցրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզման։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան անգնահատելի ու վճռական դեր խաղաց բոլոր ճնշված ու ստրկացված ժողովուրդների բախտի համար։ Նրա ազատարար դերը առանձնապես մեծ է հայ ժողովրդի համար, որը վերջնականապես փրկվեց կործանումից ու ֆիզիկական բնաջնջումից, դարձավ իր սեփական պետությունն ունեցող ազատ, սուվերեն ժողովուրդ։ Նրա էկոնոմիկան ու կուլտուրան ծաղկում են ու զարգանում։ Այդ ամենի համար հայ ժողովուրդը պարտական է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիային, փառապանծ Կոմունիստական պարտիային, Լենինի անմահ գաղափարներին։



Հայ ժողովուրդն այսօր արժանապատվությամբ ու հպարտությամբ է ամփոփում իր մեծ նվաճումները, որը ձեռք է բերել Կոմունիստական պարտիայի և նրա լենինյան Կենտկոմի իմաստուն ղեկավարությամբ։ Ծանր էր հայ ժողովրդի վիճակը անցյալում։ Բազում դարեր շարունակ նա զուրկ էր իր պետականությունից և գտնվում էր օտարերկրյա զավթիչների լծի տակ։ Զավթիչները նվաճում էին երկիրը, բայց ոչ մեկին չէր հաջողվում ընկճել ժողովրդի ազատասեր ոգին։ Հայ ժողովրդի բազմադարյան պատմությունը ժողովրդաազատագրական պատերազմների մի անվերջ շարան է եղել։ Սակայն արյունահեղ այդ պայքարը հարկ եղած արդյունքը չի տվել՝ ուժերի անհավասարության պատճառով։ Ինչպես ազգային, այնպես էլ սոցիալական ճնշումից ազատագրական միակ ճիշտ ուղին հայ ժողովրդին ցույց տվեցին մեծ Լենինը, նրա հզոր պարտիան։ Այդ ուղին հայ ժողովրդի սոցիալ-ազատագրական պայքարի միացումն էր Ռուսաստանի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն-ազատագրական պայքարին։



Դարի սկզբին, երբ Անդրկովկասում սկիզբ առավ սոցիալ-դեմոկրատական բանվորական շարժումը, հայ ժողովրդի պայքարը կազմակերպված ու ճիշտ ուղղություն ստացավ։ Այդ շարժման գլուխ են կանգնում ժողովրդի լավագույն զավակները, մեծ Լենինի աշակերտներ ու զինակիցներ Ստ. Շահումյանը, Բ. Կնունյանցը, Ս. Սպանդարյանը, Ա. Միկոյանը, Ա. Մյասնիկյանը, Ի. Լալայանցը, Կամոն և ուրիշ շատերը։ Ռևոլյուցիոն պայքարի պատմության մեջ շատ փայլուն էջեր են գրել հայ ժողովրդի զավակները, Կոմունիստական պարտիայի նվիրված գործիչները։ Աճած ու կոփված լինելով ռուսական ռևոլյուցիայի մարտերում, դաստիարակված լինելով մեծ Լենինի կողմից՝ նրանք գլխավորում էին հայ աշխատավորության պայքարն իր սոցիալական ու ազգային ազատագրության համար, պայքար, որ ավարտվեց աշխատավորների լիակատար հաղթանակով։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և ռուս ժողովրդի օգնությամբ տապալեցին դաշնակների՝ միջազգային իմպերիալիզմի բուրժուանացիոնալիստական գործակալության լուծը և հաստատեցին Սովետական իշխանություն։

Ողջունելով ազատագրված Հայաստանին՝ համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ Վ. Ի. Լենինը 1920 թվականի դեկտեմբերի 2-ին Հայաստանի ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահ Ս. Կասյանին ուղղած իր հեռագրում գրել է. «Հանձինս Ձեզ ողջունում եմ իմպերիալիզմի լծից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։

1917—1918 թվականներին արևմտյան տերությունների ինտերվենցիան Անդրկովկասում և վարձու-դաշնակների եռամյա անփառունակ տիրապետությունը Հայաստանում, երկիրը հասցրեց լիակատար փլուզման։ Բավական է ասել, որ 1919 թվականին Հայաստանի բնակչության յուրաքանչյուր 1000 մարդուն ընկնում էր 8,7 ծնունդ, իսկ մեռնում էր 204,2 մարդ։ Սովետական իշխանություն հաստատելու պահին Հայաստանի սահմաններում մնացել էր ընդամենը 720 հազար բնակիչ, 1913 թվականին եղած ավելի քան մեկ միլիոնի դիմաց։

Սովետական սոցիալիստական կարգերի հաստատումը հայ ժողովրդի համար բախտորոշ պատմական նշանակություն ունեցող իրադարձություն էր, որը ոչ միայն ազատություն և սոցիալ-ազգային ազատագրություն բերեց, այլև ամենից առաջ փրկեց ժողովրդին ֆիզիկական ոչնչացումից։ Սովետական կարգերի շնորհիվ Հայաստանում ստեղծվեց սոցիալիստական-դեմոկրատական պետություն, վերածնվեց նրա հնադարյան կուլտուրան, նա դարձավ աշխարհում առաջին սոցիալիստական պետության՝ ՍՍՌՄ եղբայրական ընտանիքի իրավահավասար անդամը։

Ի՞նչ էր ներկայացնում իրենից այն ժամանակ Հայաստանը տնտեսական տեսակետից։ Դա ցարական Ռուսաստանի ամենահետամնաց ծայրամասերից մեկն էր, որտեղ ամբողջ «արդյունաբերությունը» բաղկացած էր մի քանի կիսատնայնագործական պրիմիտիվ ձեռնարկություններից։ Նույնքան պրիմիտիվ էր նաև գյուղատնտեսությունը, որն իր ճնշող մեծամասնությամբ դուրս չէր գալիս նահապետական-նատուրալ, սպառողական տնտեսության շրջանակներից։

Լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ միայն Սովետական իշխանության տարիներին երբեմնի հետամնաց Հայաստանը դարձավ սոցիա-

լիստական ծաղկուն ռեսպուբլիկա՝ իր բարձր զարգացած արդյունաբերությամբ, գյուղատնտեսությամբ և առաջավոր կուլտուրայով։

***

Հայ ժողովրդի բոլոր նվաճումները, նրա բոլոր հաջողությունները, որ ձեռք են բերվել Սովետական իշխանության տարիներին, կապված են Սովետական Մեծ Միության հետ։ Այդ Միության բազմազգ ընտանիքում Սովետական Հայաստանը հասել է աննախընթաց բարգավաճման։ Եղբայրական ժողովուրդների սերտ բարեկամությունն ու համագործակցությունը, ՍՄԿՊ Կենտկոմի և Միութենական կառավարության մշտական հոգատարությունը լայն հնարավորություն տվին Հայաստանին արագ թափով զարգացնել արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը, բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտուրան։

Ռեսպուբլիկայի ամբողջ էկոնոմիկայի վերակառուցման հիմքը կազմեց երկրի էլեկտրիֆիկացման լենինյան հանճարեղ պլանը։

Կատարելով լենինյան ցուցումները՝ Հայաստանի աշխատավորները մշակեցին և իրագործեցին ռեսպուբլիկայի էլեկտրիֆիկացման հոյակապ պլանը, որի հետևանքով մեր ռեսպուբլիկայի էլեկտրակայանները 1956 թվականին ավելի շատ էլեկտրաէներգիա են արտադրել, քան 1913 թվականին արտադրվել էր ամբողջ ցարական Ռուսաստանում։

Էլեկտրական հզոր բազայի ստեղծումը վճռական դեր խաղաց ռեսպուբլիկայի ինդուստրիայի զարգացման գործում։ Լեռնային գետերի էժան էլեկտրաէներգիան կյանքի կոչեց հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնց մասին հին Հայաստանը երազել անգամ չէր կարող։ Ռեսպուբլիկայում ստեղծվեցին արդյունաբերության լեռնահանքային, քիմիական, մետալուրգիական և այլ շատ ճյուղեր, կառուցվեցին թեթև ու սննդի արդյունաբերության բազմաթիվ ձեռնարկություններ։

Հայաստանի արդյունաբերությունը տալիս է կաուչուկ, ալյումին, պղինձ, կապար, կաբել, էլեկտրաշարժիչներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, խառատային նոր տիպի հաստոցներ, պողպատի նուրբ թիթեղներ, կոմպրեսորներ, հիդրոտուրբիններ, էլեկտրաչափիչ գործիքներ, ժամացույցներ, էլեկտրալամպեր, հեծանիվներ, ավտոմոբիլի ու տրակտորի մասեր և ուրիշ շատ ու շատ արտադրանք։ Հայաստանի արդյունաբերական արտադրանքը գնում է Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաները և արտասահմանյան երկրներ։ Սովետական Միության բոլոր անկյուններում, ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ըստ արժանվույն հռչակ է վայելում Հայաստանի սննդարդյունաբերության արտադրանքը, մանավանդ նրա պահածոները, գինին ու կոնյակը։

Հայաստանի արդյունաբերության մեջ նշանակալից տեղ է գրավում թեթև արդյունաբերությունը և շինանյութերի արտադրությունը։ Մեր երկիրն առանձնապես հարուստ է տեսակ-տեսակ շինաքարերով, որոնք հայտնի են ռեսպուբլիկայի սահմաններից շատ հեռու։ Հայաստանը տալիս է ՍՍՌՄ ապրանքային կարբիդի մոտ 70 տոկոսը, ցիանամիդ-ազոտային պարարտանյութերի մոտ 80 տոկոսը, իսկ պղնձի հանույթով Սովետական Միությունում գրավում է երրորդ տեղը։



Սրանք անխոս փաստեր չեն և ոչ էլ մեռած թվեր, այլ պերճախոս վկաներ, թե ինչպիսի բարգավաճում է ապրում տնտեսության սոցիալիստական սիստեմը։ Հարկավոր է խորապես ըմբռնել այս թվերը։ Չէ՞ որ այս ամենն արված է լոկ 37 տարվա ընթացքում։ Եվ որտե՞ղ։ Այն նույն աղքատ, քաղցած երկրում, որտեղ արդյունաբերությունը գրեթե բացակայում էր։ Եվ ահա երբեմնի ընչազուրկ հայ ժողովուրդը 37 տարվա ընթացքում եղբայրական ժողովուրդների օգնությամբ իր երկիրը դարձրեց առաջավոր ինդուստրիալ ռեսպուբլիկա, որն էլեկտրաէներգիայի արտադրությամբ շատ է առաջ անցել Եվրոպայի բազմաթիվ առաջավոր երկրներից։

Այդ տարիների ընթացքում Հայաստանն այնպիսի ինդուստրիալ զարգացման է հասել, որ այժմ արդեն այնքան արդյունաբերական սարքավորում չի ներմուծում, որքան արտահանում է արտասահմանյան երկրները։ Հայաստանի մեքենաշինական գործարանների մարկանե՛րը կրող արդյունաբերական ապրանքներով բարձած գնացքներն այժմ ուղղվում են դեպի աշխարհի շատ ու շատ երկրներ։ Այսպես, օրինակ, Երևանի Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի արտադրանքը՝ տրանսֆորմատորները, գեներատորները, շարժական էլեկտրակայանները գնում են աշխարհի 22 երկրներ, այդ թվում՝ Չինաստան, Հնդկաստան, Եգիպտոս, Արգենտինա, Ինդոնեզիա, Թուրքիա, Լեհաստան, Հարավսլավիա, Բիրմա։ Հայաստանի մյուս գործարանները ևս արտասահմանյան երկրներն են արտահանում կոմպրեսորներ, միկրոամպերմետրեր, պոմպեր, կաբել և արդյունաբերական սարքավորման ուրիշ շատ տեսակներ։ Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ աճել է 45 անգամ։

Հատկապես վերջին տարիներս խոշոր աշխատանք է կատարվում նոր տեխնիկան արտադրության մեջ արմատավորելու ուղղությամբ։ Այդ աշխատանքին ի սպաս է դրված գիտական հարուստ բազա։

Ռևոլյուցիայից առաջ Հայաստանի բանվորները կարող էին միայն պղնձահանք փորել ֆրանսիական կոնցեսիոներների համար կամ թե սայլեր ու ֆուրգոններ պատրաստել։ Այժմ նրանք արտադրում են այնպիսի ճշգրիտ գործիքներ, ինչպիսիք են ժամացույցը, վոլտմետրն ու ամպերմետրը, միլիամպերմետրը և այլ ամենաճշգրիտ գործիքներ, և շուտով կսկսեն արտադրել նաև մաթեմատիկական հաշվիչ մեքենաներ։

Ռեսպուբլիկայում այժմ աշխատում են մոտ 12 հազար ինժեներներ ու տեխնիկներ և տասնյակ հազարավոր բարձրորակ բանվորներ։ Հայաստանի բանվորական կադրերը, նրա տեխնիկական ինտելիգենցիան, որոնք Սովետական իշխանության տարիներին դաստիարակվել են կոմունիստական հոգեբանությամբ, հայ ժողովրդի պարծանքն են։

***

Հայաստանը մեծ հաջողությունների է հասել նաև գյուղատնտեսության զարգացման գործում։

Հայաստանը փոքր տերիտորիա ունի՝ խիստ կտրված լեռնային գետերով, որոնք հարուստ են պոտենցիալ հիդրոռեսուրսներով։ Սակայն այդ գետերը իրենց ջրերը սրընթաց տանում էին լեռնային խոր-խոր կիրճերով ու ձորերով, առանց որևէ օգուտ տալու երկրին։ Ջրի պրոբլեմը հայ գյուղացու համար

միշտ էլ եղել է մահու և կենաց պրոբլեմ։ Որքան արյունոտ ողբերգություններ են տեղի ունեցել ջրի համար նախառևոլյուցիոն հայ գյուղում։ Հայ կլասիկ գրականությունը լի է այդ մռայլ պատկերների նկարագրությամբ։ Հայ գյուղացիության այդ կենսական պրոբլեմի լուծումը տվեց միայն Սովետական իշխանությունը։ Հայաստանի գյուղատնտեսության վերակառուցման հիմքը կազմեց լենինյան ցուցումը ոռոգման մասին։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ջրառոգման խոշոր աշխատանքներ կատարվեցին։ Որտեղ հիդրոէլեկտրակայան էր կառուցվում, այնտեղ էլ ինժեներական խոշոր կառուցում էր պլանավորվում նույն ջրերը ոռոգման նպատակով օգտագործելու համար։ Պլանավորվեցին ու կառուցվեցին խիստ անհրաժեշտ խոշոր ոռոգիչ ջրանցքներ, որոնք հնարավորություն տվին զգալիորեն ընդարձակելու ոռոգելի հողերը և տասնյակ հազարավոր հեկտար նորանոր հողեր յուրացնել ցանքերի ու այգիների համար։ Այդպես ծագեցին Շիրակի ջրանցքը, Լենինի, Ստալինի, Միկոյանի անվան ջրանցքները, Ստորին ու Վերին Հրազդանի ջրանցքները, Թալինի, Արզնի-Շամիրամի, Կոտայքի և տասնյակ այլ ջրանցքներ։ Ջրառոգման շինարարության լայն ծավալումը ապահովեց Հայաստանի գյուղատնտեսության արագ զարգացումը։ 1920 թվականին Հայաստանում ոռոգելի ցանքատարածությունը կազմում էր 62,7 հազար հեկտար, իսկ ներկայումս հասել է 215 հազար հեկտարի։

Ջրառոգման լայն շինարարությունը օգնեց փոխել ցանքատարածությունների ստրուկտուրան, ինտենսիֆիկացնել գյուղատնտեսությունը, արմատավորել նոր արժեքավոր տեխնիկական կուլտուրաներ՝ ծխախոտ, ճակնդեղ, եթերատու բույսեր, լայնորեն ծավալել բամբակագործությունը, խաղողագործությունն ու պտղաբուծությունը, միաժամանակ զգալիորեն ավելացնելով ցանքատարածությունները և բարձրացնելով հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։ Հետամնաց անհատական մանր տնտեսություններին փոխարինեցին կոլտնտեսությունները։ Բոլոր գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման համար ռեսպուբլիկայում ստեղծվել է 52 ՄՏ կայան։ Կոլեկտիվ տնտեսություններում լայնորեն կիրառվում է առաջավոր ագրոտեխնիկան։ Սովետական առաջավոր ագրոնոմիական գիտության նվաճումները և գյուղատնտեսական նոր տեխնիկան, որոնք լայնորեն կիրառվում են ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսություններում, անճանաչելիորեն փոխել են ռեսպուբլիկայի գյուղատնտեսության դեմքը։ Եթե 1928 թվականին Հայաստանի ամբողջ ցանքատարածությունը կազմում էր 332 հազար հեկտար, ապա 1957 թվականին այն հասավ 450 հազար հեկտարի։

ՍՄԿՊ Կենտկոմի վերջին տարիների միջոցառումների իրականացման շնորհիվ վերջին երեք տարվա ընթացքում Հայաստանում զգալիորեն բարձրացել է հացահատիկային կուլտուրաների, խաղողի, ճակնդեղի և այլ կուլտուրաների բերքատվությունը։ 1955 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները պետությանն են հանձնել 43.645 տոննա խաղող, իսկ 1956 թվականին՝ 65.411 տոննա։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև Հայաստանի գյուղատնտեսության մյուս ճյուղում՝ անասնաբուծության բնագավառում։ Անասնաբուծությունը վարելու նոր կուլտուրական ձևերը, անասունների զգալի մասի փոխադրումը մսուրային պահպանման, լեռնային արոտների ռացիոնալ օգ-



տագործումը, խտացրած և հյութալի կերերի զգալի աճը նպաստեցին ռեսպուբլիկայի անասնաբուծական տնտեսության բարելավմանը։ Վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարված եգիպտացորենի ցանքերի արմատավորման ուղղությամբ, որը պետք է էլ ավելի ընդարձակի ռեսպուբլիկայի անասնաբուծության կերի բազան։ Վերջին երեք տարվա ընթացքում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն աճել է 11 տոկոսով, ոչխարներինը՝ 15,4 տոկոսով։ Յուրաքանչյուր կովի կաթնատվությունը աճել է 29,2 տոկոսով։ Զգալիորեն բարելավվել է անասունների տոհմային կազմը։

Սակայն գյուղատնտեսության զարգացման ներկա մակարդակը մեզ գոհացնել չի կարող։ Խնդիրն այն է, որ եթե առանձին առաջավոր կոլտնտեսություններ ու ամբողջ շրջաններ իրենց զարգացմամբ բավական առաջ են գնացել, ապա դեռ քիչ չեն ետ մնացող կոլտնտեսություններն ու շրջանները, որոնք խիստ իջեցնում են ռեսպուբլիկայի գյուղատնտեսության միջին ցուցանիշներն ամբողջությամբ վերցրած։

Մեր առաջիկա խնդիրն է՝ վճռական միջոցներ ձեռք առնել ռեսպուբլիկայի անասնաբուծության, դաշտավարության ու տեխնիկական կուլտուրաների հետագա արագ աճման համար։

Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը մեծ ոգևորությամբ հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի առաջադրած խնդրին՝ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող մսի, կաթի ու յուղի արտադրությամբ առաջիկա տարիներին հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Ռեսպուբլիկայի ամեն մի կոլտնտեսություն, ամեն մի գյուղատնտեսական շրջան մշակում և իրականացնում են ժողովրդատնտեսական այդ վիթխարի խնդրի լուծումն ապահովող միջոցառումներ։



Հայ ժողովրդի կարևորագույն նվաճումներից մեկն էլ նրա կուլտուրայի չտեսնված զարգացումն է, որ ձեռք է բերվել հատկապես Սովետական իշխանության տարիներին։ Դառնալով իր երկրի տերը, ոգևորված Հոկտեմբերի մեծ գաղափարներով՝ հայ ժողովուրդը մեծ խանդավառությամբ սկսեց կառուցել իր նոր, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Հայաստանի կուլտուրայի ու արվեստի արմատները հեռավոր, հին դարերն են հասնում։ Իր պատմությամբ, իր հարստությամբ ու բազմազանությամբ Հայաստանի արվեստն ու գրականությունը համաշխարհային կուլտուրայի նշանակալի երևույթներից էին։ Սակայն օտարերկրյա նվաճողների բազմադարյա տիրապետությունը, հայ ժողովրդի կրած լուծն ու ճնշումը խոր անկման էին հասցրել նաև նրա կուլտուրան։

Սովետական Հայաստանը հեշտությամբ չհասավ կուլտուրական վերելքի։ Սովետական իշխանության առաջին տարիների տնտեսական ծանր պայմաններում շատ բան ստիպված էին կառուցել նորից, բառացիորեն ամայի վայրում։ Նոր կարգեր հաստատելու առաջին իսկ օրերին՝ 1921 թվականի հունվարի 22-ին բացվեց Հայաստանի առաջին բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ ժողովրդական համալսարանը։ 1922 թվականին այդ համալսարանում սովորում էր 490 մարդ՝ ժողովրդական կրթության ապագա կադրերը։

Ավարտելով ուսման դասընթացը, նրանք գործի անցան։ Անցել է ընդամենը 36 տարի Հայաստանի կադրերի այդ առաջին դարբնոցը հիմնելուց հետո և այժմ ամբողջ ռեսպուբլիկան ծածկվել է բոլոր տիպի ուսումնական հաստատությունների խիտ ցանցով։ Ներկայումս Հայաստանում գործում են 11 ստացիոնար ու հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություն, որտեղ սովորում են ավելի քան 20 հազար ուսանող, 44 տեխնիկումներում և այլ մասնագիտական միջնակարգ ուսումնական հաստատություններում սովորում են 16 հազար 500 մարդ։ Ընդհանուր կրթական և մասնագիտական միջնակարգ դպրոցների թիվը հասել է 1394-ի, որոնք ընդգրկում են 300 հազարից ավելի սովորող։ Հենց միայն միջնակարգ դպրոցներում աշխատում են 18 հազար 386 ուսուցիչ։ Անգրագիտությունը ռեսպուբլիկայում լիովին վերացված է։ Այժմ Հայաստանում յուրաքանչյուր չորրորդ քաղաքացին սովորում է որևէ ուսումնական հաստատությունում։ Սովետական իշխանության տարիներին կառուցվել է մի քանի հարյուր նոր, հիանալի կահավորված դպրոցական շենք։ Այժմ Հայաստանում ավելի շատ ուսանողներ կան, քան նախառևոլյուցիոն Հայաստանում տարրական ու միջնակարգ դպրոցների աշակերտներ։ Սովետական Հայաստանում բնակչության ամեն մի 80 մարդուն այժմ ընկնում է մեկ ուսանող, իսկ Թուրքիայում մեկ ուսանող է ընկնում 923 մարդուն։ Սրանք այնպիսի փաստեր են, որոնք չեն կարող հերքել նույնիսկ մեր երդվյալ թշնամիները։

Հայաստանում ստեղծվել է գիտական մտքի շտաբ՝ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիա՝ գիտա-հետազոտական ինստիտուտների, լաբորատորիաների և այլ հիմնարկությունների ծավալուն ցանցով, այդ թվում նաև այնպիսի հիմնարկություններ, ինչպիսիք են Բյուրականի աստրո-ֆիզիկական աստղադիտարանը կամ կոսմիկական ճառագայթների ուսումնասիրման Արագածի լաբորատորիան։ Հայաստանում ներկայումս կան 2616 գիտական աշխատող, որոնցից 143-ը գիտության դոկտորներ են։

Տարեց-տարի ավելանում է գրքերի հրատարակությունը։ Եթե նախառևոլյուցիոն բոլոր տարիների ընթացքում հրատարակվել է ընդամենը 3719 անուն հայերեն գիրք, ապա 1920 թվականից մինչև 1957 թվականի առաջին կիսամյակը ռեսպուբլիկայում հրատարակվել է մոտ 20.000 անուն գիրք, 109 միլիոն 400 հազար օրինակ տիրաժով։

Ջանավոր թափ ստացան կուլտուր-լուսավորական հիմնարկությունների շինարարությունն ու կազմակերպումը ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում։ Եթե 1913 թվականին Հայաստանում կար 13 մասսայական գրադարան, 9 հազար օրինակ գրքով, 1940 թվականին գրադարանների թիվը հասել էր 908-ի, 3 միլիոն 542 հազար 500 գրքով, ապա 1957 թվականին արդեն կա ավելի քան 1000 գրադարան՝ 9 միլիոն օրինակ գրքի ֆոնդով։

Խոշոր աշխատանք է կատարված ժողովրդական առողջապահությունը բարձրացնելու բնագավառում։ 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 57 բժիշկ, այժմ դրանց թիվը հասել է 3800-ի։ Այլ խոսքով ասած, եթե նախառևոլյուցիոն Հայաստանում ամեն մի 18 հազար բնակչին ընկնում էր մեկ բժիշկ, ապա այժմ մեկ բժիշկ է ընկնում 438 բնակչին։ Տեղի ունեցած վիթխարի փոփոխությունների իմաստն ըմբռնելու համար բավական է այս թվերը համեմատել մի քանի ուրիշ երկրների նույնանման տվյալների հետ։ Եթովպիայում, օրինակ, այժմ մեկ բժշկին ընկնում է 100 հազար բնակիչ, Սուդանում՝ 75 հազար, Ֆրանսիայում՝ 1100, ԱՄՆ-ում՝ 790 բնակիչ։



Ժողովրդական առողջապահության բարելավման և ժողովրդի բարեկեցության բարձրացման հետևանքով զգալիորեն աճել է ծննդաբերությունը և խիստ նվազել է բնակչության մահացությունը։

Անցյալում Հայաստանը ոչ մի սանատորիա-կուրորտային հիմնարկություն չուներ, այժմ ստեղծված են 8 հանգստի տուն և 21 սանատորիա, այդ թվում նշանավոր Ջերմուկը, Արզնին, Դիլիջանը։ Եթե 1922 թվականին Հայաստանն ուներ 781 հազար բնակիչ, ապա այժմ, 1956 թվականի ապրիլ ամսի տվյալներով այդ թիվը հասել է 1 միլիոն 633 հազարի, այսինքն ավելի քան կրկնապատկվել է։

Դարեր շարունակ հայերը մեկ բախտ ունեին՝ կամ բռնի կերպով արտաքսված լինել հայրենի երկրից և կամ պանդխտի ցուպը ձեռքին բախտ որոնել աշխարհում։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան հիմնիվեր շուռ տվեց հայ ժողովրդի բախտի անիվը։ Այժմ մենք տեսնում ենք հակառակ պատկերը. այսօր աշխարհի բոլոր ծայրերից հայերը վերադառնում են հայրենի երկիրը՝ իրենց նախահայրերի հողը, այն երկիրը, որտեղ հաղթանակել է ազատությունն ու արդարությունը։

Լենինյան ազգային քաղաքականությունը հետևողականորեն իրականացնելու հետևանքով հայ ժողովրդի գրականությունն ու արվեստը աճեցին ու ծաղկեցին նոր ձևով։ Կուլտուրական հարուստ ժառանգությանը ճիշտ քննադատական մոտեցում ունենալը, անցյալի կուլտուրայից ամեն արժեքավոր բան վերցնելու լենինյան ցուցումի իրականացումը օգնեցին Կոմունիստական պարտիայի շուրջը համախմբելու հին ինտելիգենցիայի լավագույն ուժերին և նրանց օգնությամբ դաստիարակելու և աճեցնելու գրականության ու արվեստի նոր, երիտասարդ ստեղծագործական կադրեր։ Պարտիայի մշտական հոգատարությունը գրականության ու արվեստի նկատմամբ ապահովեց Հայաստանի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական գրականության ու արվեստի հուժկու վերելքը։ Այս 37 տարիների ընթացքում Հայաստանը դարձել է ՍՍՌՄ-ի կուլտուրապես ծաղկած ռեսպուբլիկաներից մեկը։

Ռեսպուբլիկայում ստեղծված են բազմաթիվ հարուստ թանգարաններ, որտեղ խնամքով պահվում և ուսումնասիրվում են Հայաստանի հազարամյա հոգևոր ու նյութական կուլտուրայի նշանավոր ստեղծագործությունները։ Վերադաս օրգանների որոշմամբ Երևանում ստեղծվում է ռևոլյուցիայի թանգարան։

Հայաստանի բազմադարյան գրականությունը սոցիալիստական գաղափարայնությամբ հարստացած իր զարգացման նոր բարգավաճումն է ապրում։ Դեռևս նախառևոլյուցիոն տարիներին հայ ժողովրդի լավագույն զավակները՝ Լենինի ականավոր աշակերտներ և զինակիցներ Ստեփան Շահումյանը և Սուրեն Սպանդարյանը գաղափարական-քաղաքական մեծ պայքար են ծավալել հայ իրականության մեջ գրականության պարտիականության ու ժողովրդայնության լենինյան սկզբունքներն արմատավորելու համար։ Նրանց անմիջական ղեկավարությամբ 1905 թվականի ռևոլյուցիոն փոթորիկների մեջ ծնունդ առավ, ձևակերպվեց և ամրապնդվեց հայ ռևոլյուցիոն պրոլետարական գրականությունը։ Այդ հաստատուն հիմքի վրա պարտիայի ամենօրյա ղեկավարությամբ ծագեց և զարգացավ Հայաստանի նոր սոցիալիստական գրականությունը։ Հայաստանի գրողները օգտագործելով ազգային կլասիկ գրականության ամենահարուստ տրադիցիաները, ստեղծել և ստեղծում են բազմա-





թիվ ստեղծագործություններ՝ մեր ժողովրդի անցյալի ու ներկայի մասին, Հոկտեմբերի մեծ նվաճումների մասին, պարտիայի, սովետական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության մասին, ամբողջ աշխարհում խաղաղություն պահպանելու, մեր բանվոր մարդկանց, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի հերոսական աշխատանքի մասին։

Մեր զարգացման բոլոր փուլերում Սովետական Հայաստանի գրողները ակտիվորեն պայքարել են բուրժուական իդեոլոգիայի ամեն տեսակ արտահայտությունների դեմ, բարձր են պահել գաղափարական անաղարտության և կոմունիստական սկզբունքայնության դրոշը, հավատարիմ են մնացել սոցիալիստական ռեալիզմի ստեղծագործական մեթոդին։ Սովետահայ գրողների՝ Հ. Հակոբյանի, Ավ. Իսահակյանի, Ե. Չարենցի, Դ. Դեմիրճյանի, Ստ. Զորյանի, Ակսել Բակունցի և ուրիշ շատ շատերի ստեղծագործությունները հաստատորեն մտել են սովետական կլասիկայի ոսկե ֆոնդի մեջ։ Սովետական Հայաստանի գրողները ոգեշնչված վերակերտում են սովետական հայրենիքի նվաճումները, կոմունիզմ կառուցողների ստեղծագործական աշխատանքը, ժողովուրդների լենինյան բարեկամությունը։ Սակայն, ինչպես նշվեց «Լենինյան ուղիով» ամսագրի իններորդ համարում, սովետահայ գրականությունը, մանավանդ դրամատուրգիան, դեռ անհրաժեշտ խորությամբ և գեղարվեստական վարպետությամբ չի մարմնավորում կոմունիզմ կառուցող միլիոնավոր մարտիկների բազմահարուստ առօրյան, նրանց հոյակապ սխրագործությունները։

Այժմ Հայաստանի արվեստն ու գրականությունը, տոգորված Հոկտեմբերի մեծ գաղափարներով, մի նոր բուռն բարգավաճման շրջան են ապրում, հանդիսանալով Սովետական Միության բոլոր եղբայրական ժողովուրդների մեծ կուլտուրայի անբաժան մասը։

Հայաստանի գրողները և արվեստի գործիչները մեծ ոգևորությամբ ընդունեցին ընկեր Ն. Ս. Խրուշչովի ելույթը՝ ժողովրդի կյանքի հետ գրականության ու արվեստի սերտ կապի մասին։ Հանդես գալով ժողովներում, մամուլում Հայաստանի գրողները և արվեստի մյուս գործիչները նշեցին այդ պարտիական փաստաթղթի խոշոր նշանակությունը գրականության ու արվեստի աշխատողների ստեղծագործական աշխատանքի համար։ Իրենց ելույթներում նրանք պարտավորվում են բոլոր ջանքերը գործադրել, որպեսզի պատվով արդարացնեն այն բարձր վստահությունը, որ ցույց են տվել նրանց Կոմունիստական պարտիան և սովետական ժողովուրդը։ Նրանք պարտիային վստահեցնում են, որ էլ ավելի ամրապնդելով իրենց կապերը ժողովրդի հետ, ճըշմարտացի արտացոլելով մեր սոցիալիստական իրականության հարստությունն ու բազմապիսիությունը, իրենց ստեղծագործություններում կկարողանան ժողովրդին պայքարի հանել կոմունիզմի կառուցման գործում նորանոր հաջողությունների հասնելու համար։

* * *

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հավատարիմ ջոկատներից մեկը՝ Հայաստանի Կոմունիստական պարտիան, վիթխարի աշխատանք է կատարել Հայաստանի աշխատավորների գաղափարական-քաղաքական դաստիարակության ուղղությամբ, նրանց Հոկտեմբերի դրոշի ներքո, մարքսիզմ-լենինիզմի մեծ դրոշի ներքո համախմբելու ուղղությամբ։ Նա հայ ժողովրդին



դաստիարակել ու դաստիարակում է կոմունիստական շինարարության գործին անսահմանորեն նվիրվածության ոգով, որի ոգեշնչողն ու կոլեկտիվ առաջնորդն է Սովետական Միության փառապանծ Կոմունիստական պարտիան և նրա մարտական շտաբը՝ լենինյան Կենտրոնական Կոմիտեն։

Սոցիալիզմի համար մղվող մարտերում, բոլոր թշնամական տարրերի դեմ անհաշտ պայքարում Սովետական մեծ Միության բոլոր ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդն աճել է հոգեպես և կոփվել գաղափարապես։ Հայաստանի Կոմունիստական պարտիան, աշխատավորները միշտ եղել են հավատարիմ ու անսասանորեն հավատարիմ են մնում Սովետական Միության Կոմունիստական պարտիային և նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեին։

Հայ ժողովուրդը իր սոցիալիստական զարգացման ամբողջ ճանապարհին միշտ ջերմորեն պաշտպանել և անշեղորեն իրականացրել է Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը։ Հայ ժողովրդի այդ հավատարմությունն ու նվիրվածությունը մի անգամ ևս ցայտուն կերպով երևաց, երբ ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը մերկացրեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի ու նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խումբը։ Հայաստանի պարտիական կազմակերպությունը և ամբողջ հայ ժողովուրդը միահամուռ կերպով հավանություն տվին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշմանը, խոր ցասումով նշավակեցին պարտիայից ու ժողովրդից կտրված ֆրակցիոներների ուխտադրուժ գործունեությունը։

Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպական ձևերի արդեն իսկ իրականացված վերակառուցումը վաղուց հասունացած անհրաժեշտություն էր, որ բխում էր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման կենսական շահերից։ Առանձին տնտեսական շրջաններում ժողտնտխորհների ստեղծումը մի նոր ապացույց հանդիսացավ պարտիայի լենինյան ճկունության ու հեռատեսության, պարտիա, որ միշտ ղեկավարման կազմակերպական ձևերը փոխում է կյանքի առաջադրած նոր պայմաններին համապատասխան։ Արդյունաբերության ու շինարարության կառավարման այդ վերակառուցումը հնարավորություն տվեց քանդելու գերատեսչական պատնեշները, որոնք խանգարում էին ժողովրդատնտեսական շատ ու շատ հարցերի լուծմանը, կյանքի կոչեց տեղական նախաձեռնությունն ու մասսաների ստեղծագործական ակտիվությունը, լայն հնարավորություն ստեղծեց բարելավելու ժողվրդական տնտեսության ղեկավարումը տեղական պարտիական օրգանների կողմից։

Հայկական ՍՍՌ ժողտնտխորհը միավորում է շատ բազմապիսի պրոֆիլի ավելի քան երեք հարյուր ձեռնարկություն և հիմնարկություն։ Այդ բազմաճյուղ ձեռնարկությունների ղեկավարումն առավել կոնկրետ ու գործարար դարձնելու համար ժողտնտխորհին կից ստեղծվել են տաս ճյուղային միավորում։ Ապարատի կոմպլեկտավորման ժամանակ կարևոր քայլ էր ժողտընտխորհի կառավարման սիստեմում նոր, թարմ ուժերի ներգրավումը. Ժողտընտխորհի սիստեմում աշխատելու համար ձեռնարկություններից առաջ քաշվեցին ավելի քան հարյուր ինժեներա-տեխնիկական աշխատողներ, որոնք լավ ծանոթ են զանազան ճյուղերի արդյունաբերական օբյեկտների աշխատանքի պրակտիկային։ Իր գործունեության առաջին իսկ քայլերից ժողտնտխորհն սկսեց ակտիվորեն զբաղվել արդյունաբերական ձեռնարկություններով, գործարար կերպով միջամտել նրանց տնտեսական գործունեությանը, ուղղելով

գոյություն ունեցող սխալները, վերացնելով առանձին ձեռնարկությունների աշխատանքում եղած զուգահեռությունը։ Կառավարման վերակառուցումից հետո անցած մի քանի ամսում մենք արդեն ստացել ենք առաջին շոշափելի արդյունքները։ Կոմբինացվեցին ու կոոպերացվեցին զուգահեռաբար գործող մի քանի ձեռնարկություն, որն օգնեց վերացնել նրանց գործունեության մեջ եղած անջատվածությունը, ավելի լրիվ մասնագիտացնել ձեռնարկությունները, ավելի լավ օգտագործել սարքավորումը, արտադրական ու հումքային ռեսուրսները։

Տեղական նախաձեռնության ծավալումը, կառավարման կառուցվածքի կատարելագործումը, ձեռնարկությունների ու կառույցների կենդանի ղեկավարումը մասսաների ներգրավումով՝ նպաստեց նոր ուժերի մոբիլիզացմանը ժողովրդական տնտեսության պլանի հաջող կատարման և աշխատավորների բարեկեցության անշեղ վերելքի համար մղվող պայքարին։

Բանվորների ու մասնագետների ստեղծագործական մտքի ակտիվացման մասին, Հոկտեմբերի 40-ամյակի համաժողովրդական տոնը նոր տեխնիկայի ներդրումով ու արտադրական պրոցեսների կատարելագործումով նշանավորելու ձգտման մասին է վկայում ռացիոնալիզատորների ու գյուտարարների շարքերի աճը։ Միայն Կիրովականի քիմկոմբինատում վերջին 6 ամսվա ընթացքում արվել է մոտ 600 ռացիոնալիզատորական առաջարկություն և ներդրված առաջարկություններից կոմբինատը մոտ մեկ ու կես միլիոն ռուբլու տարեկան տնտեսում է ունեցել։

Հայաստանի աշխատավորները ոգեշնչված ՍՄԿՊ XX համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներով՝ անդուլ պայքարում են կենսագործելու վեցերորդ հնգամյակի վիթխարի պլանները. սկսվել է Սևան—Հրազդան կասկադի երկու նոր հիդրոէլեկտրակայանների, ռադիոռելեի գործարանի, դազգահաշինական գործարանի, երկու մեքենաշինական գործարանների, էլեկտրասարմատուրայի գործարանի, սարքաշինական երկու գործարանների և մի շարք այլ ձեռնարկությունների շինարարությունը։

Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքը վեցերորդ հնգամյակի ընթացքում աճելու է ավելի քան՝ երկու անգամ։ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը, որ միության էլեկտրատեխնիկական արդյունաբերության խոշորագույն օբյեկտներից մեկն է, ավելացնելու է գեներատորների, ուժային տրանսֆորմատորների, շարժական էլեկտրակայանների, տրանսֆորմատորային ենթակայանների և այլնի արտադրությունը։ Ռադիոտեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների արտադրանքը վեցերորդ հնգամյակի ընթացքում կավելանա ինն անգամ։ Էլեկտրալամպերի գործարանը լամպերի թողարկումը 1955 թվականի 14,8 միլիոն հատից 1960 թվականին կհասցնի մինչև 70 միլիոն հատի։

Թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը հնգամյակի ընթացքում կավելանա 1,5 անգամ։

Ստեղծվել են հաշվա-մաթեմատիկական մեքենաների և արտադրական պրոցեսների ավտոմատացման գիտա-հետազոտական ինստիտուտներ։ Նախագծվում է և մոտ ժամանակներս կսկսվի արհեստական մետաքսի, տեղական հումքի բազայի վրա կավահողի, սոդայի, պոտաշի արտադրության խոշոր քիմիական ձեռնարկությունների շինարարությունը։



Նախատեսված է ընթացիկ հնգամյակում գազամուղ կառուցել և Հայաստանը էժան գազ կստանա Ադրբեջանական ՍՍՌ Ղարադաղից, որը մեծ չափով կխթանի ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման և աշխատավորների կենցաղային պայմանների բարելավման գործին։

Ձեռք բերված վիթխարի հաջողությունների կողքին մեզ մոտ արդյունաբերության կառավարման գործում դեռևս քիչ չեն նաև թերությունները։ Այսպես, մենք դեռևս բավականաչափ ուշադիր չենք հայտաբերում ու օգտագործում ներքին ռեզերվները։

Արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպական ձևերի վերակառուցման կապակցությամբ պարտիայի քաղկոմներն ու շրջկոմները մի շարք միջոցներ են ձեռնարկել ռեսպուբլիկայի արդյունաբերության կյանքում սկզբնական պարտիական կազմակերպությունների դերը բարձրացնելու ուղղությամբ։ Շատ ձեռնարկություններում նրանք արդեն դարձել են այն ուժը, որը համախմբում է կոլեկտիվներին, բարձրացնում է նրանց ստեղծագործական նախաձեռնությունը։

Հայաստանի պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնում են գտնվում ժողովրդին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունն ամրապնդելու հարցերը։ Պրակտիկան ցույց է տվել, որ այդ գործում բացառիկ դեր է խաղում ռեսպուբլիկայի աշխատավորների, առանձին քաղաքների, շրջանների ու ձեռնարկությունների և մյուս եղբայրական ռեսպուբլիկաների աշխատավորների միջև սերտ կապեր ստեղծելը։ Մեզ մոտ լայնորեն կիրառվում է Սովետական Միության զանազան ռեսպուբլիկաների աշխատավորների միջև սոցիալիստական մրցություն կազմակերպելու փորձված ձևը։ Դա ոչ միայն մեծ չափով օգնում է եղբայրական ժողովուրդների միջև ինտերնացիոնալ կապերի ու բարեկամության ամրապնդմանը, այլև փորձի փոխանակման միջոցով նրանց տնտեսական ու կուլտուրական զարգացման հզոր խթան է հանդիսանում։ Սոցիալիստական մրցությունն առանձնապես լայն թափ ստացավ ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի։ Այսպես, Հայաստանի մայրաքաղաք Երևանը մրցում է Ուկրաինայի մայրաքաղաք Կիևի հետ, Լենինական քաղաքը մրցում է Վրացական Քութաիսի քաղաքի և ադրբեջանական Կիրովաբադ քաղաքի հետ, Կիրովական քաղաքը մրցում է Բաթումի քաղաքի հետ։ Հայաստանի անասնաբույծները մրցում են Կիրգիզիայի անասնաբույծների հետ։ Արդեն քանի տարի է, ինչ բեղմնավոր կերպով զարգանում է բարեկամությունը, սոցիալիստական մրցությունը և փոխադարձ օգնությունը Հայկական ՍՍՌ Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյանի անվան կոլտնտեսության և Վրացական ՍՍՌ Նաթթանեբիի կոլտնտեսության միջև։ Հայաստանի ժողտնտխորհը մրցում է Վրաստանի և Տաջիկստանի ժողտնտխորհների հետ։

Հայ ժողովուրդը շարունակ աճել ու ամրապնդվել է ժողովուրդների այդ մեծ բարեկամության մթնոլորտում։ Մենք առաջիկայում ևս է՛լ ավելի կամրապնդենք այդ բարեկամությունը։

Այս օրերին, երբ մեր երկիրն ընդառաջ է գնում Մեծ Հոկտեմբերի փառապանծ 40-ամյակին, սոցիալիստական Հայաստանի քաղաքների ու գյուղերի աշխատավորները օրեցօր բազմապատկում են իրենց հաջողությունները, որպեսզի ըստ արժանավույն դիմավորեն այդ մեծ տոնը։ Ռեսպուբլիկայի բան-

վորները, գյուղացիները, ինտելիգենցիան ակտիվորեն լծվել են պանծալի հոբելյանի նախապատրաստմանը, որպեսզի այդ համաժողովրդական տոնը նորանոր նվաճումներով դիմավորեն տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։

Ռեսպուբլիկայի աշխատավորների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, Հոկտեմբերի քառասնամյակի պատվին լայնորեն ծավալված սոցիալիստական մրցությունը մեկ անգամ ևս ցույց են տալիս Հայաստանի աշխատավորների միասնությունն ու համախմբվածությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի շուրջը, նրանց պատրաստակամությունը՝ գործադրելու բոլոր ուժերը՝ իրականացնելու համար այն խնդիրները, որ պարտիան դրել է սովետական ժողովրդի առջև։

Աշխարհում չկա մի ուժ, որը կարողանա սասանել սովետական ժողովրդի սերտ միաձուլությունը և համախմբվածությունը Կոմունիստական պարտիայի շուրջը։ Հեռավոր սիբիրյան տայգայում, թե Արարատյան դաշտում, Տյան-Շանի լեռներում, թե ուկրաինական տափաստաններում ժողովուրդն ապրում է մեկ միասնական զգացմունքով, միասնական մեծ սիրով դեպի իր հարազատ պարտիան, դեպի հարազատ սովետական երկիրը, ապրում է կոմունիզմի կառուցման բուռն ձգտումով։

Համաշխարհային պատմությունը ոչ մի դարաշրջանում չի տեսել ժողովուրդների այդպիսի բարոյա-քաղաքական միասնություն ու համախմբվածություն, և հենց դրա մեջ է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի անպարտելի ու անսպառ ուժը։

---

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ԵՎ ՊԱՐՏԻԱՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

## Ա. ՌՈՒՄՅԱՆՑԵՎ

Քառասուն տարի է, ինչ սովետական ժողովուրդը կոմունիստական հասարակություն է կառուցում։ Իր փորձված, իմաստուն առաջնորդի՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ նա առաջ է ընթանում, հաղթահարելով բազմաթիվ խոչընդոտներ ու դժվարություններ։ Պարզ տեսնելով հասարակության զարգացման հեռանկարները, ժողովրդի ջանքերն ուղղելով վերջնական նպատակին հասնելուն՝ պարտիան զգաստ ու համակողմանի կողմնորոշվում է ներկա պայմաններում և առավելագույն չափով օգտագործում է եղած հնարավորությունները՝ բնակչության կենսական պահանջներն արագորեն բավարարելու համար։ Ժողովրդի բարօրության նկատմամբ իր մշտական հոգատարությամբ, կոմունիստական շինարարության արմատական հարցերի լուծման ճիշտ ուղիներն ու միջոցները ժամանակին գտնելու կարողությամբ պարտիան նվաճել է ժողովրդական մասսաների խորին սերն ու ճանաչումը։

Կոմունիստական պարտիայի ուժն ու հեղինակությունը նրա անխզելի կապի մեջ է ժողովրդի հետ, նրա բարձր սկզբունքայնության, մարքսիզմ-լենինիզմին հավատարմության մեջ։ Այդ անսասան հիմքի վրա է կառուցված պարտիայի քաղաքականությունը, նրա ամբողջ ղեկավար ու կազմակերպչական գործունեությունը։ Ստեղծագործաբար կիրառելով ու զարգացնելով մարքսիստական-լենինյան թեորիան, ուսումնասիրելով և ընդհանրացնելով կյանքի նոր երևույթները՝ պարտիան աշխատավորներին զինում է կոմունիզմի համար պայքարելու գիտականորեն հիմնավորված ծրագրով, որի մեջ համակողմանիորեն հաշվի են առնվում մեր հասարակության զարգացման տվյալ փուլի կոնկրետ պայմաններն ու առանձնահատկությունները։ Ըստ որում պարտիան վճռականորեն դեն է շպրտում քարացածության ու դոգմատիզմի ամեն մի արտահայտություն, որոնց կրողներն անխուսափելիորեն դառնում են այն քաղաքական գործիչները, որոնք կտրվել են կյանքից և մեխանիկորեն պաշտպանում են հնացած, նոր պայմաններին չհամապատասխանող ֆորմուլաներն ու դրույթները։ Պարտիան ճանապարհից մաքրում է այն բոլոր կոնսերվատիվ ուժերը, որոնք խանգարում են սովետական ժողովրդի առաջընթացին։

Կոմունիզմի ուղին դյուրին չէ։ Մեր պարտիան գլխավորելով աշխատավորների պայքարը՝ առաջինը ճանապարհ հարթեց դեպի նոր, Կ. Մարքսի խոսքերով ասած՝ իսկական մարդկային հասարակություն։ Եվ, չնայած առանձին սխալներին, թերություններին, երբեմն էլ ցավալի սխալներին՝ մեր երկրի զարգացումն անշեղորեն վեր է ընթանում դեպի այն բարձունքները, որոնք դեռ բոլորովին նորերս շատերին թվում էին հասանելի միայն հեռավոր ապա-

գայում։ Մարդկության պատմության մեջ այդ մեծագույն հաղթանակներն ինքնահոսով չեն եկել, նրանք նվաճվել են անդուլ պայքար մղելով շահագործական կարգերի ուժերի ու տրադիցիաների դեմ, բոլոր այն ամենի դեմ, ինչ այսպես թե այնպես խանգարում էր առաջընթացին, սեփական մեծ ու փոքր թերությունների ու սխալների դեմ, որոնց երևան հանելու և հաղթահարելու կոչ էր անում պարտիան մշտապես։

Պարտիան համախոհների մեծ միություն է։ Նրա մեջ անխոնջ կերպով գաղափարական մեծ կյանք է բաբախում, շարունակ ընդհանրացվում է պրակտիկան և դրանով իսկ լուսավորվում են ապագայի անծանոթ ուղիները։ Դա մի կյանք է, որ լի է կարծիքների պայքարով, նոր հասարակության կառուցման առավել հուսալի, ճիշտ մեթոդների ու ձևերի որոնումներով։

Պարտիան ներկա էտապում կոմունիստական շինարարության վիթխարի ծրագիր է նշել ՍՄԿԿ XX համագումարի որոշումներում և Կենտրոնական Կոմիտեի մի շարք պլենումներում, որոնք գումարվեցին համագումարի նախօրյակին կամ նրանից հետո։ Այդ որոշումները մարքսիստական-լենինյան թեորիայի ստեղծագործական կիրառման ու զարգացման օրինակ են։ Նրանց մեջ տրված է սոցիալիզմի և կապիտալիզմի երկրներում տեղի ունեցող կարևորագույն պրոցեսների ու երևույթների գիտական խոր բացատրությունը և մշակված է սովետական ժողովրդի և ամբողջ աշխարհի ժողովուրդների արմատական շահերին համապատասխանող քաղաքականություն։

Նոր խնդիրների, պարտիայի XX համագումարի նշած խնդիրների լուծմանը, խնդիրներ, որոնք խանդավառությամբ դիմավորեց ամբողջ սովետական ժողովուրդը, դեմ կանգնեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խումբը։ Կորցնելով նորի զգացումը, կառչելով հնացած կանոններից ու սխեմաներից՝ այդ խումբն ըստ էության պարտիայի գլխավոր գծին հակադրել էր իր խղճուկ պլատֆորման, որը հակիրճ կերպով կարելի է բնութագրել որպես «ետ XX համագումարից» պլատֆորմա։ Մեր պարտիայի գծի նպատակն է տնտեսական, քաղաքական, կուլտուրական նոր պրոգրեսը՝ լիովին համապատասխան լենինյան պատգամների, լենինյան քաղաքական կուրսի ստեղծագործական կիրառմանը։ Սնանկացած պոլիտիկանների մերկացված խմբի պլատֆորման գործնականում ջնջում էր այդ կուրսը, նա կապված էր այն ամեն կործանարարի ու վնասակարի հետ, ինչ բխում էր անհատի պաշտամունքից։ Միանգամայն ակներև է, թե մեր գործի համար որքան վտանգավոր կլիներ այդպիսի ծրագիրը, եթե իրականացման որևէ շանս ունենար նա։

Որպես իսկական դոգմատիկներ՝ հակապարտիական խմբի մասնակիցները երես էին դարձրել կենդանի կյանքից և չէին տեսնում, որ ՍՄԿԿ XX համագումարի որոշումները մարքսիզմ-լենինիզմի հետագա ստեղծագործական զարգացումն են հանդիսանում։ Նրանք չկարողացան հասկանալ այդ որոշումների ներքին ու միջազգային նշանակությունը, հետևապես և այն նոր, որակապես բարձր էտապը, որ թևակոխել է մեր երկիրը XX համագումարից հետո, և այն նոր խնդիրները, որոնք այժմ ծառացած են մեր երկրի առաջ։

Կենդանի, ռեալ դիալեկտիկական բարդ պրոցեսում ծագող սոցիալիզմը մեկընդմիշտ կոփված անփոփոխ ձևեր չի ճանաչում։ Այդպես են սովորեցրել այն հասկանալ Մարքսը, Էնգելսը, Լենինը։ Իհարկե, սոցիալիզմի ընդհանուր, սկզբունքային գծերը դուրս են բերվել նախ և առաջ հասարակական զարգացման գիտականորեն ճանաչված օրինաչափություններից, որոնք բացահայտ-



վել են դեռ կապիտալիզմի ժամանակ։ Սակայն Կոմունիստական պարտիայի կողմից ուղղություն ստացող միլիոնավոր աշխատավորների պայքարի ու ստեղծագործության շնորհիվ միայն սոցիալիզմի հենքը աճում է այն ռեալ գործվածքով, ստանում է այն կոնկրետ դեմքը, որ առաջուց ոչ ոք նախատեսել չէր կարող։ Իսկապես անգնահատելի է հասարակական պրակտիկայի դերը, ժողովրդական մասսաների պատմական փորձը։ Պատահականություն չեն, այլ պարտադիր ու օրինաչափական են այն քննախուզական, հաճախ տանջալից որոնումները, որոնցով բնորոշվում է սոցիալիստական շինարարության ընթացքը։ Ռազմական կոմունիզմն ու նեպ-ը, նախկին ԺՏԳԽ-ն ու այժմյան ժողտնտխորհները, առաջին գյուղատնտեսական կոմունաներն ու մեր օրերի ՄՏԿ-ների հետ սերտորեն կապված կոլտնտեսությունները—այս ամենը, իհարկե, ժամանակին նախատեսված չէին ոչ մի գրությամբ։ Դրանք ծագում էին կոնկրետ պայմաններում, դրանց առաջին թույլ ծիլերը պարտիան գիտականորեն իմաստավորում էր ելնելով մարքսիզմ-լենինիզմի դիրքերից։ Մեր պարտիայի մեծությունը նրա համարձակ նախաձեռնության մեջ է, մասսաների կարիքներն ու պահանջները հաշվի առնելու կարողության, նրա ճկունության մեջ է։ Այս է սովորեցրել Լենինը պարտիային։ Նա սիրում էր հիշեցնել Ն. Գ. Չերնիշևսկու նշանավոր խոսքերը, թե՝ քաղաքական գործունեությունը Նևսկու պողոտայի մայթը չէ, դա անպայմանորեն ուղիղ, առաջուց որոշված գիծ չէ։ Օբյեկտիվ իրականությունը հաճախ ստիպում է խնդիրները լուծել այնպիսի քաղաքական հավասարություններով, որոնց մեջ շատ են անհայտները։

Դոգմատիկները հին ձևերին կառչելով, փորձում են նրանց մեջ խցկել կյանքի ամբողջ հարստությունը, խանգարում են մասսաների ակտիվությանը, վախենում են նրանից և դառնում են «կաբինետային մտածողներ»։ Դոգմատիկները, պաշտպանելով ու պնդելով հին դրույթները, միշտ էլ ջուր են լցնում ռևիզիոնիստների ջրաղացին։ Հենց տիրացուներն ու թալմուդիստներն են, որ նյութ են տալիս մարքսիստական-լենինյան հասարակագիտության բուն իսկ հիմքերի ռևիզիոնիստական ժխտման համար, նրա ռևոլյուցիոն ոգին ամլացնելու համար։ Դեռ ավելին. հակապարտիական խմբի մասնակիցներն իրենք փաստորեն կանգնել էին ռևիզիոնիզմի ճանապարհին, երբ փորձում էին կասկածի տակ առնել պարտիայի ղեկավար դերը կոմունիստական շինարարության մեջ։

ՍՄԿԿ XX համագումարը սոցիալիզմի բոլոր բարեկամների գիտակցության մեջ մտել է որպես պատմական կարևոր իրադարձություն պարտիայի կյանքում Վ. Ի. Լենինի մահից հետո։ Համագումարի երախտիքն այն է, որ նա կործանիչ հարված տվեց լենինյան թեորիայից ու պրակտիկայից դոգմատիկ ու ռևիզիոնիստական շեղումներին։ Նա գիտական պատասխաններ տվեց այն հարցերին, որոնք հասունացել էին ժամանակակից հասարակության ընդերքում և շոշափում էին մեր սերնդի բախտը։ Երկու սիստեմների խաղաղ գոյակցության ռեալ հնարավորությունը, ներկա էտապում պատերազմները կանխելու հնարավորությունը, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու տարբեր ձևերը — XX համագումարի այս բոլոր դրույթները, անտարակույս, հարստացնում են մարքսիստական-լենինյան թեորիան, խթանում են բոլոր երկրների աշխատավորների ազատագրական պայքարը, սովետական մարդկանց ոգեշնչում են նորանոր աշխատանքային սխրագործությունների։ Համա-

գումարը դատապարտեց անհատի պաշտամունքը և նրա հետևանքները, ցույց տվեց նրա պատճառած վնասը և պարտիական ու պետական շինարարության բոլոր բնագավառներում լենինյան սկզբունքների վերականգնման ծրագիրը հաստատեց։

Հայտնի է, թե համագումարի որոշումներն ինչպիսի հզոր արձագանք գտան մեր ժողովրդի և արտասահմանյան աշխատավոր մասսաների սրտերում։ Այդ պայմաններում դժվար էր բացահայտորեն անտեսել նրա որոշումները, բայց կային մարդիկ, որոնք դեռ քարը պահում էին իրենց փեշում։ Խոսքը վերաբերում է նրանց, ովքեր ամեն տեսակ սուտուփուտով արգելակում էին անհատի պաշտամունքի հետևանքների վերացումը և որոնք ցանկանում էին պարտիան ու երկիրը ուղղել դեպի քարացածության ու հնամոլության ճահիճը։

«Պրավդա»-ի 1957 թ. ապրիլի 22-ի համարում ընկ. Մոլոտովը զետեղեց մի հոդված «Լենինի մասին» վերնագրով։ Չի կարելի այդ հոդվածում չտեսնել ակնհայտ դոգմատիկական տենդենցները։ Այսպես, օրինակ, ընկ. Մոլոտովը հարկ է համարել իր հոդվածում կրկնել «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց»-ի այն սխալ դրույթը, թե մեր պարտիայի իդեոլոգիական հիմունքները տրված են Վ. Ի. Լենինի «Ի՞նչ անել» գրքում։ Այդպիսի պնդումը բացահայտորեն միակողմանի է ու սխեմատիկ։ Դա անտեսում է Վ. Ի. Լենինի մյուս աշխատությունների դերը։ Այնինչ նրանց մեջ կան շատ արժեքավոր մտքեր ու դատողություններ, որոնք «Ի՞նչ անել» գրքում զարգացրած դրույթների հետ միասին կազմում են մեր պարտիայի իդեոլոգիայի հիմքը։ Դրանք չէին կարող և չեն եղել ձևակերպված միանգամից 1902 թվականին կամ որևէ մեկ ուրիշ տարի։ Արտահայտելով աշխատավորների արմատական շահերը, հանդիսանալով նրանց հարաճուն նվաճումը՝ մարքսիստական-լենինյան իդեոլոգիան տեղում կանգնած չի մնում, այլ շարունակում է անընդհատ կատարելագործվել և ստուգվում է պարտիայի ու ժողովրդի պատմական փորձով, ծառայելով որպես գործողության ուղեցույց։

Ընկ. Մոլոտովի հոդվածում մի շարք տեղեր ամեն մի պարտիական աշխատողի ստիպում են զգույշ լինել։ Այսպես, ընկ. Մոլոտովն ասում է. «Մենք գիտենք, որ առանձին սխալներ և երբեմն ծանր սխալներ այնքան մեծ ու բարդ պատմական խնդիրներ լուծելիս անխուսափելի են։ Այդ կողմից չկա և չի կարող որևէ մեկը երաշխիք ունենալ»։ Իհարկե, սխալներ կարող են լինել։ Դրա մասին ոչ ոք ավելի լավ չի ասել, քան Լենինը ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունում։ Սակայն, նախ, սխալները տարբեր են լինում։ Այլ բան են այն սխալները, որոնք բխում են նորի որոնումներից և այլ բան են այն սխալները, որոնք հետևանք են սկզբունքային մարքսիստական-լենինյան դիրքերից հեռանալու։ Երկրորդ. ընկ. Մոլոտովի շուրթերից վերոհիշյալ պնդումը հնչում է որպես արդարացում այն ծանր սխալների, որ թույլ են տրվել անցյալում անհատի պաշտամունքի կապակցությամբ և որոնք պարտիան դատապարտել է և ոչ թե արդարացրել և չի արդարացնում։ Ընդհանուր առմամբ ընկ. Մոլոտովի հոդվածում մատուցված սխեմայի սխոլաստիկական բնույթը մի անգամ ևս հիշեցնում է նրա քաղաքական աշխարհայացքի օրգանական արատները, որոնք չէին կարող նրան, ինչպես և հակալենինյան կուսակցության կողմնակիցներին չհասցնել անկացման։



ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբի մասին համոզիչ կերպով ցույց է տալիս այս. «Ինչպես ներքին քաղաքականության հարցերում,— ասված է ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշման մեջ,— այնպես էլ արտաքին քաղաքականության հարցերում նրանք աղանդավորներ ու դոգմատիկներ են, տիրացուական, քարացած մոտեցում են ցուցաբերում դեպի մարքսիզմ-լենինիզմը։ Նրանք չեն կարող հասկանալ, որ արդի պայմաններում կենդանի մարքսիզմ-լենինիզմը գործողության մեջ, պայքարը կոմունիզմի համար դրսևորվում են պարտիայի XX համագումարի որոշումների կենսագործման մեջ, խաղաղ գոյակցության, ժողովուրդների բարեկամության համար պայքարի հաստատուն քաղաքականություն վարելու, սոցիալիստական լագերն ամեն կերպ ամրապնդելու քաղաքականության մեջ, արդյունաբերության ղեկավարումը բարելավելու մեջ, գյուղատնտեսության համակողմանի վերելքի, մթերքների արտադրության, բնակարանային լայն շինարարության, միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման, ազգային կուլտուրաների ծաղկման, ժողովրդական մասսաների նախաձեռնությունն ամեն կերպ զարգացնելու համար մղվող պայքարում»։

Հակապարտիական խմբի մասնակիցները չցանկացան հասկանալ տարրական բաները, չտեսան միջազգային ասպարեզում ուժերի փոխհարաբերության մեջ տեղի ունեցած այն տեղաշարժերը, որոնք ստիպված են ընդունել նույնիսկ Սովետական պետության ակներև թշնամիները։ Ֆրակցիոներները լենինյան սկզբունքներից հեռացել էին նաև ներքին քաղաքականության հարցերում։

Ընկ. Մալենկովը, որն իր ժամանակին (երբ նա ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար էր) պատասխանատու էր մեր գյուղատնտեսության զարգացման համար, իր պաշտոնական ելույթներում սխալ էր պատկերում գյուղատնտեսության վիճակը, մոլորության մեջ էր գցում պարտիային ու ժողովրդին։ Կենտրոնական Կոմիտեի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումը և հետագա պլենումները բացահայտեցին գյուղատնտեսության զարգացման գործում եղած լուրջ թերությունները և նրա ղեկավարման սխալները։ Գյուղատնտեսության մի շարք ճյուղեր բարձիթողի վիճակում էին։ Կենտրոնական Կոմիտեն ուղղեց այդ սխալները, նշեց ու իրականացրեց միջոցների մի ամբողջ սիստեմ, որոնք ապահովեցին սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքը։ Արմատապես վերակառուցվեց գյուղատնտեսության ղեկավարումը և կոլտնտեսային արտադրության պլանավորումը, ապահովվեց նյութական շահագրգռվածության սկզբունքի հետևողական կիրառումը կոլտնտեսություններում, ՄՏ կայաններում ու սովետական տնտեսություններում, ծավալվեց գյուղատնտեսական աշխատողների տնտեսական նախաձեռնությունն ու աշխատանքային ակտիվությունը։

Հակապարտիական խումբը փոխանակ պարտիայի այս միջոցառումները պաշտպանելու, սկսեց խանգարել դրանց կենսագործմանը, պնդելով, որ պահպանվի գյուղատնտեսության պլանավորման հին, զգալի չափով բյուրոկրատական կարգը։ Դրանով ֆրակցիոներներն է՛լ ավելի խորացրին իրենց սխալները և ակնառու ցույց տվին, որ իրենք չգիտեն ռեալ իրականությունը, լիովին կտրված են իրական կյանքից։ Վ. Մոլոտովը, օրինակ, բազմիցս հայտարարում էր, թե անհրաժեշտ է ամրապնդել բանվոր դասակարգի և գյուղացիու-

թյան դաշինքը։ Բայց դրանք լոկ խոսքեր էին։ Իրականում նա դեմ էր դուրս գալիս հենց այն կոնկրետ միջոցառումներին, որոնք տվյալ պայմաններում ամբողջապես նպատակ ունեին ամրապնդել բանվորների և գյուղացիների դաշինքը։ Այսպիսով, դոգմատիզմն ու տիրացությունն անխուսափելիորեն հասցընում են թեորիայի ու պրակտիկայի լիակատար խզման։

Նույն բանն էլ ավելի ակնառու արտահայտվեց, երբ ֆրակցիոներները դեմ դուրս եկան պարտիայի գծին խամ ու խոպան հողերի արագ ու լայն յուրացման գործում։ Նրես դարձնելով կյանքից, երկրի կենսական պահանջներից՝ նրանք պատճառաբանություններ էին որոնում գրքերում։ Իսկ գրքերում ասված է, որ գյուղատնտեսության ինտենսիվ վարումը (նրա կուլտուրան բարձրացնելու միջոցով) շատ ավելի պրոգրեսիվ մեթոդ է, քան էքստենսիվը (վարելահողերի ընդարձակման միջոցով)։ Այս գրքային ճշմարտությամբ զինված՝ ֆրակցիոներները դեմ էին դուրս գալիս խոպանի յուրացման ուղղությամբ Կենտրոնական Կոմիտեի նշած միջոցառումներին։ Նրանք, ըստ երևույթին, մոռացել էին մարքսիստական դիալեկտիկայի այն հայտնի դրույթը, թե աբստրակտ ճշմարտություն չկա, ճշմարտությունը միշտ կոնկրետ է։ Հասկանալի է, որ ոչ ոք չէր վիճարկում և չի վիճարկում, որ մշակվող հողերի տարածության պարզ ավելացումը չի կարելի գնահատել որպես ինտենսիվ տնտեսություն։ Խամ ու խոպան հողերի յուրացումը դիտելով որպես վարելահողերի սովորական ընդարձակում՝ ֆրակցիոներները գտնում էին, որ դա տնտեսության էքստենսիվ վարում է, նահանջ է գյուղատնտեսության զարգացման պրոգրեսիվ ուղուց։

Սակայն իրականում սովետական ժողովուրդը 35,5 միլիոն հեկտար բերքատու խամ ու խոպան հողեր մտցնելով գյուղատնտեսական շրջանառության մեջ՝ հսկայական առաջընթաց քայլ կատարեց գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման ուղղությամբ։ Նոր յուրացված հողերում բարձր բերքն ստացվել է ոչ միայն այդ հողերի բնական բերքատվության շնորհիվ։ Ամենևին ոչ։ Հեկտարից 20 և ավելի ցենտներ բերք ստանալ հաջողվեց նրա համար, որ խոպանում լայնորեն կիրառվեց առաջավոր ագրոտեխնիկան՝ խոնավության կուտակումը, նախացանքային փխրացումը, նախախոփիկ ունեցող գութանով հերկումը, ցանքի ագրոտեխնիկական ժամկետների պահպանումը, լավագույն շրջանայնացված սերմացուի օգտագործումը և այլն։ Իսկ ամենագլխավորն այն է, որ խոպանի յուրացումը մեզ մոտ տեղի ունեցավ կատարելագործված տեխնիկայի հիման վրա։ Տարրական գրագիտությունից զուրկ պետք է լինել գյուղատնտեսության էքստենսիվ զարգացման մասին խոսելու համար, երբ ցանքատարածությունների ընդարձակման հիմքը հանդիսանում է հզոր տեխնիկան։ Վ. Ի. Լենինը շատ վաղուց նշել է, որ տեխնիկայի բարձրացումը, լրացուցիչ կապիտալի ներդրումը որպես նոր մեքենաներ կամ արհեստական պարարտանյութեր, անասունների գլխաքանակի ավելացումը և նրա որակի բարելավումն ինտենսիֆիկացիա է, իսկ հին տեխնիկական բազայի վրա ցանքատարածությունների ընդարձակումը գյուղատնտեսության զարգացման էքստենսիվ ձև է (տես Երկեր, հատ. 22, էջ 78)։

Խոպանի յուրացման հաշվին ցանքատարածությունների վիթխարի չափով ընդարձակման շնորհիվ մեր երկիրը 1956 թվականին շատ բարձր բերք ստացավ։ Դա հնարավորություն տվեց զարգացնելու գյուղատնտեսության այնպիսի ինտենսիվ ճյուղեր, ինչպիսիք են անասնաբուծությունը, բամբակագործությունը, բանջարաբուծությունը և ավելացնելու այնպիսի մթերքների արտադրությունը, ինչպիսիք են շաքարի ճակնդեղը, վուշը, կանեփը և այլն։ Ահա թե ինչու խոպան հողերի յուրացումը մեր երկրում ամենևին չի կարելի գյուղատնտեսության զարգացման էքստենսիվ ձև համարել։ Ինչպես տեսնում ենք, տիրացությունն ու դոգմատիզմն անխուսափելիորեն տանում են դեպի իրականության աղավաղում։



Հակապարտիական խումբը խանգարում էր պարտիայի գիծն անցկացնել ոչ միայն գյուղատնտեսության, այլև արդյունաբերության մեջ։ Հակապարտիական խմբի մասնակիցները դեմ էին դուրս գալիս արդյունաբերության ու շինարարության կառավարումը բարելավելու վերաբերյալ Կենտկոմի Փետրվարյան պլենումի նշած և ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսիայի ընդունած միջոցառումներին, թեպետև այդ միջոցառումները հանդիսանում էին ՍՄԿՊ XX համագումարի որոշումների տրամաբանական զարգացումն ու կոնկրետացումը և բխում էին հենց սոցիալիստական արդյունաբերության կենսական պահանջներից։

ՍՄԿՊ XX համագումարը վիթխարի ծրագիր նշեց՝ նկատի ունենալով սովետական էկոնոմիկայի հիմքերի հիմքի՝ ծանր ինդուստրիայի առավել աճում։ Այս ծրագրի իրականացման համար պահանջվում էր արմատապես բարելավել արդյունաբերության և շինարարության պլանավորումն ու ղեկավարումը։ Սակայն տնտեսական ղեկավարման հին կազմակերպական ձևերի ու մեթոդների դեպքում ներկա պայմաններում այդ բարելավումն անհասանելի է։ Ոչ միայն արդյունաբերության արտադրանքի ու շինարարության մասշտաբներն են աճել, այլև տեղի են ունեցել որակական լուրջ փոփոխություններ։ Տեխնիկական պրոգրեսը և արտադրության մասնագիտացումը երևան են բերել արդյունաբերության ու շինարարության նորանոր ճյուղեր։ Կառավարման գերատեսչական սիստեմի ժամանակ դա անխուսափելիորեն կապված էր լինում մինիստրությունների ու գերատեսչությունների թվի անընդհատ ավելացման հետ։ Կառավարման ապարատն ուռճանում էր, անչափ մեծածավալ ու թանկ էր դառնում, իսկ նեղ գերատեսչական շահերն ավելի ու ավելի մեծ խոչընդոտ էին դառնում բազմաթիվ ժողովրդա-տնտեսական պրոբլեմներ լուծելիս։ Ստիպողական անհրաժեշտություն ծագեց փոփոխել արդյունաբերության և շինարարության կառավարման հնացած կազմակերպական ձևերը, դրանք համապատասխան դարձնել նոր պայմաններին։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն ժամանակին երևան բերեց այդ հասունացած պահանջը, համարձակորեն ու վճռականորեն ձեռնամուխ եղավ փշրելու տնտեսավարման հնացած ձևերը, գործնականորեն սկսեց վերակառուցել արդյունաբերության ու շինարարության կառավարումը, որպեսզի արագացնի ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած խնդիրների լուծումը։

Այդ վերակառուցումը, ինչպես հայտնի է, նշանակում էր առանձին ճյուղերի կառավարման գերատեսչական սիստեմից անցնել արդյունաբերության ու շինարարության տերիտորիալ կառավարման՝ ըստ տնտեսական շրջանների։ Գերատեսչական պատնեշները, որոնք խանգարում էին ձեռնարկությունների կոոպերացմանն ու մասնագիտացմանը, վերացվում էին, տնտեսական ղեկավարությունը մոտեցվում էր արտադրությանը, ծավալվում էր տեղերի նախաձեռնությունը, բարձրացվում էր տեղական պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը երկրամա-

սերի, մարզերի, շրջանների էկոնոմիկայի պլանավորման ու ղեկավարման գործում։ Դրա հետ միասին զգալիորեն ընդլայնվեցին սովետական ռեսպուբլիկաների իրավունքները տնտեսական հարցերի լուծման գործում։ Մի խոսքով, արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը նշանակում էր դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի հետագա զարգացում ու կոնկրետացում՝ սոցիալիստական տնտեսության զարգացման նոր պայմաններին համեմատ։

Ամբողջ սովետական ժողովուրդը միահամուռ կերպով պաշտպանեց պարտիայի այդ կենսականորեն կարևոր պրոգրեսիվ նախաձեռնությունը և եռանդով կենսագործում է այն։ Արդեն իսկ նոր ձևով աշխատելու առաջին արդյունքները ցույց են տալիս, որ պրակտիկան լիովին հաստատում է Կենտրոնական Կոմիտեի այդ գծի ճշտությունը։ Սոցիալիստական արդյունաբերության առջև բուռն վերելքի նոր հեռանկարներ են բացվել։ Այժմ բոլոր պայմաններն ստեղծվել են վեցերորդ հնգամյակի առաջադրանքների ոչ միայն կատարման, այլև զգալիորեն գերակատարման համար։

Պրակտիկան՝ ճշմարտության բարձրագույն չափանիշը, վկայում է ոչ ի նպաստ հակապարտիական խմբի։ Բոլորի համար պարզ է դառնում, թե ինչպիսի կոնսերվատիվ դիրք էր գրավել այդ խումբը, հակառակ սոցիալիստական էկոնոմիկայի կենսական շահերի՝ պաշտպանելով տնտեսական ղեկավարման իրենց դարն ապրած կազմակերպական ձևերն ու մեթոդները։ Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի խումբը դարձել էր կոնսերվատիվ ուժ, որը պետք է պարտիան հեռացներ իր ճանապարհից, որպեսզի սովետական ժողովուրդն ավելի արագ ու ավելի հաջող առաջ ընթանա։



Առաջին անգամ Լենինի կողմից ձևակերպված ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի կատարումը, նրա իսկ կողմից միջազգային մեծ մասշտաբով առաջադրված «ով ում» հարցի լուծումն այժմ նոր փուլի մեջ է մտել։ Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի փորձված ղեկավարությամբ խնդիր է դնում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրանքի չափերով ամենակարճ ժամանակամիջոցում հասնել ու անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներից։ Հաշվելով իրենց միջոցներն ու հնարավորությունները՝ պարտիան և ժողովուրդը եկել են այն հետևության, որ այդ նպատակին ամենից առաջ կարելի է հասնել գյուղատնտեսության մեջ և առաջին հերթին՝ կաթի, յուղի, մսի արտադրությամբ։

Հենց այս է, որ չէր հասկանում հակապարտիական խումբը, թեպետև չանասիրաբար, տիրացուաբար խոսում էր մարքսիզմ-լենինիզմի մասին։ Նա չէր ուզում հասկանալ նաև այն հատուկ նշանակությունը, որ ձեռք էր բերել պարտիայի անունից ընկ. Ն. Ս. Խրուշչովի կոչը՝ առաջիկա 3—4 տարում բնակչության մեկ շնչին ընկնող անասնապահական մի շարք մթերքների արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու և անցնելու մասին։

Ինչո՞ւ մեր օրերին հնարավոր է դարձել այնպես վստահորեն ու կոնկրետ դնել արդիական այս կարևոր հարցը։ Որովհետև նա հիմնված է սովետական ժողովրդի, նրա բանվոր դասակարգի, գյուղացիության ու ինտելիգենցիայի 40 տարվա տնտեսական ու քաղաքական նվաճումների վրա։ Որովհետև այդ



ժամանակամիջոցում երբեմնի հետամնաց Ռուսաստանը դարձել է արդյունաբերական հզոր տերություն՝ աշխարհում խոշորագույն գյուղատնտեսությամբ։ Որովհետև սովետական ժողովուրդը պարտիայի ղեկավարությամբ բոլոր անհրաժեշտ նյութական ու բարոյական պայմաններն ստեղծել է այդ պատմական խնդրի լուծման համար։

Այդ 40-ամյա եռուն ժամանակաշրջանի ընթացքում սովետական մարդկանց ուժերի հերոսական լարումով անընդհատ հաղթահարվում էր և հաղթահարված է այն անտարակույս լուրջ մինուսը մեր գործի համար, որի էությունն այն է, որ սոցիալիստական շինարարությունն ամենից առաջ սկսվել է ոչ թե առաջավոր կապիտալիստական երկրում, այլ արտադրողական ուժերի զարգացման համեմատաբար ցածր մակարդակ ունեցող հետամնաց, բազմակացութաձև երկրում։ Ցարական Ռուսաստանը իր տերիտորիայով աշխարհում առաջին տեղը գրավելով՝ արդյունաբերական արտադրանքի ծավալով գտնըվում էր հինգերորդ տեղում։ Սա ծանր ժառանգություն էր։ Դրան էլ պետք է ավելացնել, որ Սովետական պետությունը իր գոյության 40 տարիներից առնվազն 18-ը ծախսել է իր վզին փաթաթած քաղաքացիական և ապա երկրորդ համաշխարհային պատերազմների վրա, ինչպես նաև պատերազմների հետևանքով ավերված տնտեսության վերականգնման վրա։

Բայց և այնպես անհաղթահարելի դուրս եկավ այն ամենահաղթ պրոգրեսիվ սկիզբը, որ դրված է սոցիալիզմի մեջ, նրա սկզբունքների, նրա կազմակերպման մեթոդների, տնտեսավարության ու կառավարման սիստեմի մեջ։ Այժմ բոլորը տեսնում են, թե մեր աշխատասեր ժողովուրդը ինչպիսի վիթխարի հանրային հարստություն է ստեղծել ու բազմապատկել նոր, սոցիալիստական դարաշրջանի համեմատաբար կարճ ժամանակամիջոցում։ Օրինակ, Սովետական իշխանության տարիներին մեր տնտեսության հիմնական ֆոնդերն աճել են համարյա 8 անգամ։ Իսկ արդյունաբերության, կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, տրանսպորտի ու կապի արտադրական ֆոնդերը աճել են ավելի քան 14 անգամ։ 1955 թվականին ՍՍՌՄ-ում կար 206 հազար հենց միայն պետական արդյունաբերական ձեռնարկություն։

Սոցիալիզմը որոշում է ՍՍՌՄ-ում անշեղորեն զարգացող հանրային արտադրության բարձր տեմպերը, որոնք հիմնվում են ծանր ինդուստրիայի առավել զարգացման վրա։ Սոցիալիստական ինդուստրացման նախապատերազմյան 13 տարիների ընթացքում ամբողջ սովետական արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է համարյա 6,5 անգամ, իսկ նախառևոլյուցիոն մակարդակի համեմատությամբ՝ ավելի քան 8,5 անգամ։ Այսպիսի ուղի անցնելու համար կապիտալիստական գլխավոր երկրները համարյա տասն անգամ ավելի ժամանակ են ծախսել։ Երկրորդ հնգամյակը վերջանալուց հետո ՍՍՌՄ-ն արդյունաբերական արտադրանքի ծավալով Եվրոպայում բռնեց առաջին տեղը, իսկ աշխարհում՝ երկրորդ տեղը։ Մեր արդյունաբերությանն է՛լ ավելի բարձր տեմպեր են բնորոշ հետպատերազմյան ժամանակաշրջանում։ 1956 թվականին նրա արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ աճեց ավելի քան 30 անգամ։ Մյուս ճյուղերից արագ աճեց և շարունակում է աճել մեր մեքենաշինությունը։ Նրա արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացավ 181 անգամ։ Էլեկտրաէներգիայի արտադրանքն աճեց համարյա 100 անգամ, մեզ մոտ յուրաքանչյուր չորս օրում ավելի շատ

էլեկտրաէներգիա է արտադրվում, քան ամբողջ նախառևոլյուցիոն 1913 թվա-
կանի ընթացքում:
Մասնագետ կադրերի պատրաստման գործում ՍՍՌՄ-ն արդեն առաջ է
անցել բուրժուական պետություններից: 1913 թվականին ամբողջ ռուսական
արդյունաբերության մեջ կար բարձրագույն կրթությամբ ընդամենը 7880 ին-
ժեներա-տեխնիկական աշխատող, այժմ մեր երկրում 720 հազար ինժեներ
կա: Իզուր չէ, որ անգլիական պառլամենտի Սպիտակ գրքում, որը տեխնի-
կական կրթությանն է նվիրված, խոստովանում են. «Գիտական ու տեխնի-
կական կրթության մակարդակը Ռուսաստանում բարձր է: Պատրաստվող ին-
ժեներների թիվը զգալիորեն ավելի է, քան որևէ այլ երկրում, ինչպես բացար-
ձակ թվերով, այնպես էլ բնակչության մեկ շնչին ընկնելու հաշվով»:
Մարքսիստական-լենինյան ուսմունքի հաղթանակը երևում է նաև այն
թվերից, որոնք հաղորդում են սոցիալիստական գյուղատնտեսության հաղ-
թանակների մասին, գյուղատնտեսություն, որը հենվում է գիտության նվա-
ճումների վրա, առաջավորների փորձի վրա, մեր ծանր ինդուստրիայի ստեղ-
ծած նյութա-տեխնիկական հաստատուն բազայի վրա: Հայրենական գործա-
րանները, որոնք 1923 թվականին տրակտորների արտադրությունն սկսեցին
երկու մեքենայից, այժմ արդեն տարեկան բազում հազարավոր մեքենա են
տալիս: Հենց միայն 1956 թվականին բաց է թողնված 184 հազար տրակտոր,
որ մոտավորապես 20 հազարով ավելի է, քան 1955 թվականին արտադրածը:
Առանձնապես պետք է ընդգծել, որ ի հաշիվ ռեզերվների օգտագործման և
ամենից առաջ ի հաշիվ խամ ու խոպան հողերի յուրացման, մի գործ, որի
նմանը իր մասշտաբներով և գլխավորապես բնության նվաճման տեմպերով
առաջներում երբեք չի տեսնված, ցանքատարածությունները 1954—1956
թվականներին ընդարձակվեցին 37,5 միլիոն հեկտարով: Եթե ռևոլյուցիայից
առաջ հացահատիկի ապրանքային արտադրանքը կազմում էր 1.300 միլիոն
փութ, ապա 1956 թվականին կոլտնտեսություններն ու սովետական տնտեսու-
թյունները պետությանը հանձնեցին ու վաճառեցին 3.304 միլիոն փութ հա-
ցահատիկ:
ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշմամբ վերջին ժամանակներս հրա-
վիրված գյուղատնտեսության աշխատողների զոնային խորհրդակցությունները
կյանքի կոչեցին մեծագույն կարևորություն ունեցող մի շարժում՝ սոցիալիս-
տական մրցություն՝ 100 հեկտար հողային տարածությունից 100 ցենտներ
միս և 400 ցենտներ կաթ ստանալու համար: Համարձակ նախաձեռնությունն
ու ստեղծագործական ոգին, ակտիվության խիստ ուժեղացումը, աշխատան-
քում թերությունների ու սխալների նկատմամբ անհաշտությունը բնորոշ են
մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ընդհանուր կուրսի համար, մանա-
վանդ ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբերյան պլենումից
հետո: Պարտիայի կազմակերպական գործունեության հաստատուն նպատա-
կասլացությունը հրապուրիչ հեռանկարներ բացեց սոցիալիստական գյուղա-
տնտեսության առջև: Նրա աշխատավորները հայտաբերում ու գործի են
դնում չօգտագործված խոշոր ռեզերվներ, ամրապնդում են կերի բազան, բա-
րելավում են անասունների խնամքը, դեպի վեր են բարձրացնում տնտեսու-
թյունը: Հունիսի 20-ին կաթի մթերման ու գնումների կիսամյա պլանը երկ-
րում կատարված էր 108 տոկոսով, պետությանը 1726 հազար տոննա ավելի



կաթ էր հանձնված ու վաճառված, քան անցյալ տարի նույն ժամանակամիջոցում:

Հակապարտիական խումբը ամբողջությամբ վերցրած թշնամաբար դիմավորեց ժողովրդական նախաձեռնությանը, պարտիայի կոչին, որը հենվում էր ՍՍՌՄ միլիոնավոր աշխատավորների նախաձեռնության և հայրենասիրական պաշտպանության վրա: Հակապարտիական խումբը պայքար էր մղում մոտակա տարիներին բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի, մսի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու կոչի դեմ: Այդ խումբը փորձում էր իր դիրքը արդարացնել ամեն հիմքից զուրկ այն պատճառաբանությամբ, թե իբր առաջին հերթին գյուղատնտեսական արտադրության մի շարք ճյուղերում ԱՄՆ-ին հասնելու ձգտումը «նահանջ» է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից, ծանր արդյունաբերության առաջատար դերի ընդունումից, առավելապես, առաջին հերթին արտադրական միջոցների արտադրությունից: Նրանց սխեմայով մեր երկիրը պետք է տնտեսական տեսակետից առաջավոր կապիտալիստական երկրներին հասնի ու անցնի պողպատի և ծանր ինդուստրիայի այլ տեսակների արտադրությամբ, իսկ հետո էլ գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ: Հարցն այլ կերպ դնելը, նրանց կարծիքով, արդեն աջօպորտունիստական է:

Այդ առթիվ միայն կարելի է ասել. ահա թե ինչպիսի աբսուրդի է հասցնում կյանքից կտրված թեորիական սխեմատիզմը: Չէ՞ որ մեծ գիտություն չէ հարկավոր հասկանալու համար, որ անթույլատրելի է ծանր ինդուստրիայի առավել զարգացման հարցը շփոթել այն հարցի հետ, թե արտադրության որ տեսակներով մենք ավելի շուտ կամ ավելի ուշ կհասնենք ԱՄՆ-ին: Որովհետև այս երկրորդ հարցի լուծումը զգալի չափով որոշվում է նրանով, թե արտադրանքի այս կամ այն տեսակի թողարկումը ինչպիսի թափով է զարգանում ոչ միայն ՍՍՌՄ-ում, այլև ԱՄՆ-ում: Հայտնի է, որ ԱՄՆ-ում արդյունաբերական արտադրանքի թողարկման տեմպերը զգալիորեն գերազանցում են գյուղատնտեսական արտադրության զարգացման տեմպերից: Այսպես, 1913 թվականից մինչև 1956 թվականը Ամերիկայի Միացյալ Նահանգներում արդյունաբերական արտադրանքն աճել է ավելի քան չորս անգամ, իսկ գյուղատնտեսությունն այնտեղ, ըստ էության, դոփում է միևնույն տեղում. ցորենի ցանքի տարածությունները 1956 թվականին նույնն են եղել, ինչ 1913 թվականին, տարեկանի ու եգիպտացորենի գծով նվազել են, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, ճիշտ է, ավելացել է, բայց խոզերի գլխաքանակը մնացել է մոտավորապես նույնը, իսկ ոչխարներինը նվազել է: Այսպիսի պայմաններում իրականացնելով ծանր արդյունաբերության առավել աճը, մենք այնուամենայնիվ ԱՄՆ-ին հասնելու հնարավորություն ենք ստանում ամենից առաջ գյուղատնտեսական մթերքների որոշ տեսակների արտադրությամբ: Այնպես որ այստեղ պարտիայի գլխավոր գծից նահանջի նշույլ անգամ չկա:

Ծանր ինդուստրիայի առավել աճը մեր երկրում անխախտ օրենք է, և միայն դրա հիման վրա գյուղատնտեսությունը հասել է այնպիսի վերելքի, որ պարտիան կարողացավ ժողովրդին դիմել հիմնավորված կոչով՝ կաթի, յուղի, մսի արտադրությամբ հասնել ու անցնել ԱՄՆ-ից: Դրան պետք է հասնենք ոչ թե ի հաշիվ միջոցները ծանր ինդուստրիայից գյուղատնտեսության մեջ փոխադրելու, այլ ի հաշիվ նրա ներքին ռեզերվների մոբիլիզացման,

որոնց օգտագործման համար լայն ճանապարհ է բացել պլանավորման նոր սիստեմը։

Գերի մնալով իրենց մտացածին սխեմաներին՝ դոգմատիկները չկարողացան հաշվի առնել, որ մեր երկիրը ծանր ինդուստրիայի առավել զարգացման հետ, արդյունաբերական շինարարության ըստամենայնի զարգացման հետ միասին միևնույն ժամանակ ամենակենտրոնացված գյուղատնտեսական տերությունն է աշխարհում։ Չէ՞ որ հենց այդ էլ թե՛ հողագործության, թե՛ անասնաբուծության մեջ բացառիկ օգուտներ է տալիս նրան, լավագույն դիրքեր ապահովելով նրա համար կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ։ Եվ ՍՍՌՄ սոցիալիստական գյուղատնտեսությունը պարտավոր է օգտագործել այդ օգուտները։ Նա այնպիսի վիթխարի ռեզերվներ ունի, որ նրանց գործադրումը հնարավորություն է տալիս արդեն իսկ մոտակա տարիների ընթացքում բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությամբ և՛ հասնել և՛ անցնել ԱՄՆ-ից։

Այդ հնարավորությունների անտեսումը, հակապարտիական խմբի թշնամական վերաբերմունքը մեր հասարակության կենսական պրոբլեմներին, իհարկե, իրենց դոգմատիկ տրամաբանությունն ունեն։ Բոլոր գույնի դոգմատիկներն ու աղանդավորները միշտ էլ սոցիալիզմը դիտել են որպես յուրահատուկ «մոդել», բոլոր մանրամասնություններով նկարագրված ըստ հրահանգի։ Բայց հայտնի է, որ այդպիսի խղճուկ պատկերացումները երբեք լավ բանի չեն հասցրել։

Դժվարություններով ու պայքարով ամբողջ աշխատավոր մարդկության ապագայի լուսավոր ճանապարհը հարթող մեր ժողովրդի գործերին ու կյանքին խորապես ներդաշնակ են հնչում այն խորաթափանց խոսքերը, որ ասել է Լենինը իր ամենավերջին ճառերից մեկում. «Մեզ մոտ որևէ փոփոխության երևակայական արագության ոչ ոք չի հավատա, բայց իրական արագությանը, պատմական զարգացման որևէ ժամանակաշրջանի համեմատությամբ եղած արագությանը, վերցրած այնպես, ինչպես նա եղել է, այդպիսի արագության, երբ շարժումը ղեկավարում է իսկական ռևոլյուցիոն պարտիա, այդպիսի արագության մենք հավատում ենք և այդպիսի արագության մենք, ինչպես էլ լինի, կհասնենք»։

Այն արագությունը, որի մասին երազում էր կոմունիզմի մեծ ստրատեգը, ավելի ու ավելի է դառնում սովետական հասարակության կենդանի իրականությունը։ Աշխարհում տնտեսական ուժերի փոխհարաբերության փոփոխությունն ի վնաս կապիտալիզմի, այն տեղը, որ համաշխարհային արդյունաբերական ու գյուղատնտեսական զարգացման մեջ գրավում է Սովետական պետությունը, ամենից ավելի համոզիչ կերպով է ապացուցում այդ։ Ցարական Ռուսաստանը 1913 թվականին արտադրում էր համաշխարհային արդյունաբերության արտադրանքի 2,6 տոկոսը, իսկ 1955 թվականին ՍՍՌՄ-ին բաժին էր ընկնում 19 տոկոս։ Պերճախոս և ուսանելի են հետևյալ համեմատական տվյալները. 1956 թվականին ԱՄՆ-ում պողպատ ձուլվել է 1,8 անգամ ավելի, քան 1929 թվականին, իսկ ՍՍՌՄ-ում՝ 10 անգամ ավելի. նավթի հանույթը այդ նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ում ավելացել է 2,5 անգամ, իսկ ՍՍՌՄ-ում՝ 6 անգամ. էլեկտրաէներգիայի արտադրությունն այդ տարիներին ԱՄՆ-ում աճել է 5,8 անգամ, իսկ ՍՍՌՄ-ում՝ 31 անգամ։ Այս ամենահամոզիչ



թվերը, որոնք ցույց են տալիս համաշխարհային տնտեսական զարգացման տենդենցը, կարելի է երկար շարունակել։

Օբյեկտիվորեն գործող այս տենդենցը հերքելու փորձերը, որ անում են որոշ բուրժուական գիտնականներ, նախ և առաջ կարելի է բացատրել ցանկալին իրականություն ներկայացնելու ձգտումով՝ կանգ չառնելով փաստերի կեղծման առաջ։ ԱՄՆ-ում ամերիկյան համալսարանի պրոֆեսոր Ուորրեն Նաթերը կատարել է մի «խրթին հայտնագործություն», որպես թե ՍՍՌՄ-ն ներկայումս ԱՄՆ-ից ավելի շատ է հետ մնում, քան 1913 թվականին Ռուսաստանը՝ այն ժամանակվա Ամերիկայից։ Կամ՝ մի ուրիշ օրինակ։ Ամեն կերպ ձգտելով նվազեցնել ՍՍՌՄ տնտեսական պրոգրեսի տեմպերը, մանավանդ բուրժուական երկրների հետ համեմատելիս, անգլիական տնտեսագետ Կ. Կլարկը հանդես է եկել «Սովետական ճգնաժամը» բազմանշանակ հոդվածով։ Կլարկը բացահայտորեն տարվում է իր ո՛չ օբյեկտիվությամբ, պնդելով, թե 1928 թվականից մինչև 1940 թվականը մեր երկրում արտադրական տարեկան աճը 4,5 տոկոսից չի անցել։

Սակայն վերջին ժամանակներս ՍՍՌՄ էկոնոմիկային նվիրված բուրժուական հետազոտությունների մեջ բնորոշը իրականության այդ խեղաթյուրումները չեն։ Նույնիսկ թշնամաբար տրամադրված բուրժուական տնտեսագետները ավելի ու ավելի քիչ են համարձակվում ժխտել սոցիալիստական սիստեմի անտարակուսելի առավելությունը զարգացման տեմպերի հարցում։ Այսպես, օրինակ, ԱՄՆ-ի կոնգրեսի տնտեսական հանձնաժողովի «Տնտեսական զարգացման տենդենցները» խորագրով ակնհայտորեն ո՛չ օբյեկտիվ հակասովետական հրատարակությունը խոստովանում է, որ «1948 թվականից մինչև 1953 թվականն ընկած ժամանակամիջոցում ԱՄՆ-ի ազգային արտադրանքը աճել է... մեկ երրորդով ավելի դանդաղ, քան Սովետական Միությունում»։

Անգլիական բուրժուական տնտեսագետ Պիտեր Ուայլսը թեպետ և դժգոհում է սովետական արդյունաբերության արագ աճից, բայց և այնպես չի կարող չընդունել մեր բարձր տեմպերը, որոնք շատ ավելի գերազանցում են այն ամենը, ինչ երբևիցե տեսել է Արևմուտքը։ Այդ տեմպերի պատճառը, Ուայլսի խոսքերով ասած՝ հենց «կոմունիստական սիստեմի մեջ է»։ Իսկապես, սոցիալիստական սիստեմի առավելությունները սովետական էկոնոմիկային հնարավորություն են տալիս արագորեն հասնելու կապիտալի երկրներին։ Եվ իրոք, պողպատի ձուլումը մեր երկրում, որ 1913 թվականին կազմում էր ԱՄՆ-ի պողպատի ձուլման 13 տոկոսը, 1955 թվականին աճել է մինչև 43 տոկոսը, ածխի հանույթը համապատասխանորեն 5,6 տոկոսից աճելով հասել է 80 տոկոսի, կոշիկի արտադրությունը՝ 22-ից 47 տոկոսի, բամբակի կտորեղենինը՝ 45-ից 64 տոկոսի, կարագ յուղինը՝ 30-ից 70 տոկոսի։ Յուղի արտադրության ծավալով ՍՍՌՄ-ն 1957 թվականին ըստ էության հասել է ԱՄՆ-ին։ ՍՍՌՄ և ԱՄՆ պաշտոնական վիճակագրության վրա հիմնված այս թվերը առանձին մեկնաբանությունների կարիք չեն զգում։

ԱՄՆ-ում էս ավելի ու ավելի շատ են երևան գալիս մարդիկ, որոնք զգաստորեն են գնահատում մեր երկրի գործերի դրությունը, երևան են գալիս անկանխակալ հետազոտություններ։ Աստիճանաբար մոդայից դուրս են գալիս ԱՄՆ-ի և ՍՍՌՄ-ի միջև տնտեսական զարգացման մակարդակի խզումը ավելանալու մասին եղած հերյուրանքները։

*Սոցիալիստական արտադրության գլխավոր նպատակը աշխատավոր մարդու բարօրությունն է։ Սոցիալիստական հասարակության նպատակն է «ապահովել իր բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և համակողմանի ազատ՝ զարգացումը» (Լենին)։ Այս է աշխարհում նոր, երջանիկ կյանք ստեղծելու համար մղվող պայքարի իմաստը։ Սոցիալիզմը ստեղծում է և կստեղծի կյանքի անհամեմատ ավելի բարձր մակարդակ, քան կա կապիտալիստական երկրներում, նրանցից նույնիսկ ամենազարգացած ու հզոր երկրում։ Սոցիալիզմը ժողովրդին կտա նյութական ու հոգեկան արժեքների այնպիսի առատություն, որպիսին կապիտալիստական երկրներում ընդհանրա-*
*պես աներևակայելի է։ Այսպիսի պնդումը ոմանց այժմ չափազանցություն*
*կթվա. չէ՞ որ ԱՄՆ-ում կենսամակարդակն ավելի բարձր է, քան մյուս երկըր-*
*ներում։ Բավական է հիշեցնել, որ կապիտալիստական աշխարհի բնակչության*
*ընդամենը մոտ 10 տոկոսն է ապրում ԱՄՆ-ում, և միևնույն ժամանակ նրանց*
*բաժին է ընկնում համաշխարհային կապիտալիստական արտադրության*
*կեսից ավելին։ Հենց այս էլ, իհարկե, որոշում է յուրաքանչյուր շնչին ընկնող*
*արտադրության չափերը։*

*Բայց հայտնի է, որ կապիտալիզմը հասարակության արտադրողական*
*ուժերն օգտագործում է արտոնյալ չնչին փոքրամասնության խելահեղ հարըս-*
*տացման համար։ Նրա այս օրգանական բնույթը ամենևին չեն փոխում աշ-*
*խատավարձի բարձրացման, կապիտալիզմի գլխավոր երկրներում աշխատա-*
*վորների որոշ խմբերի նյութական պայմանների բարելավման առանձին փաս-*
*տերը։ Ընդհանուր առմամբ կապիտալիզմը աշխատանքի մարդկանց համար,*
*այսինքն մարդկության ճնշող մեծամասնության համար եղել է և մնում է*
*որպես զարհուրելի խարազան, «անսահման սարսափ», ինչպես կոչել է այն*
*Լենինը։ Եվ կապիտալիզմի ոչ մի ժամանակակից մոդայափոխում, ոչ մի*
*կեղծ-գիտական ձևռնածություն ի վիճակի չէ փոխելու նրա այդ շահագործա-*
*կան իմաննենտ էությունը։*

*Կոմունիստները ելնում են նրանից, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնա-*
*ժամի ժամանակաշրջանում նրա բոլոր հակասությունները սրվում են և ավելի*
*մեծ ուժով է հանդես գալիս աշխատավորների սաստկացող աղքատացման*
*օրենքը։ Սրան հակառակ՝ բուրժուազիայի իդեոլոգները գործի դնելով հետ-*
*պատերազմյան տարիներին արդյունաբերական և գյուղատնտեսական ար-*
*տադրության աճման մասին եղած տվյալները, ճգնում են առաջ քաշել կա-*
*պիտալիզմի ինչ-որ ստաբիլիզացման թեորիա։ Բայց չէ՞ որ մարքսիստները*
*երբեք չեն պնդել, թե կապիտալիզմի կործանումը հետևանք է լինելու արտա-*
*դրության անընդհատ անկման, արտադրանքի ծավալի անընդհատ նվազման*
*կապիտալիստական երկրներում։ ՍՄԿՊ XX համագումարը վճռականապես*
*դեմ արտահայտվեց այսպիսի վուլգարացման և հասարակացված մոտեցման։*
*Արդի կապիտալիզմի պայմաններում կապիտալիստական արտադրության*
*աճը հնարավոր է, ինչպես և հնարավոր է բանվորների զանազան խմբերի*
*նյութական պայմանների բարելավում մի շարք բուրժուական երկրներում։*
*Անվիճելի է, որ այժմ էլ ԱՄՆ-ը կենսամակարդակի հարցում դեռևս մյուս*
*երկրներից առաջ են գտնվում։ Սակայն արտադրության ու տեխնիկայի աճ-*
*ման փաստերը, ինչպես և կապիտալիստական երկրների արտաքին առևտրի*
*մեծացման փաստերը չեն փոխում նրա զարգացման հիմնական գիծը՝ կապի-*
*տալիզմի ընդհանուր ճգնաժամի շարունակվող խորացումը։*



*Բազմաթիվ փաստեր կան, որոնք ցույց են տալիս, որ կապիտալիստական երկրների աշխատավորների տնտեսական կյանքն ընդհանուր առմամբ շարունակում է վատանալ։ Սա առանձնապես վերաբերում է գաղութային, կիսագաղութային կախյալ երկրներին, որոնց իմպերիալիստները կողոպտում են։ Կապիտալիստական կարգը և նրա կենսական խթանը՝ շահույթի հետևից ընկնելը վճռականորեն խանգարում են ժամանակակից վիթխարի արտադրողական ուժերը բոլոր մարդկանց բարօրության համար լայնորեն օգտագործելուն։*

*Ահա թե ինչու այժմ այնքան մարգարեական են հնչում լենինյան խոսքերն այն ռևոլյուցիոն ազդեցության մասին, որ սովետական երկիրը, նախ և առաջ նրա տնտեսական շինարարությունը գործում է միջազգային զարգացման ամբողջ ընթացքի վրա։ Սոցիալիզմն ակնառու ցույց է տալիս իր աճող ուժերը, իր վստահությունը վերջնական հաղթանակին։*

*Այժմ ամենից շատ ինչի՞ց են սարսափում բանվոր դասակարգի թշնամիները, նրանք, ովքեր առանձնապես ձանձրալիորեն կրկնում են, թե «հակաբնական բան է տարբեր սիստեմների գոյությունը մեկ աշխարհում»։ Նրանք ամենից ավելի վախենում են ՍՍՌՄ-ում բարձր կենսամակարդակից։ Նույնիսկ լոնդոնյան սովորաբար զուսպ «Թայմս» թերթը անդրադառնալով սովետական տնտեսական պլաններին ու ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման տեմպերին և նրանց փոխհարաբերությանը ուրիշ երկրների զարգացման հետ, պնդում է, թե դա ահեղ հեռանկար է, դա ոչ թե պարզապես վեճ է մրցող տնտեսական սիստեմների միջև, դա վեճ է քաղաքական հաղթանակների միջև, որտեղ որպես դատավոր հանդես են գալիս այն երկրները, որոնք ոչ մի բլոկի մեջ չեն մտնում։ Լոնդոնյան թերթը նկատի ունի այն բոլոր թույլ զարգացած երկրները, որտեղ ապրում է կապիտալիստական աշխարհի բնակչության համարյա 60 տոկոսը։*

*Մենք, սովետական մարդիկս վստահ ենք, որ այդ վեճը մեզ համար նպաստավոր է լուծվելու։ Մենք առաջ ենք ընթանում՝ լի հպարտության զգացմունքով այն մեծ միսիայի համար, որ կատարում է մեր ժողովուրդը։ Մենք վստահ ենք նոր գործերի, հերոսական նոր գործերի մեր ծրագրի ճշտությանը։ Արտասահմանյան երկրների բոլոր լուրջ դիտողներին այժմ զարմացնում է մեր պարտիայի մտահղացումների լայնությունը գյուղատնտեսության մեջ, մեր արդյունաբերության կազմակերպման գործում այն վերափոխումների վիթխարի թափը, որոնք ամբողջ սովետական ժողովրդի հավանությանն արժանացան։*

*Այդ հարցերը ուղղակի կապ ունեն նյութական բարեկեցության, բնակչության պահանջմունքների բավարարման հետ։ Սոցիալիստական տնտեսության հզորության անընդհատ աճման շնորհիվ Սովետական պետությունը հետպատերազմյան երկու հնգամյակների ընթացքում մի քանի հարյուր միլիարդ ռուբլի է ծախսել ժողովրդական կրթության, գիտության ու կուլտուրայի, աշխատավորների բժշկական սպասարկման, կենսաթոշակով ապահովելու վրա։ Հետպատերազմյան երկու հնգամյակների տարիներին հենց միայն պետական միջոցների հաշվին ավելի քան 185 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն է կառուցվել։*

*Կոմունիստները, մարքսիստ-լենինյանները անխախտ ճշմարտություն են համարում, որ միայն սոցիալիստական տնտեսաձևը կարող է ապահովել հա-*

ցարակության պահանջմունքների բավարարման, նրա հարաճուն բարեկեցու- թյան այն բարձրագույն աստիճանը, որը Մարքսը բնորոշել է «որպես իսկական մարդկային կյանք»։

***

Վերջերս մեր երկրի առջև բարենպաստ հեռանկարներ և տնտեսական զարգացման հնարավորություններ են բացվել։ Այժմ գլխավորն է՝ արագորեն և լավագույն ձևով կենսագործել պարտիայի մշակած հոյակապ ծրագրերը։ Այժմ ամեն ինչ վճռում է ամենօրյա ջանասեր կազմակերպչական ու քաղա- քական աշխատանքը։ Չէ՞ որ մենք նոր ենք միայն սկսում իրականացնել նոր, համարձակ մտահղացումները։ Ամեն ինչ կախված է նրանից, թե պարտիան ու նրա բոլոր կազմակերպությունները ինչպես կկարողանան արագորեն, ճիշտ ու հմտորեն սովետական ժողովրդի անսպառ եռանդն ուղղել այդ մտահղա- ցումների իրականացմանը։

Այժմ մեր պարտիայի, նրա Կենտկոմի համար զգալիորեն հեշտացել է աշխատանքը։ Գաղտնիք չէ, որ այս վերջին տարիների ընթացքում մերկաց- ված դավադիրների հակապարտիական խումբը համառորեն սաբոտաժի էր ենթարկում պարտիայի գլխավոր գծի իրականացումը և՛ ՍՍՌՄ ներսում և՛ միջազգային ասպարեզում։ Իրենց անցյալով, չափից ավելի փքած ծառայու- թյուններով գոռոզամտած մարդիկ լրջորեն մտադիր էին պարտիայի մեջ, սովետական ժողովրդի մեջ ջլատել ստեղծագործական սկզբունքը, սովետական հասարակությանը հատուկ անվեհերության ու համարձակ նախաձեռնության, նորարարության ոգին, ինքնահանգստացման նկատմամբ անհաշտության ոգին։ Այդ մարդիկ մոռացել էին, որ հին կառքով շատ հեռու չես գնա։ Գա- ղափարապես ջախջախված լինելով՝ նրանք այսուհետև չեն կարող մեզ խան- գարել մեր մեծ գործի մեջ։ Մենք է՛լ ավելի հաստատակամորեն կպայքարենք սովետական էկոնոմիկայի վերելքն արագացնելու համար։ Չէ՞ որ մեր ինչպես արդյունաբերական, այնպես էլ գյուղատնտեսական արտադրության տեմպերի անզուսպ աճն է, նրանց փոխազդեցությունն է, որ վերջին հաշվով հանդիսա- նում է գլխավորն ու վճռականը մեր երկրի բախտը որոշելու համար, որը պակաս կարևոր նշանակություն չունի ամբողջ մարդկության զարգացման գործում։

Սովետական հասարակ մարդիկ, նրանք, ովքեր նյութական արժեքներ են ստեղծում, ովքեր իրոք առաջ են մղում հասարակական կյանքը, սնանկացած հակապարտիական խմբից որքա՜ն ավելի պարզ են հասկանում մեր ստեղ- ծագործական աշխատանքի համաշխարհային պատմական նշանակությունը, նրա ռևոլյուցիոն ներգործությունը բոլոր ժողովուրդների վրա։ Հենվելով մասսաների հայրենասիրական վերելքի վրա, նրանց անսպառ ռևոլյուցիոն խան- գավառության վրա՝ մեր պարտիան իսկապես որ ընդունակ է հրաշքներ գոր- ծելու։ Մեր առջևումն է Հոկտեմբերյան փառապանծ տարեդարձը։ Մեր երկ- րում սոցիալիստական ռևոլյուցիայից քիչ առաջ Վ. Ի. Լենինը հիշեցնում էր, որ տեղում կանգնած մնալ չի կարելի։ Հարկավոր է կամ առաջ գնալ, կամ՝ ետ։ Իսկ առաջ գնալ քսաներորդ դարում՝ չի կարելի առանց դեպի սոցիալիզմ գնալու, առանց քայլեր անելու դեպի սոցիալիզմ։ Լենինյան այս խոսքերի անտարակուսելի ճշմարտությունը հաստատել է կյանքի ամբողջ ընթացքը, տասնյակ ու հարյուր միլիոնավոր մարդկանց հասարակական պրակտիկան ամբողջ աշխարհում։ Կանգնելով սոցիալիզմի ուղու վրա՝ մեր ժողովուրդը կոմունիստների պարտիայի գլխավորությամբ հասել է նոր հասարակության կառուցման և այժմ վստահորեն առաջ է ընթանում դեպի կոմունիզմ։

«ԿՈՄՈՒՆԻՍՏ» ամսագիր, № 11

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՐԱՎԱԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վ. ՍԻՐՑԵՎ

Մարքսիզմը սովորեցնում է, որ հասարակական գիտակցությունը, այդ թվում և իրավագիտակցությունը, մարդկանց հոգևոր կյանքը միշտ եղել են հասարակության նյութական կյանքի պայմանների, մարդկանց հասարակական կեցության արտացոլումը։ Անհաշտելի անտագոնիստական դասակարգերի տրոհված հասարակության մեջ յուրաքանչյուր դասակարգի համապատասխանում է իր իրավագիտակցությունը։ Սակայն, պետական իշխանության հարկադրական ուժի վրա հենվող իրավական նորմաների, վարքագծի ընդհանուր-պարտադիր կանոնների մեջ իրենց արտահայտությունը գտնում են միայն տիրապետող դասակարգի իրավագիտակցությունը, գաղափարներն ու հայացքները։

Դասակարգային հասարակության մեջ իրավագիտակցությունն արտահայտում է այս կամ այն որոշակի դասակարգի դրությունն ու շահերը, նրա կարիքներն ու խնդիրները։ Այն հանդիսանում է տվյալ ժամանակում իշխող հասարակական կեցության, տնտեսակարգի արտացոլումը։

Բուրժուական իրավագիտակցության բնորոշ առանձնահատկությունը, օրինակ, մասնավոր սեփականության պաշտպանությունն է։ Իր ամբողջ գոյության ընթացքում բուրժուական իրավագիտակցությունը պաշտպանել և պաշտպանում է մասնավոր սեփականատերերի, կապիտալիստների իրավունքները, «փողի քսակի» շահերը։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ժամանակակից պայմաններում բուրժուական իրավաբաններն ու իրավագետները ձգտում են թմրեցնել ժողովրդական մասսաներին այնպիսի պնդումներով, թե իբր կապիտալիզմի գոյությունն օրինաչափ է, ջանում են հետաձգել մասնավոր սեփականության և մարդու կողմից մարդու շահագործման վրա հիմնված կապիտալիստական հասարակարգի անխուսափելի կործանումը։

Բուրժուական իրավագիտակցությունը կապիտալիստի, կալվածատիրոջ մասնավոր սեփականությունը համարում է սրբազան և անձեռնմխելի։ Եվ քանի որ բուրժուական հասարակության մեջ տիրապետող դասակարգը բուրժուազիան է, ապա այդ հասարակության մեջ գործող օրենքները, որոնք սահմանված են բուրժուազիայի իրավագիտակցությանը համապատասխան, կոչված են պաշտպանելու մասնավոր սեփականությունը։

Տիրապետող դասակարգի իրավագիտակցությունն իր արտահայտությունն է գտնում օրենքների իրավաբանական ամրապնդման մեջ, իրավական նորմերում։ Իրավունքը, ինչպես հայտնի է, տիրապետող դասակարգի կամքն է՝ բարձրացված օրենքի աստիճանի։ «Կամքը,— գրել է Վ. Ի. Լենինը,— եթե այն պետական է, պետք է արտահայտված լինի որպես իշխանության կողմից սահմանված օրենք. այլապես «կամք» բառը օդի դատարկ ցնցում է դատարկ

հնչյունով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 97)։ Պետական կամքը որոշվում է այն դասակարգի տիրապետող նյութական շահերով, որը տնտեսապես և քաղաքականապես տիրապետում է հասարակության մեջ։

Իրավական գաղափարախոսությունը անխզելիորեն կապված է քաղաքական գաղափարախոսության հետ։ Իրավունքը միշտ էլ ունեցել է և ունի որոշակի քաղաքական բովանդակություն, քանի որ այն պետական քաղաքականության յուրահատուկ ձևի արտահայտությունն է։ Հետևապես մարդկանց իրավական հայացքները, իրավագիտակցությունը անխուսափելիորեն կապված են քաղաքական գիտակցության հետ։ Իրավագիտակցության մեջ իր արտահայտությունն է գտնում տիրապետող դասակարգի քաղաքականությունը, դասակարգ, որը ձգտում է այնպիսի կարգեր սահմանել, որոնք ցանկալի և ձեռնտու են իրեն, և դրանով իսկ ամրապնդել իր տնտեսակարգը։ Իսկ քաղաքականությունը «դեպի պետությունն ու կառավարությունը *բոլոր* դասակարգերի և խավերի ունեցած վերաբերմունքի բնագավառն է, *բոլոր* դասակարգերի փոխհարաբերությունների բնագավառը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 5, էջ 559)։

Բայց տիրապետող դասակարգի քաղաքականությունն իր արտահայտությունն է գտնում ո՛չ միայն իրավունքի, ո՛չ միայն օրենքների մեջ։ Ուստի չի կարելի հանգեցնել ինչպես քաղաքականությունը իրավունքին, այնպես էլ իրավունքը քաղաքականությանը։ Իրավունքը զուտ քաղաքականության հանգեցնել՝ նշանակում է աղճատել պատկերացումն իրավունքի մասին, որովհետև քաղաքացիների՝ օրենքով պաշտպանվող շատ անձնական ու գույքային շահեր չեն համընկնում քաղաքականության ըմբռնման հետ, որն իր հատուկ բովանդակությունն ունի (օրինակ, անձնական, գույքային, ընտանեկան, ժառանգական և այլ իրավունքների ու շահերի իրավական պաշտպանությունը)։

Ինչպես չի կարելի իրավունքը հանգեցնել զուտ քաղաքականության, ճիշտ այնպես էլ չի կարելի իրավագիտակցությունը նույնացնել քաղաքական գիտակցության հետ։ Քաղաքական գիտակցությունը այն ընդհանուր նպատակների ու խնդիրների նկատմամբ հայացքներն են, որպիսիք հետապնդում են հասարակական դասակարգերը, այն մեթոդների և միջոցների նկատմամբ եղած հայացքները, որոնց օգնությամբ իրագործվում են այդ նպատակներն ու խնդիրները։ Մեր սոցիալիստական հասարակության մեջ տիրապետող քաղաքական հայացքներն իրենց հստակ, ծավալուն արտահայտությունը գտնում են Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության քաղաքականության իրականացման մեջ. դրանք ուղղված են սոցիալիստական իրավակարգի ամրապնդմանն ու զարգացմանը, կոմունիզմի կառուցմանը մեր երկրում։

Սոցիալիստական իրավագիտակցությունը իրավական գաղափարների, իրավունքի էության, նրա նշանակության նկատմամբ բանվոր դասակարգի հայացքների ամբողջությունն է, ղեկավար սկզբունքները։ Այդ իրավագիտակցությունն իր մեջ բովանդակում է ինչպես ամբողջությամբ առած գործող իրավունքի, այնպես էլ նրա առանձին նորմերի գնահատականը այդ դասակարգի տեսակետից, վերջինիս պահանջները, ինչպես և նրա պատկերացումն այն մասին, թե ինչպիսին պետք է լինի իրավունքն ապագայում՝ ելնելով բանվոր դասակարգի շահերից։

Բուրժուական հասարակության մեջ բուրժուազիայի իրավագիտակցությունն արմատապես տարբերվում է պրոլետարիատի իրավագիտակցությու-



նից, քանի որ բուրժուազիայի և պրոլետարիատի բուն իսկ կեցությունը, նրանց տնտեսական շահերի հակադրությունը պայմանավորում են բուրժուազիայի և պրոլետարիատի գաղափարների, պատկերացումների, բարոյական սկզբունքների, քաղաքականության տրամագծորեն հակադիր լինելը։ Եթե ժամանակակից բուրժուական իրավագիտակցությունն արտահայտում է իմպերիալիստների մարդատյաց, շովինիստական և կոսմոպոլիտական ձգտումները, ապա սոցիալիստական իրավագիտակցության հիմքում ընկած են հումանիզմի, ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական հասարակություն կառուցող մարդկանց իսկական հավասարության սկզբունքները։ Սովետական պետության մեջ մեր ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության պայմաններում բանվոր դասակարգի, գյուղացիության և սովետական ինտելիգենցիայի իրավական հայացքները միասնական են։

Մեր երկրում հաստատված սոցիալիստական իրավագիտակցությունը սոցիալիստական իրավական հայացքների, գաղափարների, սկզբունքների ամբողջությունն է, որոնք ապահովում են սոցիալիստական հասարակության նպատակների ու խնդիրների իրավական կարգավորման մասին ճիշտ դատողությունը, այդ հասարակության մեջ գործող իրավունքի ճիշտ գնահատականը, ինչպես նաև ճիշտ դատողությունը իրավունքի շահագործողական տիպերի էության ու նշանակության մասին։

Սոցիալիստական հասարակության մեջ սովետական մարդկանց կամքը, որը բարձրացված է օրենքի աստիճանի, հանդիսանում է սոցիալիստական իրավագիտակցության արտացոլումը։ Սովետական պետության գոյության առաջին տարիներին, երբ հասարակության դասակարգային կառուցվածքը բնորոշվում էր որոշ շահագործողական դասակարգերի առկայությամբ, բնականաբար, խոսք լինել չէր կարող միասնական, ընդհանուր ժողովրդական կամքի մասին։ Սովետական ժողովրդի միասնական կամքը մշակվել է աստիճանաբար, Կոմունիստական պարտիայի, որպես Սովետական պետության ղեկավար և ուղղություն տվող ուժի հսկայական ջանքերի գնով։

Սովետական հասարակության անդամների ճնշող գերակշռությունը, սովետական միլիոնավոր մարդիկ ճիշտ են հասկանում սովետական իրավունքի նպատակներն ու խնդիրները, գիտեն և փորձով համոզված են, որ այդ իրավունքը պաշտպանում է նրանց շահերը, ամրապնդում է աշխատավորներին ցանկալի և ձեռնտու կարգերն ու հարաբերությունները։

Բայց դա չի նշանակում, թե մեր հասարակության մեջ այլևս չկան օրենքների խախտումներ, այդպիսիք չպահպանելու դեպքեր, անազնիվ վերաբերմունք իր պարտականությունների կատարման գործում, սոցիալիստական սեփականության, հանրակեցության կանոնների հանդեպ։ Այդպիսի խախտումներ կան և դրանք, բնականաբար, առաջ են բերում սովետական ժողովրդի օրինական վրդովմունքը։ Սովետական օրենքների ու վարքագծի կանոնների այդ խախտումները ճնշող գերակշռությամբ արդյունք են կապիտալիզմի մնացուկների կենսունակության մարդկանց կենցաղում և գիտակցության մեջ։

Մեր պետության կյանքի ու զարգացման գործում սոցիալիստական իրավագիտակցության դերը պարզելու համար կանգ առնենք այն հարցի վրա, թե ինչպիսի փոխներգործություն գոյություն ունի սոցիալիստական իրավագիտակցության և սոցիալիստական օրինականության միջև, ինչպիսի ազդեցություն ունի իրավագիտակցությունը օրինականության ամրապնդման վրա։

Կոմունիստական պարտիան, մշտապես հոգ տանելով իրավագիտակցության բարձրացման մասին, աշխատավորների մեջ հարգանք է ներարկում դեպի սովետական օրենքները, որոնց մեջ արտահայտվում է այն, ինչի մասին մտածում և ինչ որ ցանկանում է ժողովուրդը: Պարտիան սովորեցնում է օրենքների մեջ տեսնել մեծ ուժ նոր կյանքի կառուցման համար մղվող պայքարում:

Կոմունիստական պարտիան սովետական հիմնարկներից, պաշտոնատար անձերից և մեր երկրի քաղաքացիներից պահանջում է խստորեն պահպանել օրենքները: Սովետական պետությունն իր ամբողջ գոյության ընթացքում ղեկավարվել է պարտիայի այդ պահանջով: Այդ տեսակետից բնորոշ է Սովետների 6-րդ Համառուսաստանյան Արտակարգ համագումարի 1918 թվականի նոյեմբերի 8-ի որոշումը «Օրենքների ճշգրիտ պահպանման մասին» (СУ 1918 г. № 90, ст. 308):

Սոցիալիստական իրավագիտակցությունը, որ ստեղծել է Սովետական պետությունը՝ հին բուրժուական պետական մեքենան և հին օրենքները փշրելու հետևանքով, ենթադրում է պետական բոլոր օրգանների, պաշտոնատար անձանց և քաղաքացիների կողմից սովետական օրենքների և դրանց հիման վրա ու ի կատարումն դրանց պետական իշխանության և կառավարման օրգանների հրատարակած նորմատիվ ակտերի անշեղ պահպանումը: Ռևոլյուցիոն, սոցիալիստական օրինականության բովանդակությունը սահմանված է ՍՍՌՄ ԿԳԿ-ի և ԺԿՍ-ի 1932 թ. հունիսի 25-ի որոշմամբ, որտեղ մատնանշվում է, որ ռևոլյուցիոն օրինականությունը հանդիսանում է «պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման, բանվորների ու աշխատավոր գյուղացիների շահերի պաշտպանության կարևորագույն միջոցներից մեկը աշխատավորների դասակարգային թշնամիների (կուլակության, սպեկուլյանտների, բուրժուական վնասարարների) և նրանց կոնտրռևոլյուցիոն քաղաքական գործակալությունների դեմ մղվող պայքարում» (СЗ СССР 1932 г., № 50, ст. 298):

Բայց սոցիալիստական օրինականությունը հանդիսանում է ո՛չ միայն ճնշման և հարկադրանքի միջոց: Սովետական հասարակության մեջ այն հանդես է գալիս որպես մի հզոր կազմակերպական ու դաստիարակչական գործոն, որը նպաստում է այն բանին, որ բոլոր քաղաքացիները դառնան սոցիալիստական հասարակության գիտակից և ակտիվ կառուցողներ: Նա մասսաների մեջ դաստիարակում է սոցիալիստական իրավագիտակցություն, որն, իր հերթին, ամրապնդում է սոցիալիստական օրինականությունը, ապահովում է իրավական նորմերի ճիշտ կիրառումը՝ առաջադրված նպատակներին ու խնդիրներին համապատասխան:

Սոցիալիստական պետության զարգացման բոլոր էտապներում սոցիալիստական օրինականության պահանջների կատարումը մնացել է անփոփոխ: Սովետական օրենքները, պաշտպանելով աշխատավորներին, նպաստում են նոր արտադրական հարաբերությունների ամրապնդմանն ու զարգացմանը, ծառայում են կոմունիստական շինարարության նպատակներին, նրա տեմպերի արագացմանը, սովետական ժողովրդի հաջողությունների ու նվաճումների բազմապատկմանը: Դրա հետ միասին մեր օրենքները պաշտպանում են նաև Սովետական պետության քաղաքացիների անձնական շահերը: Սովետական իշխանության հրատարակած օրենքների և նրա կողմից պաշտպանվող կարգի խախտման համար պետական օրգանների, պաշտոնատար անձանց խիստ



պատասխանատվությունը սովետական հասարակության մեջ զուգակցվում է քաղաքացիների անձի և գույքի անձեռնմխելիության երաշխիքի ամրապնդման հետ:

1936 թվականի ՍՍՌՄ Կոնստիտուցիան օրենսդրական կերպով ամրապնդեց այն համաշխարհային-պատմական հաղթանակները, որոնք սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռք էր բերել սոցիալիզմի կառուցման գործում: Կոնստիտուցիան, հանդիսանալով օրենսդրական մարմինների իրավաստեղծագործական գործունեության իրավաբանական հիմնական աղբյուր, իրենից ներկայացնում է Սովետական պետության և իրավունքի բոլոր հիմնական սկզբունքների խտացված արտահայտությունը:

Մեր երկրում շահագործման և շահագործողական դասակարգերի լիկվիդացումով ամրապնդվեցին և հետագա զարգացում ստացան սոցիալիստական իրավական հայացքներն ու ժողովրդի պահանջները, որպիսիք Սովետական պետության գոյության այդ աստիճանում դարձան բարոյական և քաղաքական միասնության մեջ գտնվող սովետական ամբողջ ժողովրդի պահանջները, որոնք և ամրապնդվեցին պետության Հիմնական օրենքի իրավական նորմերում:

ՍՍՌՄ Կոնստիտուցիան, սոցիալիստական սեփականության ամրապնդման հետ միասին, 10-րդ հոդվածում ամրապնդում է քաղաքացիների անձնական սեփականությունը նրանց աշխատանքային եկամուտների ու խնայողությունների նկատմամբ, բնակելի տան և տնային օժանդակ տնտեսության նկատմամբ, տնային տնտեսության և առօրյա գործածության առարկաների նկատմամբ, անձնական սպառման ու հարմարության առարկաների նկատմամբ, ինչպես նաև քաղաքացիների անձնական սեփականության ժառանգման նկատմամբ:

Սովետական օրենքը երաշխավորում և պահպանում է քաղաքացիների այդ իրավունքը: Արտահայտելով սովետական ժողովրդի կամքը, նրա իրավական հայացքները, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը 1947 թվականի հունիսի 4-ին ընդունեց «Պետական և հանրային գույքի հափշտակության համար քրեական պատասխանատվության մասին» և «Քաղաքացիների անձնական սեփականության պաշտպանությունն ուժեղացնելու մասին» հրամանագրերը, որոնք մեր երկրի աշխատավորները հավանությամբ ընդունեցին:

Պետական օրգանների ու պաշտոնատար անձանց կողմից սոցիալիստական օրինականության ճիշտ և նպատակահարմար իրագործումն անհնար է առանց բուն իսկ աշխատավորական մասսաների անմիջական մասնակցության այդ գործին: Սոցիալիստական իրավագիտակցությունն այստեղ հանդես է գալիս որպես հզոր կազմակերպող և մոբիլիզացնող ուժ: Նա բարձրացնում է ժողովրդի քաղաքական ակտիվությունը, օգնում է սովետական մարդկանց, առաջին, որպեսզի նրանք ճիշտ կատարեն օրենքների ու մյուս նորմատիվ ակտերի պահանջները, և, երկրորդ, զգալի չափով ապահովում է նրանց կողմից վերահսկողությունն իրականացնելու պետական օրգանների ու պաշտոնատար անձանց գործունեության նկատմամբ:

Սոցիալիստական օրինականությունը, որպես բանվոր դասակարգի դիկտատուրայի ամրապնդման միջոց, անիմաստ է առանց սոցիալիստական իրավագիտակցության: Իր հերթին սոցիալիստական իրավագիտակցությունն ամրապնդվում է օրինականության և իրավական կանոնների ամրապնդման հետ միասին: Դրանում է սոցիալիստական օրինականության և իրավագիտակցու-

թյան փոխազդեցությունը, դրանում է նրանց միասնությունն ու տարբերությունը։ Օրինականությունն ու արդարացիությունը սոցիալիստական իրավագիտակցության ըմբռնման հիմնական չափանիշներն են։ Նրանք ոչ միայն չեն հակասում միմյանց, այլ, ընդհակառակը, լրացնում և զարգացնում են միմյանց։

Մենք արդեն նշեցինք, որ սոցիալիստական իրավագիտակցությունը անխզելիորեն կապված է հասարակական գիտակցության տարբեր ձևերի հետ։ Բայց այն առանձնապես սերտորեն է կապված բարոյականության հետ։ Եվ դա հասկանալի է, քանի որ սովետական իրավունքի՝ ամբողջությամբ վերցրած, կամ նրա առանձին իրավական նորմի գնահատականը, որ տալիս է իրավագիտակցությունը, զգալի չափով բարոյականության գնահատականն է։ Մեր երկրում սոցիալիստական իրավական և բարոյական հայացքները մեկ սոցիալական բնույթ ունեն, միևնույն խնդրի՝ կոմունիստական հասարակության կառուցմանն են օժանդակում։ Դրանք հանդիսանում են մարքսիստական-լենինյան պարտիայի աշխարհայացքի մի մասը։ Կոմունիստական պարտիայի բարոյականությունն այժմ ամբողջ սովետական ժողովրդի բարոյականությունն է։

Բարոյականությունը, ինչպես և իրավագիտակցությունը պատմական կատեգորիաներ են։ Ինչպես հասարակության ամբողջ գաղափարախոսությունն է պայմանավորված նյութական բարիքների արտադրության որոշ եղանակով, այնպես էլ բարոյականության հիմքումն է ընկած նյութական արտադրության որոշ եղանակ։ Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ դասակարգային հասարակության մեջ բարոյականությունն ունի դասակարգային բնույթ, որ հասարակարգի փոփոխության հետ միասին փոփոխվում է նաև բարոյականությունը։ Ընդսմին պետք է հատկապես նկատի ունենալ, որ անտագոնիստական դասակարգերի բաժանված հասարակության մեջ յուրաքանչյուր դասակարգ ունի իր բարոյականությունը։

Սոցիալ-տնտեսական ֆորմացիաների փոփոխություններն առաջ են բերում բարոյական փոփոխություններ։ Իսկ ի՞նչ բան է բարոյականությունը և որո՞նք են այն առանձնահատկությունները, որոնք բարոյականությունը տարբերում են իրավագիտակցությունից։ Բարոյականությունը հասարակության մեջ գոյություն ունեցող մարդկանց վարքագծի կանոնների ամբողջությունն է, մարդկանց՝ միմյանց նկատմամբ, դեպի պետությունը, դեպի դասակարգը ունեցած վերաբերմունքը որոշող նորմերի ամբողջությունը։

Բուրժուական բարոյականությունը, ինչպես նաև բուրժուական իրավագիտակցությունը քարոզում է հարգել մասնավոր սեփականությունը, բուրժուական պետությունը, բուրժուական օրինականությունը։ Նա շահագործվող մասսաներին ներշնչում է լինել խոնարհ, հլու և հնազանդ։ Այդպիսի բարոյականությունը պրոլետարիատը չի կարող իր համար ընդունելի համարել, որովհետև այդ բարոյականությունն ըստ էության պաշտպանում է ստրկությունը։ Բուրժուական բարոյականությունը շահագործողների դեմ շահագործվողների մղած դասակարգային պայքարը գնահատում է որպես անօրինական, անբարոյական։ Այդպիսի բարոյականությունը կրողների միակ նպատակն է հաշտեցնել անտագոնիստական հակասությունները, որոնք քայքայում են բուրժուական հասարակությունը, հետաձգել բուրժուազիայի տիրապետության անխուսափելի կործանումը։



Կոմունիստական բարոյականությունը, ընդհակառակը, ենթարկված է պրոլետարիատի դասակարգային պայքարի շահերին, մարդու կողմից մարդու շահագործման և աշխատավորների աղքատության ոչնչացման խնդրին։ Այն ծառայում է նոր, կոմունիստական հասարակության կառուցման շնորհակալ գործին։

Վ. Ի. Լենինը «Երիտասարդության միությունների խնդիրների մասին» իր ճառում ընդգծելով բուրժուական բարոյականության և կոմունիստական բարոյականության արմատական տարբերությունը, ասել է. «Մենք ասում ենք՝ բարոյականությունն այն է, որ ծառայում է հին շահագործողական հասարակության խորտակմանը և բոլոր աշխատավորներին միավորում է կոմունիստների նոր հասարակություն ստեղծող պրոլետարիատի շուրջը։

Կոմունիստական բարոյականությունն այն բարոյականությունն է, որը ծառայում է այդ պայքարին, որը միավորում է աշխատավորներին ընդդեմ ամեն տեսակ շահագործման...»։ «Բարոյականությունը ծառայում է այն բանին, որպեսզի մարդկային հասարակությունը վեր բարձրանա, ազատվի աշխատանքի շահագործումից»։ «Կոմունիստական բարոյականության հիմքն է կազմում կոմունիզմն ամրապնդելու և ավարտելու պայքարը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 357, 359, 359—370)։

Կոմունիզմի համար մղվող պայքարը կոմունիստական բարոյականության հիմնական սկզբունքն է։ Այդ սկզբունքով են որոշվում այժմ սովետական հասարակության անդամների վարքագիծն ու արարքները։

Սոցիալիզմի պայմաններում կոմունիստական բարոյականությունը դարձել է սովետական ժողովրդի ճնշող մեծամասնության կողմից ճանաչված նորմերի մի սիստեմ, որը կարգավորում է սովետական մարդկանց վարքագիծը։

Իրավական հայացքները, որոնք իրենց ամբողջությամբ կազմում են սոցիալիստական իրավագիտակցության բովանդակությունը, և բարոյագիտական հայացքները, որոնք բնութագրում են կոմունիստական բարոյականության սիստեմը, իրենցից ներկայացնում են սոցիալիստական բազիսի վրա բարձրացող միասնական վերնաշենքի տարբեր բաղկացուցիչ մասերը։ Նրանց սերտ փոխներգործությունը, փոխհամաձայնեցվածությունը և փոխթափանցումը, նրանց տնտեսական, քաղաքական և գաղափարական հիմքի միասնությունը դեռևս հիմք չի տալիս անտեսելու միասնական սոցիալիստական վերնաշենքի այդ մասերից յուրաքանչյուրի սպեցիֆիկ կողմը։

Սոցիալիստական հասարակության մեջ սովետական իրավունքի նորմերի նկատմամբ բարոյական և իրավական հայացքները շատ բանում համընկնում են։ Բայց դրա հետ միասին իրավագիտակցության և բարոյախոսության միջև գոյություն ունեն որոշ տարբերություններ. բարոյական ո՛չ բոլոր հայացքներն ունեն իրավական բնույթ, այսինքն՝ դրանցից ո՛չ բոլորն են ամրապնդված իրավական նորմերում, ուստի և վերաբերում են իրավագիտակցությանը։ Եթե իրավական հայացքները ամրապնդված են իրավունքի նորմերում, ապա, բացի այն բանից, որ օրգանների, պաշտոնատար անձանց և քաղաքացիների կողմից դրանք պահպանվում և կատարվում են կամովին ու գիտակցաբար, այդ իրավական նորմերի պահպանումն ու կատարումը ապահովվում է պետական հարկադրանքով։ Իրավական նորմի չկատարումը կամ խախտումը առաջ է բերում որոշ սանկցիա։ Իսկ բարոյականության նորմերը իրավաբանորեն չեն ձևակերպվում, նրանց հարկադրական կատարումը նոր-

մավորված չէ։ Այն ժամանակ, երբ իրավական նորմը ներկայացվում է պե-
տական իշխանության կողմից, բարոյական նորմը ներկայացվում է հասա-
րակական կարծիքի կողմից։ Բարոյական նորմի պահպանումը ապահովվում է
ոչ թե պետական հարկադրանքի ուժով, այլ հասարակական միջավայրով,
հասարակական կարծիքով, բարոյական նորմը խախտողի նկատմամբ հասա-
րակայնության վերաբերմունքով։ Սովետական մարդկանց բարոյական պար-
տականությունն արտահայտող ամեն ինչը չէ, որ արտահայտվում է օրեն-
քում։ Մյուս կողմից, այն, ինչ դատապարտվում է օրենքի կողմից, դատա-
պարտվում է նաև սովետական բարոյականության կողմից։

Ահա թե ինչու սոցիալիստական իրավագիտակցության և բարոյականու-
թյան ձևավորման համար հսկայական նշանակություն ունի աշխատավորների
կոմունիստական դաստիարակությունը, իդեոլոգիական աշխատանքը մասսա-
ների մեջ։ Կոմունիստական դաստիարակությունը պետք է կարևոր դեր խաղա
կապիտալիզմի մնացուկներից, հին հասարակության նախապաշարմունքներից
և վնասակար տրադիցիաներից մարդկանց գիտակցությունը մաքրելու գոր-
ծում։ Սոցիալիստական իրավագիտակցությամբ դաստիարակությունը նշանա-
կում է քաղաքացիների դաստիարակություն իրենց սոցիալիստական Հայրե-
նիքին, կոմունիզմի գործին նվիրվածության ոգով, սովետական օրենքների
խստիվ կատարման, հասարակական ու պետական պարտքի ազնիվ կատար-
ման ոգով։

Սոցիալիստական իրավագիտակցությանը խորթ են ամեն տեսակի նա-
ցիոնալիզմ, շովինիզմ, ռասայական խտրականություն։ Նա այդպիսիք դիտում
է որպես անթույլատրելի, պատժելի երևույթներ։ Դա իր արտահայտությունն
է գտել ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 123-րդ հոդվածում, որն ասում է «ՍՍՌՄ
քաղաքացիների իրավահավասարությունը տնտեսական, պետական, կուլտու-
րական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում,
անկախ նրանց ազգությունից ու ռասայից, հանդիսանում է անխախտ օրենք։
Իրավունքների որևիցե ուղղակի կամ անուղղակի սահմանափակումը կամ,
ընդհակառակը, ռասայական ու ազգային պատկանելիությունից ելնելով՝ քա-
ղաքացիների համար ուղղակի կամ անուղղակի առավելություններ սահմա-
նելը, ինչպես նաև ռասայական ու ազգային բացառիկության կամ ատելության
ու արհամարհանքի ամեն տեսակ քարոզ պատժվում է օրենքով»։

Սերը սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ և ատելությունը դեպի
նրա թշնամիները, իր ժողովրդի հանդեպ հասարակական պարտքի խոր գի-
տակցումը, անշահախնդրությունն ու անձնուրացությունը, հոգատարությունն
ու հարգանքը դեպի մարդը, աշխատասիրությունը, կարգապահությունը, հո-
գատար վերաբերմունքը դեպի սոցիալիստական սեփականությունը, սոցիա-
լիստական իրավագիտակցության այդ կարևորագույն պահանջները ամուր
կերպով մտել են սովետական միլիոնավոր մարդկանց կենցաղի ու վարքա-
գծի մեջ։

Սոցիալիստական իրավագիտակցության հիմնական պահանջներից մեկը
սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքի անշեղ կատարումն է, աշխա-
տավոր լայն մասսաների ակտիվ մասնակցությունը սովետական օրենքների
ու մյուս իրավական ակտերի ստեղծմանն ու իրագործմանը։ Մեր երկրում
պետական իշխանությունը պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորնե-
րին՝ հանձին աշխատավորների դեպուտատների Սովետների։ Մարդկության



պատմության մեջ առաջին անգամ ՍՍՌՄ-ում իրագործվեց իսկապես ընդհա-
նուր, ուղղակի, հավասար ընտրական իրավունք (գաղտնի քվեարկությամբ)։
Դեպուտատներն օժտված են մեծ վստահությամբ, բայց միևնույն ժամա-
նակ նրանք գտնվում են ընտրողների վերահսկողության ներքո և հաշվետու
են նրանց։ Պետական կարևոր հարցեր լուծելիս դեպուտատները ղեկավար-
վում են իրենց քաղաքական ու իրավական համոզմունքներով ու հայացքնե-
րով, իսկ այս վերջիններս հանդիսանում են սովետական ժողովրդի, մեր Կո-
մունիստական պարտիայի համոզմունքներն ու հայացքները։

Սոցիալիստական իրավագիտակցությունը մարդկանց ետ է պահում ըն-
մտածված և ապօրինի գործողություններից ու քայլերից, թելադրում է ան-
շեղորեն կատարել սոցիալիստական պետության ու սովետական քաղաքացի-
ների շահերը պաշտպանող օրենքի պահանջը։ Նա մարդկանց միտքն ու վար-
քագիծը անհրաժեշտ հունի մեջ է դնում։

Սոցիալիստական իրավագիտակցությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի
առաջին իսկ օրերից հանդես եկավ որպես նոր լույս աշխարհ եկած վերնա-
շենքի մի մասը։ Սոցիալիստական ռևոլյուցիան ջարդ ու փշուր արեց հին
բուրժուական վերնաշենքը և նրա հետ միասին ոչնչացրեց նրա բաղկացուցիչ
մասը՝ կալվածատիրական-բուրժուական իրավունքը։

Սովետական իշխանության առաջին իսկ օրերից սովետական սոցիալիս-
տական իրավունքը դարձավ նոր հասարակական հարաբերությունների ամրա-
պնդման, սոցիալիստական իրավագիտակցության, աշխատանքի սոցիալիս-
տական կարգապահության ամրապնդման ու զարգացման, բանվորներին,
գյուղացիներին, աշխատավոր ինտելիգենցիային ցանկալի և ձեռնտու նոր
կարգեր սահմանելու համար մղվող պայքարի հզոր միջոցներից մեկը։ Լինելով
պրոլետարիատի դիկտատուրայի իրականացման միջոցներից մեկը՝ պրոլե-
տարիատի կամքի արտահայտություն, սովետական սոցիալիստական իրա-
վունքը ծառայում է սովետական ժողովրդի թշնամիների ճնշման խնդիրնե-
րին, արտահայտում է աշխատավորության կենսական շահերը, սոցիալիս-
տական և կոմունիստական շինարարության խնդիրները։

Բայց Սովետական պետության զարգացման առաջին գլխավոր ֆազի
ժամանակաշրջանում իրավական գաղափարախոսությունն ամբողջ հասարա-
կության համար միասնական չէր։ Թեև սոցիալիստական ռևոլյուցիայի հաղ-
թանակը արմատական բեկում առաջացրեց շահագործվող դասակարգերի գա-
ղափարախոսության, կենցաղի և տրադիցիաների մեջ, սակայն ռևոլյուցիան
չէր կարող միանգամից, ավտոմատիկ կերպով մարդկանց գիտակցությունը
համապատասխանեցնել նրանց գոյության փոփոխված պայմաններին, որով-
հետև մարդկանց գիտակցության վերափոխումը երկարատև և բարդ պրոցես է։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ պրոլետարիատի դիկտատու-
րայի պայմաններում համոզելու մեթոդը հանդիսանում է ղեկավարության
հիմնական մեթոդ։ Ղեկավարել բանվոր դասակարգի դիկտատուրայի պայ-
մաններում, նշանակում է, ամենից առաջ, համոզել մասսաներին կոմունիս-
տական պարտիայի քաղաքականության ճշմարտացիության մեջ, որն իր
անդրադարձումն է գտնում պետության որոշակի պրակտիկ միջոցառումնե-
րում, այդ թվում՝ սովետական իրավունքի նորմերում։ Իսկ մասսաներին հա-
մոզել՝ նշանակում է նրանց գիտակցությունը բարձրացնել մինչև պարտիայի
գիտակցության մակարդակը, ապահովել մասսաների աջակցությունը, նրանց

պայքարի պատրաստակամությունը պարտիայի քաղաքականության կենսագործման համար։

Բայց պրոլետարիատի դիկտատուրան չի վախենում վճռական և անխնա պետական հարկադրանքից, որովհետև առաջավոր դասակարգը, որն ամենից ավելի է կեղեքվել կապիտալիզմի կողմից, իրավունք ունի իրագործել այդ հարկադրանքը, քանի որ նա այն իրագործում է հանուն ամբողջ աշխատավորության շահերի։

Այդ հարկադրանքն առավել ևս արդարացի է, երբ այն հիմնված է պարտիայի, բանվոր դասակարգի և աշխատավորական մասսաների մեծամասնության վստահության ու աջակցության վրա, երբ այդ հարկադրանքը կիրառվում է փոքրամասնության նկատմամբ, երբ մեծամասնությունը հասկացել է կոմունիստական պարտիայի քաղաքականության ճշմարտացիությունը։

Սոցիալիստական իրավագիտակցությունը, որը ձևավորվել է շահագործողների դեմ պրոլետարիատի մղած պայքարի պայմաններում՝ և հարստացել հասարակական կյանքի զարգացման օրենքերի մասին մարքսիստական-լենինյան ուսմունքով, դարձել է վերնաշենքի քաղաքական-իրավական մասի բաղկացուցիչ տարրերից մեկը և պատվավոր դեր է կատարում Սովետական պետության կյանքում։ Սոցիալիստական իրավագիտակցությունը նպաստում է, որպեսզի բոլոր քաղաքացիները ներգրավվեն պետության կառավարման իրենց պատասխանատու պարտականության անմիջական ու ամենօրյա կատարմանը։

---

# ՄԱՍՍԱՆԵՐԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ՍԱՎՈՅԱՆ

Ամենաբարդ խնդիրները, որոնք առաջադրում են պարտիան ու կառավարությունը, հաջողությամբ են լուծվում այն դեպքում, երբ հասկանալի են աշխատավորներին, և նրանց կենսագործմանը գիտակցաբար մասնակցում են լայն մասսաները։ Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծող մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը սովորեցնում է, որ պետությունը ուժեղ է մասսաների գիտակցությամբ, նա ուժեղ է այն դեպքում, երբ մասսաները գիտեն ամեն ինչ, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչ անում են գիտակցաբար։ Իսկ մասսաների ուժը Կոմունիստական պարտիայի ղեկավարության մեջ է։ Առանց պարտիայի, առանց նրա ղեկավար դերի մասսաները չեն կարող առաջ մղել կոմունիզմի կառուցման գործը։ Պարտիան ընդհանրացնում է մասսաների հարուստ փորձը, հենվելով նրանց վրա և ներգրավելով նրանց ստեղծագործական աշխատանքի մեջ՝ լուծում է մեծ մասշտաբի և պատմական նշանակություն ունեցող խնդիրներ։

Մասսաների ակտիվության բարձրացումը պարտիական կազմակերպություններից պահանջում է սիստեմատիկ աշխատանք կատարել բնակչության բոլոր խավերի շրջանում, որպեսզի նրանք գիտակցեն պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումների անհրաժեշտությունը, համոզվեն, որ դրանք բխում են իրենց շահերից։

Լենինականի պարտիական կազմակերպությունները, ապահովելով մասսաների պարտիական ղեկավարությունը, հաջողությամբ են կատարում իրենց առջև դրված խնդիրները։

Հետևելով երկրի առաջավոր գործարանների օրինակին՝ Լենինականի արդյունաբերության և տրանսպորտի աշխատողները մտնելով Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ՝ 1957 թվականի առաջին կիսամյակի արտադրական պլանների կատարման բնագավառում զգալի հաջողությունների հասան։

Քաղաքի արդյունաբերությունն անցած առաջին կիսամյակի պլանը կատարեց 100,3 տոկոսով, երկրին տալով ավելի քան 1.380.000 ռ. արտապլանային արտադրանք։ Քաղաքի ամենախոշոր արտադրական ձեռնարկությունը՝ Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատն առաջին կիսամյակի իր արտադրական պլանը կատարեց 100,3 տոկոսով և տվեց 298.000 ռուբլու արտապլանային արտադրանք. գուլպա-տրիկոտաժ ֆաբրիկան ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը կատարեց 105,8 տոկոսով, տալով 2.613.000 ռուբլու արտապլանային արտադրանք. մանարան ֆաբրիկան պլանը կատարեց 102,5 տոկոսով, շոգեքարշային դեպոն՝ 156,2 տոկոսով, վա-

նային դեպոն՝ 120,1 տոկոսով, կարի ֆաբրիկան՝ 102,7 տոկոսով, կոշիկի
ֆաբրիկան՝ 108,5 տոկոսով և այլն։

Արդյունաբերական ու շինարարական ձեռնարկությունների ղեկավարման
ու կառավարման նոր ձևերն ավելի նպաստավոր պայմաններ ստեղծեցին
պետական առաջադրանքի կատարման համար և բարձրացրին պարտիական
ու տնտեսական ղեկավար աշխատողների անձնական պատասխանատվու-
թյունը։ Օրինակ՝ կարի ֆաբրիկայի տնտեսական և պարտիական ղեկավա-
րությունը (դիրեկտոր ընկ. Օրլով, պարտկազմակերպության բյուրոյի քար-
տուղար ընկ. Վ. Մուսիկյան) կարողացան ֆաբրիկայի բոլոր օղակներում
բարձրացնել ղեկավար աշխատողների պատասխանատվությունը և բանվոր-
ների արտադրական ակտիվությունը։ Հուլիսի 20-ից առաջավոր բանվորների
առաջարկությամբ և պարտբյուրոյի նախաձեռնությամբ կոլեկտիվն անցել է
7-ժամյա աշխատանքային օրվա և տալիս է ավելի շատ արտադրանք, քան
առաջ։ Ֆաբրիկան 8-ժամյա աշխատանքային օրում տալիս էր 1744 կտոր
արտադրանք, իսկ 7-ժամյա աշխատանքային օրվա անցնելուց հետո օրական
տալիս է 1870 կտոր արտադրանք կամ օրական արտադրանքն ավելացել է 7
տոկոսով։ 7-ժամյա աշխատանքային օրվա անցնելուց հետո ավելացել է նաև
գործավարձով աշխատող բանվորների աշխատավարձը։

Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի օրինակը
ցույց է տալիս, որ պետական առաջադրանքների կատարման համար չափա-
զանց կարևոր նշանակություն ունի մասսաների ճիշտ ղեկավարությունը, քա-
ղաքական-մասսայական աշխատանքի լավ կազմակերպումը, մասսաներին
համոզելը։ 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, կոմբինատի
համախառն արտադրանքի պլանն ավելացավ 6 միլիոն ռուբլով, իսկ պատ-
րաստի գործվածքի արտադրությանը՝ 12,6 տոկոսով։ Արտադրանքի թողարկ-
ման աճի այդպիսի բարձր տեմպն ապահովելու համար անհրաժեշտ էր մոբի-
լիզացնել կոլեկտիվին, յուրաքանչյուր աշխատողի գիտակցությանը հասցնել
առաջադրած պլանների ռեալությունը և գործի դնել չօգտագործված ռեզերվ-
ները։ Կոմբինատի պարտիական կոմիտեն, սկզբնական պարտիական կազ-
մակերպությունները ագիտացիոն-մասսայական աշխատանքի միջոցով բարձ-
րացրին տեքստիլագործների ակտիվությունն ու նախաձեռնությունը։

Գործվածքային ֆաբրիկայի 4-րդ ցեխի ենթավարպետներ Ռ. Գևորգյա-
նը, Վ. Մուրադյանը և Ս. Կարապետյանը առաջարկեցին մրցություն սկսել
բազմահաստոցային շարժումը մասսայական դարձնելու համար։ Նրանց
կոմպլեկտների բոլոր ջուլհակները սկսեցին սպասարկել 16-ական հաստոց,
սահմանված 10-ի փոխարեն։ Դա հնարավորություն տվեց անցած 8 ամսվա
ընթացքում պլանից դուրս տալ մոտ 100 հազար մետր գործվածք։

Ֆաբրիկայի պարտբյուրոն չբավարարվեց բազմահաստոցային շարժման
մասին գովասանական հայտարարություններ անելով, այլ ենթավարպետների,
ջուլհակների, օժանդակ բանվորների գիտակցությանը հասցրեց աշխատանքի
այդ առաջավոր ձևի առավելությունները։ Այժմ ֆաբրիկայում աշխատող
ջուլհակների 70 տոկոսը բազմահաստոցային է։

Կոմբինատի նորարարների նախաձեռնությամբ գործվածքային և մանա-
րան ֆաբրիկաներում կատարվեց սարքավորումների վերադասավորում։ Այդ
միջոցառումը հնարավորություն տվեց միևնույն արտադրական տարածու-
թյուններում լրացուցիչ կարգով տեղադրելու տարբեր տիպի 250 նոր մեքենա



և տեխնիկական կատարելագործման ենթարկել 150-ից ավելի մեքենաներ։
Կոլեկտիվի անդամների ստեղծագործական ակտիվության մասին է խոսում
նաև այն փաստը, որ 250-ից ավելի ռացիոնալիզատորական առաջարկու-
թյունների հեղինակ են ոչ միայն կոմունիստ-ինժեներներ Ն. Ավետիսյանը,
Ա. Սպորկինը, Հ. Դավթյանը, ենթավարպետներ Ս. Մուրադյանը, Ե. Կիրա-
կոսյանը, այլև անպարտիական ենթավարպետներ Ռ. Գևորգյանը, Ս. Ղազար-
յանը, Գ. Տոնոյանը և շատ ուրիշներ։

Կոմբինատի պարտիական կոմիտեն ելնելով Մոսկվայի և Լենինգրադի
պարտիական կազմակերպությունների փորձից, նախաձեռնեց տնտեսական-
տեխնիկական կոնֆերանսներ անցկացնելու գործը։ Առաջին կոնֆերանսն
անցկացվեց ներկման ֆաբրիկայում։ Կոնֆերանսը հաջող անցկացնելու հա-
մար ստեղծվեցին ենթահանձնաժողովներ, որոնք մանրամասն ուսումնասի-
րեցին արտադրանքի որակի, հումքի, գոլորշու, խիմիկատների ռացիոնալ
օգտագործման և աշխատանքի ճիշտ կազմակերպման հարցերը։ Կոնֆերանսը
անցկացվեց հուլիսին։ Արդյունքը եղավ այն, որ կոնֆերանսը ընդունեց 120
ռացիոնալիզատորական առաջարկություն և այն մտցրեց կոմբինատի ար-
տադրական տեխնիկական սովետի քննարկմանը։ Այժմ այդ առաջարկու-
թյունների կեսից ավելին ընդունված և ներդրված են արտադրության մեջ։
Այդ կոնֆերանսի փորձը ցույց տվեց, որ նա զգալի չափով բարձրացնում է
բանվորների արտադրական ակտիվությունը։ Պարտիական կոմիտեն նախա-
պատրաստվում է այդպիսի կոնֆերանսներ անցկացնել նաև կոմբինատի
մյուս ֆաբրիկաներում։

Հենվելով առաջավոր փորձի վրա, մասսաներին դաստիարակելով կյան-
քից վերցրած կոնկրետ օրինակներով՝ պարտիական կազմակերպությունները
հաջողությամբ լուծում են տնտեսական շինարարության այնպիսի կարևոր
հարցեր, ինչպիսիք են աշխատանքի արտադրողականության բարձրացումը,
թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, որակի բարելավումը։

Քաղաքի պարտիական կազմակերպությունները, առաջավոր փորձի պրո-
պագանդումը համարելով իրենց հարազատ գործը, ջերմորեն պաշտպանում
և տարածում են արժեքավոր նախաձեռնությունները։

Շոգեքարշային դեպոյում շատ մեքենավարներ վառելանյութի գերածախս
էին տալիս։ Հրահանգիչ-մեքենավար Անդրանիկ Խաչատրյանն իր ղեկավարած
մեքենավարական բրիգադաներում շոգեքարշերի տեխնիկական վիճակի հա-
սարակական ստուգում անցկացրեց։ Պարզվեց, որ առանձին շոգեքարշեր
գտնվում են տեխնիկապես վատ վիճակում, բացակայում է հոգատար խնամ-
քը հիմնական մասերի նկատմամբ։ Դեպոյի պարտբյուրոն հավանություն
տվեց առաջավոր մեքենավարների նախաձեռնությանը և նրանց օրինակով
տեխնիկական ստուգման ենթարկվեցին բոլոր շոգեքարշերը։ Հայտաբերված
թերությունները վերացնելու համար ձեռնարկվեցին մի շարք միջոցառումներ
և հսկողություն սահմանվեց նրանց կատարման վրա։ Արդյունքը եղավ այն,
որ միայն վերջին երեք ամսում դեպոյի մեքենավարները տնտեսեցին 145
տոննա վառելանյութ։

Մեկ ուրիշ ուսանելի օրինակ. այս տարվա սկզբներին ավագ մեքենա-
վար, կոմունիստ Խ. Ավոյանը ծանրաքարշ գնացքը վերանորոգեց սեփական
ուժերով, որը տվեց լավ արդյունք։ Նրա շոգեքարշը կատարեց 120 հազար
միջճախարակումային վազք, սահմանված 70 հազարի փոխարեն, ամեն ամիս

տնտեսելով 10—11 տոննա վառելանյութ և անցած 8 ամսվա ընթացքում
պլանից ավելի փոխադրելով 8000 տոննա բեռ։
Դեպոյի պարտբյուրոն պաշտպանեց ավագ մեքենավարի նախաձեռնու-
Թյունը։ Նա մասնագետների միջոցով ուսումնասիրեց նրա փորձը։ Ուսումնա-
սիրությունը ցույց տվեց, որ Ավոյանը թույլ չի տվել շոգեքարշի կրկնակի
նորոգում, գնացքների ուշացման դեպքեր, շոգեքարշը պահել է տեխնիկական
սարքին վիճակում, ապահովելով նրա անխափան աշխատանքը։ Այս ուսում-
նասիրությունից հետո անցկացվեց ցեխի պարտիական բյուրոյի ընդլայնված
նիստ, որտեղ քննության առնվեց ավագ մեքենավար Ավոյանի փորձի փոխա-
նակման հարցը։ Պարտիական բյուրոն կոնկրետ միջոցառումներ նշեց Ավո-
յանի փորձը բոլոր մեքենավարների սեփականությունը դարձնելու համար։
Քաղաքային «Բանվոր» թերթում հոդվածներ տպագրվեցին մեքենավար Ավո-
յանի նախաձեռնության մասին։ Նրա փորձը մասսայականացնելու համար
օգտագործվեցին սաորին մամուլը, արտադրական խորհրդակցությունները,
ցեխային ժողովները, ագիտատորների զրույցները։ Եվ շատ շուտով առաջա-
վոր փորձը դարձավ լայն մասսաների սեփականությունը։ Ավոյանի փորձով
այժմ աշխատում են երիտասարդ մեքենավարներ Զ. Հարությունյանը, Ս. Խա-
չատրյանը, Գ. Մաթևոսյանը և ուրիշներ։ Հետևելով առաջավոր մեքենավար
Ավոյանի փորձին, նրանք ամեն ամիս գերակատարում են փոխադրման առա-
ջադրանքները։
Ուսանելի օրինակի ուժը արտահայտվեց նրանում, որ օրավուր սկսեցին
խտանալ ծանրաքարշայինների շարքերը, արագացավ շոգեքարշերի շրջա-
պտույտը, ավելացան դեպոյի սոցիալիստական կուտակումները։ Շոգեքար-
շայինները 8 ամսվա ընթացքում պլանից ավելի տեղափոխեցին 195.000
տոննա բեռ, տնտեսելով 800 տոննա վառելանյութ և 662.500 ռուբլի։
Աշխատանքի նկատմամբ բարեխիղճ վերաբերմունքի, Հայրենիքի նկատ-
մամբ պարտքն ազնվորեն կատարելու ոգով դաստիարակելու գործում չա-
փազանց մեծ է ագիտացիոն զրույցի ներգործությունը մասսաների վրա։
Մինչև ՍՄԿԿ XX համագումարն արդյունաբերական շատ ձեռնարկու-
թյուններում կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը կրում էր
վերացական բնույթ, զրույցները չէին կապվում տնտեսական շինարարու-
թյան, ֆաբրիկայի, գործարանի, տեղամասի առջև դրված կոնկրետ խնդիր-
ների, առաջավորներին հուզող հարցերի հետ, կրում էր կամպանիոն բնույթ։
Լենինականի քաղաքային կոմիտեն լրջորեն զբաղվեց պրոպագանդիստ-
ների, ագիտատորների կազմի բարելավմամբ, այն համալրեց արտադրության
առաջավորների, ինտելիգենցիայի, ինժեներա-տեխնիկական աշխատողների
ներկայացուցիչներով։ Այժմ քաղաքի արդյունաբերական ձեռնարկություննե-
րում, շինարարություններում և բնակչության շրջանում ագիտացիոն-մասսա-
յական աշխատանք են կատարում երկու հազարից ավելի ագիտատորներ,
այդ թվում դասախոսներ, ուսուցիչներ, բժիշկներ, արտադրության շարքային
աշխատողներ։
Զրույցների թեման դարձնելով աշխատավորներին հուզող ինչպես դրա-
կան, այնպես էլ բացասական փաստերը, ագիտատորները բարձրացնում են
մասսաների ակտիվությունը, դաստիարակում նրանց սովետական հայրենա-
սիրության և ժողովուրդների բարեկամության ոգով։ Խրախուսելով ու բարձ-



րացնելով դրականը, նորն ու առաջավորը, ագիտատորները միաժամանակ
քննադատում և մերկացնում են նկատած թերությունները։
Պարտիական աշխատողը քաղաքական ղեկավար է։ Նա պարտավոր է իր
գործունեության ընթացքում զբաղվել ամենաբազմազան հարցերով, մոտ
կանգնել մասսաներին, գիտենալ նրանց պահանջները, լուծում տալ նրանց
կողմից բարձրացված հարցերին։
Պարտիական ղեկավարի քաղաքական գործունեության մեջ կարևոր տեղ
են գրավում անձնական ելույթները աշխատավորների առջև։ Լավ նախա-
պատրաստված և բովանդակալի ելույթները բարձրացնում են մասսաների
քաղաքական ակտիվությունը, նրանց ուժերը մոբիլիզացնում են տնտեսական,
կուլտուրական շինարարության խնդիրները կատարելու համար։ Մյուս կող-
մից, ղեկավար աշխատողը հանդես գալով կոլեկտիվի և աշխատավորության
ժողովներում, կարողանում է մոտիկից ծանոթանալ բնակչության պահանջ-
ներին ու կարիքներին, լսել նրանց կողմից կատարվող քննադատական դի-
տողությունները պարտիական, սովետական կազմակերպությունների հաս-
ցեին, զգալ, թե որ հարցերն են լուծման կարոտ։
ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեի և քաղաքային Սովետի ղեկա-
վար աշխատողները ՀԿՊ Կենտկոմի 3-րդ պլենումից հետո սկսել են ավելի
հաճախակի հանդես գալ բանվորական կոլեկտիվներում և թաղային բնակ-
չության ժողովներում։ Այդ ելույթները շատ բանով օգնում են մեզ ամրա-
պնդելու կապը մասսաների հետ, նրանց տեղյակ պահելու մեր մեծ Հայրենի-
քում կատարվող շինարարական աշխատանքներին, հաղորդակից դարձնելու
միջազգային կյանքի նորություններին։ Ութ ամսվա ընթացքում քաղաքի ղե-
կավար աշխատողները բնակչության համար կարդացել են 123 դասախոսու-
թյուն և զեկուցում։ Քաղաքական զեկուցումներով հանդես են եկել քաղաքա-
յին կոմիտեի քարտուղարներ Գ. Հարությունյանը, Հ. Պողոսյանը, քաղսովետի
գործկոմի նախագահ Լ. Քոչարյանը և մի շարք ղեկավար աշխատողներ։
Քաղկոմի քարտուղար ընկ. Գ. Հարությունյանի, քաղաքային Սովետի
գործկոմի նախագահ ընկ. Լ. Քոչարյանի և մյուս ղեկավար ընկերների
զեկուցումների ժամանակ աշխատավորները շատ արժեքավոր հարցեր են
բարձրացրել քաղաքի բարեկարգման, կուլտուր-լուսավորական հիմնարկների
ցանցի ընդարձակման, շինարարական կազմակերպությունների աշխատանքի
բարելավման վերաբերյալ։ Այդ հարցերը ժամանակին քննարկման առարկա
են դարձվել քաղաքային կոմիտեի բյուրոյում, քաղաքային Սովետի գործադիր
կոմիտեի նիստերում և քաղսովետի սեսիաներում։
Քաղաքային կոմիտեն հաշվի առնելով աշխատավորների բարձրացրած
հարցերի կարևորությունը, որոշեց ընդհանրացնել եղած արժեքավոր առա-
ջարկները և միջոցառումներ մշակել դրանք կիրառելու համար։
Աշխատավորների քննադատական դիտողություններից ելնելով ուսում-
նասիրվել է չրմուղ-կոյուղի տրեստի, բարեկարգման գրասենյակի, կուլտուր-
լուսավորական հիմնարկների հարցը և վերացվել են նրանց աշխատանքում
տեղ գտած թերությունները։
Քաղսովետի գործադիր կոմիտեի նախագահ ընկ. Լ. Քոչարյանի զեկուց-
ման ժամանակ (որը կարդացվեց մսի-պահածոների կոմբինատի բանվորա-
կան ակումբում) աշխատավորները բարձրացրին գրադրան-ընթերցարանների
ցանցի ընդարձակման հարցը։ Ուսումնասիրությունից հետո գործադիր կոմի-

տեն միջոցներ առանձնացրեց բանվորական ավաններում երեք նոր գրադարան-ընթերցարան բաց անելու համար։

Դասախոսությունը, զեկուցումը իր նպատակին է ծառայում այն ժամանակ, երբ կարդացվում է հասկանալի լեզվով, կապվում է կոնկրետ խնդիրների հետ։ Այդ նպատակով կիրառվում է նախօրոք տեղերում լինելու, ձեռնարկության ղեկավար աշխատողների, շարքային բանվորների հետ զրույց անելու պրակտիկան։ Այսպես, օրինակ, քաղսովետի պլանային հանձնաժողովի նախագահ Ս. Ղազազյանը հաճախ է դասախոսություն կարդում «Տընտեսական հաշվառքը և նրա առավելությունները» թեմայով։ Դասախոսության տեքստում բազմաթիվ փաստեր կան քաղաքի խոշոր արդյունաբերական ձեռնարկություններից։ Նախքան զեկուցմամբ հանդես գալը ընկ. Ղազազյանը եղել է տեքստիլ կոմբինատում, գուլպա-տրիկոտաժ ֆաբրիկայում, տեղական արդյունաբերության ձեռնարկություններում, ուսումնասիրել է տարեկան հաշվետվության բալանսը։ Տեքստիլ կոմբինատի ֆաբրիկաներում եղած ժամանակ զեկուցողը պարզել է, թե որտեղից են առաջացել բավական մեծ գումար կազմող կորուստները։ Կամ զեկուցման տեքստում կոնկրետ օրինակներով ցույց է տրված, թե տեղական արդյունաբերության ձեռնարկություններում ինչպիսի վնասներ է տալիս հաշվառման և հաշվետվության գործի վատ կազմակերպումը։

Ոչ բոլոր ելույթներն են հավասարապես հետաքրքրում աշխատավորներին։ Որպեսզի պարտիական, տնտեսական աշխատողների ելույթները նպաստեն մասսաների ակտիվության բարձրացմանը, պետք է կարողանալ հաջող և հուզող թեմա ընտրել։ Իսկ թեման կարելի է ճիշտ ընտրել միայն այն դեպքում, երբ ամուր կապված ես մասսաների հետ, գիտես նրանց հետաքրքրող հարցերը։

Աշխատավորական լայն մասսաները մեծ հետաքրքրություն են հանդես բերում միջազգային դրության, արդյունաբերության ու շինարարության կենսական հարցերի շուրջը։ Քաղաքային կոմիտեի դասախոսական խմբի անդամները զեկուցումներով և զրույցներով հանդես եկան Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում, գուլպա-տրիկոտաժ, կարի ֆաբրիկաներում, մեխանիկական, հեծանիվի գործարաններում և մյուս ձեռնարկություններում։

Մասսաների դաստիարակության համար չափազանց կարևոր նշանակություն ունեն պարտիական աշխատողների զրույցները առանձին կամ մի խումբ բանվորների և բնակիչների հետ։ Խոսելով անհատական զրույցների մասին՝ պետք է նշել, որ քաղաքային կոմիտեի և քաղաքային Սովետի ղեկավար աշխատողները առանձնահատուկ ուշադրություն են դարձնում աշխատավորների ընդունելության գործին։ Մի ժամանակ որոշ ղեկավարներ սովորություն էին դարձրել քաղաքացիներին պատասխանել՝ «Այդ հարցով ես չեմ զբաղվում, դիմեցեք համապատասխան օրգաններին»։ Պարտիական աշխատողը պարտավոր է պատասխան տալ քաղաքացուն հետաքրքրող հարցերին։ Ղեկավարի անձնական օրինակը, զրույցի ձևը մասսաների համար դաստիարակչական նշանակություն ունի։

Անհատական զրույցների, առանձին բանվորների հետ ունեցած հանդիպումների միջոցով պարզվեցին քաղաքի առանձին ձեռնարկությունների և պարտիական կազմակերպությունների աշխատանքում տեղ գտած մի շարք



լուրջ թերություններ, որոնք վերացվեցին։ Հենց այդպիսի անհատական զրույցները մեծապես նպաստեցին ժամանակին բացահայտելու բնակչության սպասարկման, քաղաքի բարեկարգման, բնակարանային շինարարության գործում եղած թերությունները։ Այդպիսի զրույցների ժամանակ քաղաքացիները շատ արժեքավոր դիտողություններ են անում պարտիական, տնտեսական այն ղեկավարների հասցեին, որոնք իրենց աշխատանքում կիրառում են ավելի շատ վարչարարական ձևեր, քան համոզելու և դաստիարակելու մեթոդը։ Այդպիսի ոճ նկատվում էր մանարան ֆաբրիկայի դիրեկտոր ընկ. Գ. Հովսեփյանի մոտ։ Հարկ եղավ քաղկոմի միջամտությունը, որից հետո դրությունը փոխվեց։ Այժմ ընկ. Հովսեփյանն ավելի տակտով է լուծում հարցերը։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության կարևոր միջոցառումներից է տպագիր օրգանը։

Քաղկոմի և քաղաքային Սովետի ղեկավար աշխատողները «Բանվոր» թերթում հաճախ հանդես են գալիս հոդվածներով, որոնք դաստիարակչական նշանակություն ունեն մասսաների համար։

Պատմելով իրենց արտադրական նվաճումների և առաջավոր փորձի մասին՝ արտադրության նորարարներն իրենց օրինակով ոգևորում են շատերին։ Քաղաքի ո՛ր արդյունաբերական ձեռնարկությունն ուզում եք մտեք, ամենուրեք ջերմ խոսքեր կլսեք անվանի մանածագործուհի Ա. Առաքելյանի, ջուլհակուհի Ա. Պետրոսյանի, որմնադիր Հ. Կնյազյանի, փականագործ Ա. Մուրադյանի, վարպետ Ա. Մկրտչյանի, ենթավարպետ Ե. Կիրակոսյանի և մեքենավար Կ. Սաֆարյանի մասին։ Այդ նշանավոր մարդիկ համաժողովրդական ճանաչման են արժանացել մամուլի միջոցով։

Տպագիր թերթը առանձնապես մեծ դեր է կատարում պարտիայի ու կառավարության որոշումները բնակչության լայն խավերի սեփականությունը դարձնելու ասպարեզում։ Բարձր գնահատելով տպագիր խոսքի ուժը, պարտիական, տնտեսական աշխատողները ելույթներ են ունենում թերթերում, բարձրացնելով և պատասխան տալով բնակչությանը հուզող շատ հարցերին։ Այդ տեսակետից արժեքավոր են տեքստիլ կոմբինատի պարտկոմիտեի քարտուղար Ա. Կոստանյանի, շոգեքարշային դեպոյի պարտբյուրոյի քարտուղար Ս. Ավետիսյանի, կարի ֆաբրիկայի դիրեկտոր Մ. Օրլովի, Քաղշինտրեստի կառավարիչ Գ. Ժամկոչյանի և ուրիշների հոդվածները։

ՍՄԿԿ XX համագումարի որոշումներն անշեղորեն կենսագործելու, վեցերորդ հնգամյակում նորանոր հաջողությունների հասնելու համար արդյունաբերության, տրանսպորտի աշխատողները ստանձնում են սոցիալիստական պարտավորություններ, հանդես են բերում հայրենասիրական արժեքավոր նախաձեռնություն։ Ճիշտ կազմակերպված և գործարար մրցությունը հանդիսանում է արտադրության հզոր վերելքի, աշխատավորների ակտիվության բարձրացման, նրանց ստեղծագործական ունակությունների ծավալման կարևոր միջոց։

Անդրկովկասյան ռեսպուբլիկաների երեք քաղաքների՝ Լենինականի, Կիրովաբադի և Քութաիսի աշխատավորների սոցիալիստական մրցությունը խոշոր դեր է խաղում պարտիայի ու կառավարության կողմից առաջադրված խնդիրների կատարման գործում։ Լենինական քաղաքի արդյունաբերությունը 1956 թվականի առաջադրանքը կատարեց ժամկետից շուտ, պլանից դուրս

տալով մոտ 16 միլիոն ռուբլու արտադրանք։ Միայն մեկ տարում արտադրության մեջ արմատավորվեց մոտ 600 գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկություն։ Լուրջ հաջողություններ ձեռք բերվեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման, ասորտիմենտի ընդարձակման, առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման ուղղությամբ։ Այդ հաջողություններին մեծ չափով նպաստեց բարեկամական մրցությունը։

Պատգամավորների փոխադարձ այցելությունները, մրցության արդյունքների ամփոփումը, առաջավոր մարդկանց նամակագրական կապը դարձել են մասսաներին եղբայրական համագործակցության ոգով դաստիարակելու, պետական առաջադրանքները հաջողությամբ կատարելու հզոր միջոց։

Խոսելով մասսաների պարտիական ղեկավարության մասին՝ չի կարելի չնշել նաև այդ գործում եղած թերությունները։ Քաղաքի առանձին ձեռնարկությունների ետ մնալը, պետական առաջադրանքների սիստեմատիկ թերակատարումը վկայում է, որ որոշ պարտիական կազմակերպություններ դեռևս մոտիկից չեն զբաղվում աշխատավորների ակտիվության բարձրացման, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների ծավալման հարցերով։ Մանճակալի գործարանում, Կահույքի ֆաբրիկայում ձևական մոտեցում են ցույց տալիս սոցիալիստական մրցությանը։ Առանձին տնտեսվարներ դաստիարակչական աշխատանքը փոխարինում են վարչարարությամբ, չեն ունկնդրում մասսաներին։ Աշխատանքի այդպիսի մեթոդներ են նկատվում «Կարմիր Նոյեմբեր» կահույքի ֆաբրիկայի դիրեկտոր Մ. Կոստանյանի, ինքնուրույն կոնստրուկտորային բյուրոյի պետ Հ. Սերոբյանի և այլ տնտեսական ղեկավարների մոտ։

Լուրջ թերություն պետք է համարել նաև, որ քաղաքական-մասսայական աշխատանքների այն թափը, որը խիստ բարձրանում է քաղաքական կամպանիաների շրջանում, այնուհետև մոռացության է տրվում առանձին պարտիական կազմակերպությունների կողմից։ Այդպես է դրությունը հեծանիվի գործարանի, մսի-պահածոների կոմբինատի, մանճակալի գործարանի և կարամելի-հրուշակեղենի ֆաբրիկայի պարտիական կազմակերպություններում։

Մասսաների շրջանում տարվող բացատրական և դաստիարակչական աշխատանքի դերը առավել ևս կարևոր նշանակություն է ստանում այժմ, երբ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մի շարք լուրջ միջոցառումներ են ձեռնարկում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքն ապահովելու ուղղությամբ։ Ներկայումս պարտիական աշխատողի համար գործունեության մեծ հնարավորություններ են ստեղծվում։ Խնդիրն այն է, որ պարտիական աշխատողները սիստեմատիկաբար կատարելագործեն իրենց աշխատանքի մեթոդները, այն բարձրացնեն նոր խնդիրների մակարդակին։

Այդ պահանջը հաջողությամբ կկատարվի այն դեպքում, երբ պարտիական աշխատողները կհենվեն լայն մասսաների վրա, ուղղություն կտան նրանց ակտիվությանն ու նախաձեռնությանը, ուշադրությամբ կլսեն նրանց առաջարկություններն ու դիտողությունները, կապահովեն նրանց իրագործումը։

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ*

Ա. ՄԱՐՈՒԽՅԱՆ, Ս. ԽՐԻՄԼՅԱՆ, Ա. ԵՐԻՑՅԱՆ, Օ. ԿԱՐՃԻԿՅԱՆ

Հաշվարկային ժամկետում, Արարատյան հարթավայրի հետ մեկտեղ, խաղողագործության և պտղաբուծության կարևորագույն շրջան է դառնալու Արարատյան հովտի նախալեռնային գոտին։ Այդ գոտու տեսակարար կշիռը խաղողի արտադրության մեջ կազմելու է 45 տոկոս և պտուղների արտադրության մեջ՝ 35 տոկոս։ Արարատյան հարթավայրը և նախալեռնային գոտին միասին տալու են ռեսպուբլիկայի խաղողի արտադրանքի ավելի քան 91 տոկոսը և պտուղների արտադրանքի մոտ 60 տոկոսը։

Խիստ աճելու է խաղողա-պտղաբուծական սովետական տնտեսությունների դերը։ Ներկայումս դրանց թիվը ռեսպուբլիկայում հասնում է 21-ի, որոնց այգիների ընդհանուր տարածությունը կազմում է մոտ 6 հազար հեկտար։ Հաշվարկային ժամանակաշրջանում գոյություն ունեցող սովետական տնտեսությունների ընդլայնման հետ մեկտեղ նախատեսվում է կազմակերպել 44 նոր խաղողա-պտղաբուծական տնտեսություն՝ ավելի քան 30 հազար հեկտար ընդհանուր այգետարածությամբ, դրանցից՝ Արարատյան հարթավայրում 10 սովետական տնտեսություն, Արարատյան հովտի նախալեռնային գոտում՝ 32 և հյուսիս-արևելյան անտառային գոտում՝ 2 սովետական տնտեսություն։

Մեքենայացման աճը, վնասատուների դեմ պատշաճ պայքարի կազմակերպումը, հանքային և օրգանական պարարտանյութերի ռացիոնալ օգտագործումը, ամառային ջրով ապահովված լինելու շնորհիվ այգիները ժամանակին և լիարժեք ջրելը՝ այս բոլորը հնարավորություն կտան միջին հաշվով հեկտարից ստանալու 130 ցենտներ խաղող և 100 ցենտներ պտուղ։

Խաղողի համախառն բերքը 1960 թվականին ավելանալու է 2 անգամ, 1970 թվականին՝ 7,5 անգամ, իսկ եթե հաշվի առնելու լինենք 1970 թվականից հետո տնկված ամբողջ տարածության պտղաբերումը, ապա այն ավելանալու է մոտավորապես 13 անգամ։ Պտուղների համախառն բերքը համապատասխանորեն ավելանալու է 1960 թվականին՝ 4 անգամ, 1970 թվականին՝ 9,5 անգամ և 1970 թվականից հետո՝ 20 անգամ։

Արդեն 1960 թվականին լրիվ բավարարվելու է բնակչության խաղողի պահանջը։ Բավարարվելու է նաև գինեգործական տրեստների պահանջը, որոնք իրենց արտադրական կարողությամբ, առանձին արտադրական միավորների զուգընթաց աշխատանքի դեպքում, կկարողանան վերամշակել ավելի քան 80

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով»-ի № 9-ում։

*հազար տոննա խաղող, այսինքն 2 անգամ շատ, քան հինգերորդ հնգամյակի վերջին, և տալ 3.500 հազար դեկալիտր գինի և 350 հազար դեկալիտր կոնյակ: Մինչև 1960 թվականը գրեթե կրկնապատկվելու է պտղի պահածոների արտադրությունը: Խիստ կերպով աճելու է թարմ մրգի արտադրությունը՝ քաղաքային բնակչության պահանջմունքը բավարարելու համար:*

*Ինչպես գինու-կոնյակի արտադրությունը, այնպես էլ մրգի և բանջարային պահածոների արտադրությունը աճման առանձնապես մեծ հեռանկարներ ունեն հատկապես 1960 թվականից հետո ընկնող ժամանակաշրջանում: Թարմ մրգի ասպարեզում բնակչության պահանջները բավարարելուց և զգալի քանակությամբ խաղող ու պտուղներ արտահանելուց բացի, 1970 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, մոտավորապես 5—6 անգամ աճելու է գինու-կոնյակի և մրգի պահածոների արտադրությունը:*

***

*Ռեսպուբլիկայում այգեգործության մեծ չափով զարգացումը սահմանափակում է վարելահողերի ընդարձակումը: Հաշվարկային ժամանակամիջոցում վարելահողերի տարածությունն աճելու է ընդամենը 11 տոկոսով: Սակայն դաշտավարության կառուցվածքում տեղի են ունենում մի շարք փոփոխություններ, որոնք կապված են առաջին հերթին անասնաբուծության կերի բազայի զարգացման հետ:*

*Ներկա տնտեսության ընդհանուր ցանքատարածության մեջ հացահատիկային կուլտուրաների ցանքերը կազմում են 65 տոկ., շարահերկ կուլտուրաներինը՝ 18 տոկ. (այդ թվում՝ տեխնիկական կուլտուրաներինը՝ 7 տոկ.) և բազմամյա խոտաբույսերինը՝ 17 տոկ.: Հաշվարկային ժամանակաշրջանում հացահատիկային կուլտուրաների (առանց եգիպտացորենի) տեսակարար կշիռը իջնելու է և կկազմի 49 տոկ., աճելու է շարահերկ կուլտուրաների տեսակարար կշիռը, որը հասնելու է 23 տոկ. և հատկապես խոտաբույսերինը՝ 28 տոկ.: Հաշվարկային ժամկետին կերային կուլտուրաների տարածությունը, ներառյալ հատիկային կերը, կզբաղեցնի ամբողջ ցանքատարածության կեսից ավելին:*

*Տեխնիկական կուլտուրաներից որոշ չափով ընդարձակվելու է ծխախոտի ցանքատարածությունը: Շաքարի ճակնդեղի պլանտացիաները մնալու են նույն մակարդակի վրա: Փոքր ինչ կրճատվելու է բամբակի ցանքատարածությունը, որը կազմելու է 13 հազար հեկտար: Դա բացատրվում է մի շարք պատճառներով: Նախ, ոռոգվող հողերը ընդարձակվելու են գլխավորապես այն գոտիներում, որտեղ բամբակ չի կարող մշակվել: Երկրորդ, հետզհետե Երևանի քաղաքամերձ գոտու կոլտնտեսություններից հանվում են բամբակի ցանքերը, նկատի ունենալով այն, որ այդ կոլտնտեսություններում վարկ է տրվելու քաղաքամերձ բանջարաբուծությանը և կաթնաանասնաբուծությանը: Երրորդ, Արարատյան հարթավայրում գյուղատնտեսությունը ռացիոնալ ձևով զարգացնելու համար անհրաժեշտ է այստեղ մտցնել ճիշտ ցանքաշրջանառություններ, համապատասխանող ցածրադիր գոտու բազմաճյուղ տնտեսության պահանջներին:*

*Ծխախոտը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկն է և նրա արտադրությունը որոշում է Հայկական ՍՍՌ-ի միութենական մասնագիտացումը: Ծխախոտի ցանքատարածության հետագա աճ է նախատեսվում 12 տոկոսով: Նրա արտադրության մեքենայացման ոչ միայն ներկա մակարդակի պայմաններում, այլև հետագայում էլ, նկատի ունենալով այդ կուլտուրայի բարձր աշխատատարությունը, ինչպես նաև այն, որ ծխախոտը բավականաչափ նպաստավոր կերպով չի զուգակցվում որոշ գյուղատնտեսական գոտիների հիմնական մասնագիտացման հետ, հնարավորություն չկա ավելի մեծ չափով ընդարձակելու ծխախոտի ցանքատարածությունը: Ծխախոտի պլանտացիաների նախատեսվող փոքր աճը տեղի է ունենալու նոր ոռոգվող հողերի վրա կազմակերպվող երկու ծխախոտագործական սովետական տնտեսությունների հաշվին:*



*Ճիշտ ցանքաշրջանառությունների արմատավորումը և անասնաբուծությունը կերով ապահովելու անհրաժեշտությունը հանգեցնում են, մեկ կողմից, առանձին գոտիներում հացահատիկային կուլտուրաների ցանքերի որոշ կրճատման և մյուս կողմից՝ հենց հացահատիկային կուլտուրաների կառուցվածքի փոփոխման, ֆուրաժային հացահատիկի ավելացման իմաստով, հատկապես եգիպտացորենի հաշվին:*

*Ռեսպուբլիկայի հացահատիկային տնտեսության աճը կապված է բերքատվության բարձրացման հետ, որը դեռևս ցածր է, չնայած այն իրական հնարավորություններին, որ կան բարձր բերք ստանալու համար, եթե կիրառվեն ագրոտեխնիկայի հիմնական պահանջները:*

*Հեռանկարային հաշվարկներով բերքատվությունն ընդունված է 1960 թվականին 13 ցենտներ հեկտարից և 1970 թվականին՝ 18 ցենտներ, համապատասխանորեն դիֆերենցնելով՝ ջրովի հողերում 30 և անջրդի հողերում՝ 14 ցենտների:*

*Բերքատվության հիշյալ նորմաների դեպքում բավականաչափ բարելավվելու է պարենային հացահատիկի և ֆուրաժային հացահատիկի պահանջի ծածկումը՝ սեփական արտադրությամբ: Արդի տնտեսությունում հացահատիկի և հացահատիկային ֆուրաժի դեֆիցիտը միասին վերցրած կազմում է պահանջվող ամբողջ քանակի ավելի քան 50 տոկոսը: Հաշվարկային ժամկետի վերջում այդ դեֆիցիտը, չնայած բնակչության աճի և անասնաբուծության համապատասխան զարգացմանը, բավական կպակասի և կկազմի 30 տոկոս: Հացահատիկի սեփական արտադրությունը լիովին ծածկելու է գյուղատնտեսական բնակչության ամբողջ պահանջը, անասնաբուծության պահանջի մոտ 70 տոկոսը և քաղաքային բնակչության, որը 1955 թվականի համեմատությամբ աճելու է գրեթե 2 անգամ, պահանջի 45 տոկոսը:*

*Պարենային գործում կարևոր դեր են խաղալու կարտոֆիլը և բանջարբոստանային կուլտուրաները:*

*Կարտոֆիլ արտադրվելու է բոլոր գոտիներում, բացառությամբ Արարատյան հարթավայրի և Արարատյան հովտի նախալեռնային շրջանների: Այստեղ աննշան քանակությամբ վաղահաս կարտոֆիլ է ցանվելու՝ քաղաքային բնակչությանը ամռանը թարմ կարտոֆիլ մատակարարելու համար:*

*Կարտոֆիլի գոյություն ունեցող արտադրությունը, ինչպես նշեցինք վերևում, բավարարում է բնակչության պահանջի գիտականորեն հիմնավորված նորմաների միայն 85 տոկոսը:*

*Հեռանկարում կարտոֆիլի ցանքատարածությունն ընդարձակվում է աննշան չափով, ընդամենը 10 տոկոսով: Կարտոֆիլի արտադրության կենտրոն-*

ներ են մնալու նույն գյուղատնտեսական գոտիները, այն է՝ Լոռու-Փամբակի գոտին, Սևանի ավազանը և Հյուսիս-արևելյան անտառային գոտին։ Կարտոֆիլի արտադրությունն ավելացնելու գործում հիմնական շեշտը դրվում է բերքատվության բարձրացման վրա, որը մինչև 1960 թ. կարող է հեկտարից հասցվել միջին հաշվով 120 ցենտների, իսկ հետագայում՝ 150 ցենտների և դրանից էլ ավելի։ Հաշվարկային ժամկետի ընթացքում կարտոֆիլի արտադրությունը, այժմյան մակարդակի համեմատությամբ, ավելանալու է 2 անգամ։ Ռեսպուբլիկայի բոլոր կարիքները բավարարելուց զատ, հնարավոր կլինի շեշտակիորեն ավելացնել նաև անասնաբուծության կարիքների և արդյունաբերական վերամշակման համար հատկացվող կարտոֆիլի քանակը։ Կարտոֆիլի մի զգալի մասը ռեսպուբլիկան կարող է նույնիսկ արտահանել։

Ռեսպուբլիկայի բանջարաբուծությունն ունի ոչ միայն տեղական սպառողական նշանակություն, այլև նրա արտադրանքի մի մասը արդյունաբերական վերամշակման բազա է հանդիսանում գլխավորապես միութենական նշանակության կոնսերվի արդյունաբերության համար։ Այդ տեսակետից կարևոր դեր են խաղում հարավային ջերմասեր բանջարային կուլտուրաները՝ տոմատը, բադրիջանը, պղպեղը և այլն։

Բանջարաբոստանային կուլտուրաների բերքատվությունը կոլտնտեսություններում համեմատաբար բարձր չէ և կազմում է մոտ 100 ցենտներ։ Ներկայումս այդ կուլտուրաների համախառն բերքը, ներառյալ և կոլտնտեսականների արտադրանքը, լրիվ չի ապահովում ռեսպուբլիկայի բնակչության պահանջների բավարարումը (54 տոկոս)։

Բանջարաբուծության զարգացման գործում առանձնապես կարևոր դեր է խաղալու քաղաքամերձ գոտու ստեղծումը Երևան քաղաքի շուրջը, որը հիմնականում մասնագիտանալու է բանջարա-բոստանային կուլտուրաների, խաղողի և պտուղների արտադրության մեջ, ինչպես նաև ըստ հնարավորին կաթի և այլ թարմ կաթնամթերքների արտադրության մեջ։

Բանջարանոցային կուլտուրաների ցանքերի գոյություն ունեցող տեղաբաշխումը ռեսպուբլիկայում և մասնավորապես Երևանի քաղաքամերձ գոտում, ինչպես նաև Լենինական, Կիրովական, Ալավերդի և այլ քաղաքների գոտում, անհրաժեշտ է դարձնում, որ վերանայվի քաղաքամերձ շրջանների կոլտնտեսությունների ճյուղերի զուգակցումն ու մասնագիտացումը, նպատակ ունենալով ավելացնել բանջարա-բոստանային կուլտուրաների արտադրությունը՝ մյուս կուլտուրաների և նույնիսկ առանձին դեպքերում տեխնիկական կուլտուրաների համապատասխան կրճատման հաշվին։

Ռեսպուբլիկայի բանջարաբուծության զարգացումը պետք է ելնի գոյություն ունեցող կոնսերվի արդյունաբերության՝ բանջարեղենի վերամշակման ընդլայնման անհրաժեշտությունից։

Հետագայում բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքատարածությունը, ներկա մակարդակի համեմատությամբ, ընդարձակվելու է մոտավորապես 1,8 անգամ, ընդ որում այդ աճը հիմնականում տեղի է ունենալու վեցերորդ հնգամյակում։

Բանջարա-բոստանային կուլտուրաների արտադրության աճը կապված է ոչ միայն ցանքատարածության ընդարձակման, այլև բերքատվության բարձրացման հետ։ Բավական է ասել, որ 1960 թվականին յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվելու է 180 ցենտներ, իսկ հաշվարկային ժամկետի



վերջում՝ 1970 թվականին՝ 250 ցենտներ և ավելի բանջարեղեն։ Բանջարաբոստանային կուլտուրաների արտադրանքն արդեն 1960 թվականին հիմնականում բավարարելու է բնակչության պահանջը, միաժամանակ հնարավորություն տալով ավելի քան 2 անգամ ավելացնելու դրանց արդյունաբերական վերամշակումը։

Հետագայում հնարավոր է բանջարեղենի արդյունաբերական մշակումը 2—3 անգամ ևս ավելացնել և բանջարեղենի պահածոների քանակը հասցնել 100 միլիոն պայմանական տուփի, որի մեծ մասն ուղարկվելու է մյուս ռեսպուբլիկաները։



Անասնաբուծությունը գյուղատնտեսության այն կարևորագույն ճյուղերից մեկն է, որով Հայաստանի բնակչությունն սկսել է զբաղվել ամենահին ժամանակներից ի վեր։ Այդ ճյուղը այժմ էլ կարևոր տեղ է բռնում և տալիս է գյուղատնտեսության համախառն արտադրանքի արժեքի ավելի քան մեկ երրորդ մասը։

Անասնաբուծության ճյուղերի տեղաբաշխման և մասնագիտացման հիմքում դրված է հողային տարածության միավորից հնարավորին չափ շատ արտադրանք ստանալու սկզբունքը՝ աշխատանքի և նյութական միջոցների նվազագույն ծախսումով հանդերձ, որպեսզի հնարավոր լինի լիովի բավարարել բնակչության անասնաբուծական մթերքների պահանջը։

Հայաստանի անասնաբուծության զարգացմանը նպաստող պայմաններից մեկը ռեսպուբլիկայի հողային ֆոնդում բնական կերային ընդարձակ տարածությունների առկայությունն է, որը հասնում է ավելի քան 800 հազար հեկտարի։

Ինչպես վերևում նշվեց, Հայաստանի մարգագետնաարոտային տնտեսության կազմակերպման կարևորագույն հարցերն են՝ մարգագետինների և արոտավայրերի բերքատվության բարձրացումը, դրանց բարեկարգումը, ջրարբիացումը և ռացիոնալ օգտագործումը։

Անասնաբուծության զարգացման հեռանկարներն ամենասերտ կերպով կապված են կերի բազայի հետագա ընդարձակման հետ՝ ինչպես ձմեռվա մսուրային, այնպես էլ ամառվա արոտային շրջանում։

Չնայած նրան, որ դաշտային կերահայթայթման նպատակով տարածությունների ընդարձակման ուղղությամբ շատ բան է արված, սակայն մարգագետիններն ու արոտավայրերը թե իրենց տարածությամբ և թե բերքատվությամբ դեռևս չեն բավարարում եղած պահանջը։ Կերային կուլտուրաների տարածության ավելի քան 90 տոկոսը կազմում են բազմամյա խոտաբույսերը, ստորին գոտու ջրովի պայմաններում՝ առվույտը, իսկ լեռնային շրջաններում՝ գլխավորապես կորնգանը։

Մինչև վերջին ժամանակներս ռեսպուբլիկայում քիչ ուշադրություն էր դարձվում հյութալի և խտացված կերի արտադրությանը, որը առանձնապես բացասաբար էր անդրադառնում կաթնաանասնաբուծության և խոզաբուծության զարգացման վրա։ Ռեսպուբլիկայի դաշտային կուլտուրաների կազմում եգիպտացորենի ավելացումը կարևորագույն միջոցառում է ինչպես խտացրած, այնպես էլ հյութալի կերի բալանսը բարելավելու գործում։

Եգիպտացորենի հատիկային և սիլոսային ցանքերը, հաշվի առնելով խոզանացանը, հասցվելու է 50 հազար հեկտարի։

Դա հնարավորություն կտա հատիկա-ֆուրաժային մյուս կուլտուրաների արտադրության աճման հետ մեկտեղ ավելացնելու խտացրած կերերի արտադրությունը, 1960 թվականին այն հասցնելով 10 միլիոն փթի, իսկ հաշվարկային ժամկետի վերջում՝ 20 միլիոն փթից ավելի։ Հյութալի կերերի արտադրությունը 1960 թվականին ավելի քան եռապատկվելու է, իսկ 1960 թվականին հաջորդած շրջանում՝ ավելանալու է մոտ 7 անգամ։

Մեծ չափով աճելու է խոտի արտադրությունը։ Բնական խոտհարքների տարածությունն ավելանալու է ավելի քան 40 տոկոսով, որի համար արոտավայրերի մի մասը վեր է ածվելու խոտհարքների։ Ավելի քան երկու անգամ բարձրանալու է խոտհարքների բերքատվությունը՝ հասնելով հեկտարից 27 ցենտների։ Խիստ ավելանալու է բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը, այն է՝ 1960 թվականին 40 տոկոսով և մինչև 1970 թվականը ավելի քան 90 տոկոսով։ Կատարված հաշվարկների համաձայն, 1970 թվականին առվույտի բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից կազմելու է 130, իսկ կորնգանինը՝ 40 ցենտներ։ Խոտի համախառն արտադրանքը 1970 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելանալու է 3,2 անգամ։

Գյուղատնտեսական կենդանիների կերակրման համար կերաբաժինները և համապատասխան կերերի արտադրությունը լիովին ապահովում են անասնաբուծության նախատեսված զգալի աճն ու զարգացումը թե՛ գլխաքանակի և թե՛ մանավանդ մթերատվության գծով։ Առանձին գյուղատնտեսական գոտիների կերի բալանսում որոշ դեֆիցիտ գոյություն ունի խտացրած կերի գծով, որի ընդհանուր չափը կազմում է ռեսպուբլիկայի պահանջի 30 տոկոսը։

Կերի բազայի այդպիսի աճը հնարավորություն կտա հաջողությամբ զարգացնելու անասնաբուծությունը։ Հիմնական ուշադրությունը դարձվելու է բոլոր տեսակի անասունների մթերատվությունը շեշտակիորեն բարձրացնելու վրա։ Անասնաբուծության զարգացումն ընթանալու է նրա ինտենսիֆիկացման ուղիով. բարձրացվելու է մայրական գլխաքանակը հոտում, կովերի մի մասը փոխադրվելու է մսուրային պահպանման, բարելավվելու է անասունների ցեղային կազմը և բարձրացվելու է նրանց վաղահասությունը։

Հաշվարկային ժամանակամիջոցում առավել մեծ չափով զարգանալու է կաթնաանասնաբուծությունը։ Հայկական ՍՍՌ պայմաններում անասնաբուծության այդ ճյուղը ընդունված մթերատվությամբ դառնալու է ամենաշահավետ ճյուղերից մեկը։

Կաթնաանասնապահության հիմնական շրջաններն են՝ Լոռի-Փամբակի գյուղատնտեսական գոտին, Արարատյան հարթավայրը, հատկապես քաղաքամերձ կոլտնտեսությունները և Շիրակի գյուղատնտեսական գոտու հյուսիսային մասը։ Ոչխարաբուծությունը մեծ չափով զարգացած է հարավային Հայաստանում՝ Դարալագյազում և Զանգեզուրում, ինչպես նաև Սևանի ավազանում, խոզաբուծությունը՝ Հյուսիս-Արևելյան անտառային գոտում։

Ներկայումս կաթի արտադրությունը գիտականորեն հիմնավորված նորմաներով կատարված հաշվարկի համաձայն բոլոր տեսակի կաթնամթերքներով կարող է բավարարել բնակչության միայն մեկ քառորդին։ Որպեսզի Հայաստանը կարողանա բոլոր տեսակի կաթնամթերքներով ապահովել իր բնակչության պահանջը, անհրաժեշտ է ներկայումս հողատարածության յուրաքան-



չյուր 100 հեկտարի դիմաց արտադրել 660 ցենտներ կաթ, իսկ հետագայում, մոտավորապես 1970 թվականին, հաշվի առնելով բնակչության աճը, ավելի քան 800 ցենտներ, այսինքն՝ 4,8 անգամ ավելի, քան ներկայումս ստացվում է ռեսպուբլիկայում։

1970 թվականին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը համեմատած առ 1/I—57 թվականի հետ ավելանալու է մոտ երկու հարյուր հազարով։ Ավելի քան երկու անգամ կավելանա կովերի քանակը և կկազմի նախրի 50 տոկոսը։

Ինչպես հայտնի է, անասնաբուծական արտադրանքի վրա կատարվող ծախսերի իջեցման գործում հսկայական նշանակություն ունի կենդանիների ցեղայնությունը։ Մինչդեռ ռեսպուբլիկայում անբավարար աշխատանք է տարվում անասունների ցեղը բարելավելու ուղղությամբ։ Կոլտնտեսությունների խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի կեսը դեռևս կազմում են տեղական չբարելավված տեսակները։ Իսկ եթե հաշվի առնելու լինենք նաև կոլտնտեսականներին պատկանող անասունները, ապա բարելավված գլխաքանակի տոկոսը ավելի քիչ կլինի։

Վերջին տարիներս ռեսպուբլիկայում որոշ հաջողություններ են ձեռք բերվել ոչխարների ցեղի բարելավման ուղղությամբ։ Խառնածին ոչխարները կազմում են ամբողջ գլխաքանակի 65 տոկոսը։

Բավական ավելացել են ոչխարաբուծությունից ստացվող եկամուտները, և դա արդյունք է այն բանի, որ տեղական կոպտաբուրդ ոչխարները փոխարինվում են նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարներով, որոնք առայժմ կազմում են ամբողջ գլխաքանակի միայն 20 տոկոսը։ Ապագայում որոշ չափով պահվելու է տեղական կոպտաբուրդ ոչխարների բալբաս ցեղը հատկապես գորգագործության համար, որը այնքան լայն զարգացում է ստացել ռեսպուբլիկայում։ Ոչխարաբուծության բրդատվության ավելացման հետ միասին մեծ ուշադրություն պետք է դարձվի խառնածին կենդանիների մոտ տեղական ոչխարների մսատու բարձր հատկությունների պահպանման վրա։ Բացի դրանից, նկատի ունենալով, որ ռեսպուբլիկայում ապագայում զարկ է տրվելու այնպիսի արժեքավոր պանիրների արտադրության, ինչպես՝ ռոկֆոր և պեկարինո, նախատեսվում է պահպանել ոչխարի կաթի արտադրությունը սահմանափակ քանակությամբ՝ յուրաքանչյուր մաքուց տարեկան ոչ պակաս 30 կգ. չափով։

Ոչխարաբուծությունն անասնաբուծության եկամտաբեր ճյուղերից մեկն է։ Չնայած ռեսպուբլիկայում ուժեղ թափով աճում է կաթնաանասնաբուծությունը, հնարավորություններ կան զարգացնելու նաև ոչխարաբուծությունը, հատկապես մեծ ուշադրություն դարձնելով բրդատվության և մսի մթերատվության բարձրացման վրա։ Ոչխարների գլխաքանակը հաշվարկային ժամկետին, առ 1-ը հունվարի, կհասնի 2,1—2,2 միլիոն գլխի։

Անասնաբուծական արտադրանքի նշված աճը ձեռք է բերվելու գլխավորապես անասունների մթերատվության բարձրացման միջոցով, որը կապված է, առաջին հերթին, անասունների խնամքը, կերակրումը և ցեղական կազմը բարելավելու հետ։

Կովերի կաթնատվությունը հաշվարկային ժամանակամիջոցում ավելանալու է գրեթե երեք անգամ և ռեսպուբլիկայում միջին հաշվով կազմելու է երեք հազար կիլոգրամ, առանձին շրջաններում և գյուղատնտեսական գոտիներում տատանվելով 2100-ից մինչև 3700 կգ. սահմաններում։ Մինչև 1960

թվականը յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը կազմելու է 1800 կգ.։

Յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը հասցվելու է միջին հաշվով 5 կիլոգրամի։

Նախատեսվում է հաշվարկային ժամանակաշրջանում հողատարածության 100 հեկտարին ընկնող խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 42-ից հասցնել 49-ի, այդ թվում՝ կովերինը 13-ից 25-ի։ Խոշոր եղջերավոր անասունների, այդ թվում կովերի ավելի մեծ խտություն ունենալու են ինտենսիվ անասնաբուծության գյուղատնտեսական գոտիները՝ հյուսիսային անասնաբուծական Լոռի-Փամբակը, Արարատյան հարթավայրը և Արարատյան հովտի նախալեռնային շրջանները։

Հողատարածության ավելի մեծ քանակությամբ ոչխարներ են ունենալու Արարատյան հովիտը, Շիրակը և Սևանի ավազանը։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ 1960 թվականին 100 հեկտար հողատարածությանն ընկնող կաթի արտադրությունը, 1956 թվականի համեմատությամբ, ավելանալու է 2,1 անգամ և 1970 թվականին՝ 4,5 անգամ, համապատասխանորեն կազմելով 360 և 756 ցենտներ։

Ռեսպուբլիկայի միջին ցուցանիշների համեմատությամբ բավական բարձր ցուցանիշներ է ունենալու Լոռի-Փամբակի գյուղատնտեսական գոտին, որը 100 հեկտարին տալու է 1040 ցենտներ կաթ, ինչպես և Արարատյան հարթավայրը՝ 1037 ցենտներ։ 100 հեկտարին միջին թվերից բավական ցածր արտադրանք են տալու Դարալագյազը (256 ցենտներ) և Զանգեզուրը (432 ցենտներ)։

Հաշվարկային տարում (1970 թ.) նախատեսվում է ստանալ հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարին մոտ 75 ցենտներ միս (սպանդանոցային քաշով), 1960 թվականին՝ 45 ցենտներ, կամ համապատասխանորեն մսի արտադրությունը ներկայիս համեմատությամբ կավելանա 3,1 և 1,9 անգամ։ Մսի գծով առավել բարձր ցուցանիշներ են ունենալու Արարատյան հովիտը և Շիրակը։ Հաշվարկային ժամկետին մսի բալանսում տավարի միսը կազմելու է 43 տոկոս, ոչխարի միսը՝ 24, խոզի միսը՝ 28 և թռչունների միսը՝ 5 տոկոս։ Մսի բալանսում գոյություն ունեցող մակարդակի համեմատությամբ նշանակալի չափով աճելու է խոզի և թռչունի մսի տեսակարար կշիռը։

1960 թվականին 100 հեկտար հողատարածությանը ստացվող բրդի արտադրանքը կազմելու է մոտ 400 կգ, իսկ հետագայում՝ 620 կգ։

Հաշվարկային ժամկետում անասնաբուծական արտադրանքի նշված աճը հնարավորություն կտա բնակչության կաթնամթերքների պահանջմունքը բավարարելու մոտ 90 տոկոսով, ելնելով յուրաքանչյուր շնչին սպառման համար ընդունված կաթնամթերքները վերածած կաթի նորմայից՝ 550 կգ։

Մսի պահանջը ծածկվելու է մոտ 80 տոկոսով, հաշված յուրաքանչյուր շնչին 64 կգ.՝ սպառման տարեկան ընդունված նորմայով։ Ինչ վերաբերում է բնակչության ձվի պահանջմունքին, ապա այն հիմնականում բավարարվելու է։ Սակայն դրա համար անհրաժեշտ է մեծ չափով ավելացնել հացահատիկային ցանքատարածության յուրաքանչյուր 100 հեկտարին ընկնող ձվի քանակը։ Այդ կարելի է իրագործել կոլտնտեսությունների թռչնաբուծական ֆերմաներում և հատուկ թռչնաբուծական ֆաբրիկաներում ու թռչնաբուծական սովետական տնտեսություններում գլխաքանակը շեշտակի կերպով ավելացնելու միջոցով։

Նախատեսվում է հաշվարկային ժամանակամիջոցում կազմակերպել տասը կաթնատնտեսական սովետական տնտեսություն, 2 ոչխարաբուծական



սովետական տնտեսություն և 8 թռչնաբուծական խոշոր ֆաբրիկա ու սովետական տնտեսություն։

Երկրի կոլտնտեսությունները և սովետական տնտեսությունները պարտավորություն են ստանձնել շեշտակի կերպով ավելացնելու կաթի և մսի արտադրությունը։ Խնդիր է դրվում արդեն մոտակա տարիներին բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ հասնելու ԱՄՆ-ին։ Այդ շարժումը լայն արձագանք է գտել նաև Հայկական ՍՍՌ-ում։

Այստեղ մենք հաշվի ենք առել անասնաբուծական արտադրանքի աճման հնարավորությունները այդ շարժման կապակցությամբ։

Ինչպես վերը նշեցինք, արդեն 1960 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ՀՍՍՌ-ում արտադրվելու է 360 ցենտներ կաթ և 45 ցենտներ միս։

1956 թվականին ՍՍՌՄ-ում և ԱՄՆ-ում բնակչության յուրաքանչյուր շընչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությունը կազմում էր՝

| | ՍՍՌՄ-ում | ԱՄՆ-ում |
|---|---|---|
| Միս՝ կիլոգրամներով | 32,3 | 102,3 |
| Կաթ » | 245,0 | 343,0 |
| Յուղ » | 2,8 | 3,8 |

Իսկ եթե յուղը վերածենք կաթի, ապա ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր շնչին ընկնում էր 309, իսկ ԱՄՆ-ում 430 կիլոգրամ կաթ։

1956 թվականին գյուղատնտեսական հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարից ստացվել է (ցենտներով)

| | ՍՍՌՄ-ում | ԱՄՆ-ում |
|---|---|---|
| Միս՝ սպանդանոցային քաշով | 13,3 | 33,0 |
| Կաթ | 101,0 | 111,0 |

Բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող մսի և կաթի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու համար, Սովետական Միությունը գյուղատնտեսական հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարին պետք է ստանա 42 ցենտներ միս և 141 ցենտներ կաթ։ Հետևաբար, անհրաժեշտ է մսի արտադրությունն ավելացնել մոտավորապես 3,5 անգամ, իսկ կաթինը՝ 40 տոկոսով։

Լեռնային մարգագետինների և այգիների մեծ տարածությունները նպաստավոր պայմաններ են ստեղծում ռեսպուբլիկայում մեղվաբուծության զարգացման համար։ Հաշվարկային ժամանակաշրջանում նոր այգիներ հիմնելու և բազմամյա խոտաբույսերի ցանքատարածություններն ընդարձակելու կապակցությամբ ավելի լավ պայմաններ են ստեղծվում դրա համար։ Սակայն գյուղատնտեսության այդ կարևոր ճյուղը ճիշտ վարելու համար պահանջվում է հատուկ միջոցառումներ իրագործել մեղվաբուծության կերի բազայի ամրապնդման ու ընդարձակման ուղղությամբ։ Հաշվարկային ժամանակաշրջանում ենթադրվում է մեղվաընտանիքների թիվն ավելացնել մոտավորապես 60 տոկոսով, յուրաքանչյուր մեղվաընտանիքից ստանալով մինչև 20 կիլոգրամ ապրանքային մեղր։

Շերամապահությունը հիմնականում զարգացած է Զանգեզուրում, Արարատյան հարթավայրում և Հյուսիս-արևելյան անտառային գոտում։ Ռեսպուբլիկան արտադրում է համեմատաբար քիչ, բայց բարձրորակ գրենա։ Թթենուտների տարածությունը 3 անգամ և առանձին թթենիների թիվը 4 ան-

գամ ավելանալու միջոցով զգալիորեն ընդարձակվելու է ջերմապահության կերի բազան: Բարելավվում է ջերամի որակը: Հաշվարկային ժամկետում 4—5 անգամ ավելանալու է բոժոժի արտադրությունը:



Այժմ ՀՍՍՌ-ի տնտեսության համախառն արտադրանքը, գնման գներով հաշված, հասնում է 1.700 միլիոն ռուբլու: Դրանից 600 միլիոն ռուբլին կամ ավելի քան 35 տոկոսն ընկնում է Արարատյան հարթավայրի գոտուն՝ շնորհիվ նրա բարձր զարգացած բուսաբուծությանը, որի բաժինը գոտու գյուղատնտեսության համախառն արտադրանքի մեջ կազմում է ավելի քան 80 տոկոս: Գոյություն ունեցող տնտեսությունում բուսաբուծության այսպիսի բարձր դերը հատուկ է միայն հիշյալ գոտուն: Մյուս չորս գոտիներում, որտեղ գերակշռում է բուսաբուծությունը, նրա տեսակարար կշիռը համախառն արտադրանքի մեջ տատանվում է 53-ից մինչև 58 տոկոսի սահմաններում: Մնացած չորս գոտիներում գերակշռում է անասնաբուծական արտադրանքը, որը կազմում է գոտու համախառն արտադրանքի մոտավորապես 55—57 տոկոսը: Բուսաբուծության և անասնաբուծության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայում կազմում է համապատասխանորեն 62 և 38 տոկոս:

Տնտեսության նախատեսված զարգացման հետևանքով խիստ (4,6 անգամ) աճելու է գյուղատնտեսական արտադրանքի ծավալը, որը հասնելու է 7.780 միլիոն ռուբլու: Համապատասխանորեն բուսաբուծության արտադրանքն աճելու է 4,4 անգամ և անասնաբուծությանը՝ 4,9 անգամ: Առանձին գոտիներում համախառն արտադրանքն ավելանալու է 3-ից մինչև 5 անգամ, բացառությամբ Արարատյան հովտի նախալեռնային գոտու, որտեղ տնտեսությունը լիովին վերակառուցման ենթարկելու և այն զարգացած խաղողագործության ու պտղաբուծության ջրովի շրջանի վերածելու կապակցությամբ գոտու համախառն արտադրանքն աճելու է ավելի քան 12 անգամ: Բուսաբուծական և անասնաբուծական արտադրանքի արժեքային արտահայտության հարաբերակցությունը 1970 թվականի համախառն արտադրանքի ամբողջ ծավալում պահպանվելու է մոտավորապես գոյություն ունեցող մակարդակի վրա. աննշան չափով բարձրանում է անասնաբուծության բաժինը—բուսաբուծությանը՝ 59 տոկոս և անասնաբուծությանը՝ 41 տոկոս:

Բուսաբուծության մեջ առանձին ճյուղերի համախառն արտադրանքի աճը և տեսակարար կշիռը տալիս են հետևյալ հարաբերակցությունը 1955 և 1970 թվականներին (աղյուսակ 1):

Խաղողաբուծությունը և պտղաբուծությունը դառնալով ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հիմնական առաջատար ճյուղը՝ համախառն արտադրանքի ծավալով աճելու են 8 անգամ և տալու են բուսաբուծության ամբողջ արտադրանքի երկու երրորդը: Իրենց համախառն արտադրանքի ծավալով զգալիորեն աճելու են նաև բոստանա-բանջարանոցային կուլտուրաները՝ 3,3 անգամ և կերային կուլտուրաները՝ 3,9 անգամ:

Անասնաբուծության համապատասխան ցուցանիշներն արտահայտվում են հետևյալ թվերով (աղյուսակ 2):

Անասնաբուծության համախառն արտադրանքի մեջ կաթի և մսի արժեքը հասնում է 80 տոկոսի: Մինչև 1970 թվականը կաթի և մսի արտադրանքի



ծավալն աճելու է ավելի քան 5 անգամ, որով և ըստ էության որոշվելու է անասնաբուծության ամբողջ արտադրանքի աճը:

(Արժեքային արտահայտությունը միլիոն ռուբլիներով)

Աղյուսակ 1

| | 1955 թվականին | | 1970 թվականին | | |
|---|---|---|---|---|---|
| | Արժեքային արտահայտությունը | Տեսակարար կշիռը | Արժեքային արտահայտությունը | Տեսակարար կշիռը | Աճ քանի անգամ |
| Խաղողաբուծություն | 248,0 | 23,7 | 2070,3 | 45,4 | 8,5 |
| Պտղաբուծություն | 115,4 | 11,0 | 860,0 | 18,6 | 7,5 |
| Տեխնիկական կուլտուրաներ | 216,9 | 20,8 | 348,4 | 7,6 | 1,6 |
| Հացահատիկային կուլտուրաներ | 227,5 | 21,7 | 478,6 | 10,5 | 2,1 |
| Բանջարա-բոստանային կուլտուրաներ և կարտոֆիլ | 180,1 | 17,3 | 586,8 | 12,9 | 3,3 |
| Կերային կուլտուրաներ | 56,7 | 5,5 | 223,4 | 5,0 | 3,9 |
| Ընդամենը | 1044,6 | 100,0 | 4567,5 | 100,0 | 4,4 |

Աղյուսակ 2

| | 1955 թվականին | | 1970 թվականին | | |
|---|---|---|---|---|---|
| | Արժեքային արտահայտությունը | Տեսակարար կշիռը | Արժեքային արտահայտությունը | Տեսակարար կշիռը | Աճ քանի անգամ |
| Կաթ | 298,0 | 44,7 | 1550,0 | 47,7 | 5,3 |
| Միս | 188,9 | 28,3 | 1001,6 | 30,8 | 5,3 |
| Բուրդ | 98,1 | 14,2 | 344,8 | 10,5 | 3,5 |
| Ձու | 52,0 | 7,9 | 275,4 | 8,5 | 5,3 |
| Կաշի | 18,0 | 2,9 | 24,7 | 0,8 | 1,4 |
| Այլ մթերքներ | 13,4 | 2,0 | 53,5 | 1,7 | 4,0 |
| Ընդամենը | 668,4 | 100,0 | 3250,0 | 100,0 | 4,9 |

Բուսաբուծության արտադրանքը 1970 թվականին գերակշռելու է ռեսպուբլիկայի ինը գյուղատնտեսական գոտիներից միայն չորսում՝ Արարատյան հարթավայրում, Արարատյան հովտի նախալեռնային շրջանում, Հյուսիսարևելյան անտառային գոտում և Դարալագյազում, ընդ որում առաջին երկու գոտում դրանց բուսաբուծական բնույթն արտահայտվելու է ավելի ցայտուն կերպով: Մնացած հինգ լեռնային գոտիները իրենց համախառն արտադրանքի արժեքով անասնաբուծական գոտիներ են, սակայն դրանց անասնաբուծական բնույթն արտահայտվում է ոչ այնքան շեշտակիորեն, քանի որ ընդհանուր արտադրանքի մեջ անասնաբուծական արտադրանքի արժեքը կազմում է 60—65 տոկոս: Եթե հաշվի առնելու լինենք այն հանգամանքը, որ գնման գները, որոնցով կատարված է արտադրանքի հաշվարկը, հանրային արտադրության ծախքերի տեսակետից դեռևս ոչ լրիվ չափով ճիշտ են արտահայտում առանձին արտադրանքների արժեքային հարաբերակցությունը և, մասնավորապես, համեմատաբար ցածր են անասնաբուծական մթերքների գնման գները, ապա դժվար չէ պատկերացնել այն մեծ դերը, որ կոչված է կատարելու անասնաբուծությունը ռեսպուբլիկայում:

Գյուղատնտեսության զարգացման նշված հեռանկարների կենսագործումը ռեսպուբլիկային հնարավորություն կտա ոչ միայն արդյունավետ կերպով

մասնակցելու երկրում ժողովրդական սպառման պարենային և արդյունաբերական ապրանքների առատություն ստեղծելու խնդրի լուծմանը, այլև դրանով իսկ շեշտակիորեն բարձրացնելու կոլտնտեսային գյուղացիության նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը։ 1970 թ. յուրաքանչյուր կոլտնտեսական ընտանիքին գնման գներով ընկնելու է ավելի քան 50 հազար ռուբլու համախառն արտադրանք, այսինքն՝ ներկայիս տնտեսության համեմատությամբ համախառն արտադրանքն ավելանալու է ավելի քան 5 անգամ։ Եթե հաշվի առնելու լինենք այն, որ աշխատանքի արտադրողականության հսկայական աճման և արտադրական ծախսերի նորմալացման կապակցությամբ արտադրանքի միավորի ինքնարժեքը մոտավոր հաշիվներով իջնելու է 3 անգամ, ապա պարզ կլինի, որ տնտեսությանն ընկնող զուտ եկամուտի աճը գերազանցելու է համախառն արտադրանքի աճին։ Հաշվարկումները ցույց են տալիս նաև, որ գյուղատնտեսական արտադրող բնակչության բացարձակ մեծ աճի հետ մեկտեղ աճելու է գյուղատնտեսության ապրանքային արտադրանքը, որը կազմելու է հարաճուն համախառն արտադրանքի 70—75 տոկոսը՝ ներկայիս տնտեսության ապրանքայնության 55 տոկոսի դիմաց։ Հաշվարկային ժամանակաշրջանում ապրանքային արտադրանքի ծավալը, ներկա մակարդակի համեմատությամբ, աճելու է ավելի քան 6 անգամ։

Ինչպես ցույց են տալիս գյուղատնտեսական մթերքների արտադրության և սպառման բալանսային հաշվարկները, Հայկական ՍՍՌ-ն 1970 թվականին հնարավորություն կունենա արտահանելու մոտ 4 միլիարդ ռուբլու մթերք, այն ժամանակ, երբ անհրաժեշտ կլինի ներմուծել միայն 2 միլիարդ ռուբլու մթերք։ Իսկ եթե հաշվի առնելու լինենք վերամշակված ապրանքների (գինի, կոնյակ, պահածո և այլն) արտահանությունը, ապա արտահանվող ապրանքների արժեքը զգալիորեն բարձր կլինի ներմուծվող ապրանքների արժեքից։

Գյուղատնտեսության նշված արմատական վերակառուցումը, որը հիմնված է իռիգացիայի լիակատար զարգացման, մարգագետնային տնտեսության մելիորացիայի, գյուղատնտեսական արտադրական պրոցեսների հետագա լիակատար մեքենայացման ու էլեկտրիֆիկացման և համապատասխան տարածությունների գյուղատնտեսական յուրացման վրա, ըստ մոտավոր հաշիվների կպահանջի 1961—1970—1975 թվականների շրջանում ծախսել շուրջ 2.300 միլիոն ռուբլի, որից իռիգացիայի և արոտավայրերի մելիորացիայի համար 1.200 միլիոն ռուբլի, այլ միջոցառումների և իրացման համար 1.100 միլիոն ռուբլի։

Այն եկամուտները, որոնք ստացվելու են այդ ներդրումների հետևանքով, հնարավորություն կտան համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հատուցելու կատարվող ծախսերը։

Գյուղատնտեսության զարգացման հեռանկարների կենսագործումը, ըստ նրա առանձին էտապների, մեծ չափով կախված է այն բանից, թե որքան արդյունավետ կերպով կանցկացնեն և հետագայում է՛լ ավելի կզարգացնեն այն միջոցառումները, որոնք կիրառվում են ներկայումս՝ գյուղատնտեսության առանձին ճյուղերի վերելքի գործում կոլտնտեսային գյուղացիության մեջ նյութական շահագրգռվածություն ստեղծելու համար։

---

# ԼՈՒՐՋ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՆՐԱԿՐԹԱԿԱՆ ԴՊՐՈՑԻՆ

*Բ. ԱՎՉՅԱՆ*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը ընդգծելով ժողովրդական կրթության ասպարեզում ձեռք բերած հաջողությունները, միևնույն ժամանակ մի շարք թերություններ նշեց մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության և կրթության բնագավառում։ Հանրակրթական դպրոցի ամենախոշոր թերությունը՝ ուսուցման կտրվածությունն է կյանքից, դպրոց ավարտածների անբավարար պատրաստությունը պրակտիկ գործունեությանը։ Այդ երևույթի հիմնական պատճառը դպրոցում պոլիտեխնիկական կրթության անբավարար դրվածքն է։ Ահա թե ինչու ՍՄԿՊ XX համագումարը պահանջեց՝ «Հանրակրթական դպրոցում զարգացնել պոլիտեխնիկական ուսուցումը, ապահովելով սովորողների ծանոթացումը ժամանակակից արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության կարևորագույն ճյուղերին։ Ապահովել ուսուցման սերտ կապը հանրօգուտ աշխատանքի հետ, աճող սերնդի մեջ դաստիարակել կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ»։

Անցած ուսումնական տարում ռեսպուբլիկայում զգալի աշխատանք է կատարվել պարտիայի XX համագումարի կողմից դպրոցին առաջադրված խնդիրների կենսագործման ուղղությամբ. ժողովրդական կրթության բնագավառի աշխատողները որոշ հաջողություններ են ձեռք բերել աշակերտների պոլիտեխնիկական կրթության, ուսուցումը կյանքի պահանջներին մոտեցման, աշակերտների կոմունիստական դաստիարակության գործում։ Մի շարք դպրոցներում ստեղծված են ուսումնական արհեստանոցներ, գյուղական համարյա բոլոր դպրոցներն ապահովված են դպրոցական հողամասերով, 30 դպրոց աշխատում են մասնագիտական թեքումով։ Դպրոցական աշխատանքում հատուկ տեղ է գրավել էքսկուրսիաների կազմակերպումը դեպի արտադրություն, աշակերտների գործնական աշխատանքը արդյունաբերական ձեռնարկություններում և գյուղատնտեսության մեջ։ Աշակերտների գործնական աշխատանքի հմտությունների զարգացման գործում մեծ նշանակություն ունեցավ 15-օրյա արտադրական պրակտիկան ուսումնական տարվա վերջում։ Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Ղափանի, ինչպես նաև Մեղրու, Շամշադինի, Էջմիածնի շրջանների մի շարք դպրոցներ ցույց են տվել, թե ինչպես պրակտիկ կերպով կարելի է իրականացնել պոլիտեխնիկ ուսուցումը, աշակերտների մեջ զարգացնել արտադրական ու աշխատանքային ունակություններ, գործնական հմտություններ։

Սակայն ռեսպուբլիկայի դպրոցներում պոլիտեխնիկ ուսուցման գործում

դեռևս նկատվում են լուրջ թերություններ։ Շատ ժողովրդական կրթության բաժիններ, դպրոցի ղեկավարներ ինչպես հարկն է չեն կազմակերպում աշակերտների հանրօգուտ աշխատանքը, անուշադրության են մատնում նրանց մտավոր պատրաստականության ու գործնական հմտությունների միջև կապի ստեղծումը։

Պոլիտեխնիկ ուսուցման կարևոր տարրերից մեկը սովորողների ուսումնա-արտադրական աշխատանքն է։ Ուսումնական պլանի համաձայն բարձր դասարանների աշակերտները երկշաբաթյա արտադրական պրակտիկա պետք է անցնեն ամառվա ամիսներին։ Սակայն պետք է նշել, որ Շահումյանի, Կոտայքի, Շամշադինի, Երևանի որոշ դպրոցներ չկարողացան կազմակերպված անցկացնել աշակերտների ուսումնա-արտադրական պրակտիկան, աշակերտների մի մասի պրակտիկան անցավ առանց դպրոցի և ուսուցիչների վերահսկողության։

Դեռևս դպրոցներն ապահովված չեն պոլիտեխնիկական ուսուցման վերաբերյալ մեթոդական գրականությամբ, պրակտիկումի ուսուցման համար անհրաժեշտ սարքավորումներով և ուսումնական այլ նյութերով։ Սպիտակի, Մարտունու, Վեդիի, Սևանի, Ախտայի և այլ շրջանների շատ դպրոցներում չկան արհեստանոցներ, աշխատանքային սենյակներ, դանդաղ է ընթանում ուսուցիչների վերապատրաստման աշխատանքը։

Լուսավորության մինիստրությունը, նրա տեղական օրգանները պետք է կոնկրետ մոտենան դպրոցում արհեստանոց ու աշխատանքային սենյակ ստեղծելու հարցին և լրիվ օգտագործեն ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ տրված հնարավորությունները։

Ժողովրդական լուսավորության աշխատողների, ուսուցչության խնդիրն է՝ առաջիկա մի քանի տարում վերացնել դպրոցների հիմնական թերությունը՝ ուսուցման կտրվածությունը կյանքից, բարձրացնել ամբողջ ուսումնա-դաստիարակչական պրոցեսի մակարդակը։ Այս հարցի պրակտիկ լուծմանը պետք է ուղղված լինեն պարտիական ու սովետական կազմակերպությունների ջանքերը։

Պետք է նշել, որ որոշ դպրոցներում աշակերտների առաջադիմությունը ցածր է, մեծ թիվ են կազմում ուսման մեջ ետ մնացողները։ 1956—57 ուսումնական տարում միևնույն դասարանում մնացել և վերաքննություններ էին ստացել մեծ թվով աշակերտներ։ Հատկապես մեծ է երկտարեցիների թիվը Արտաշատի, Նոր Բայազետի, Աշտարակի, Մարտունու, Հոկտեմբերյանի շրջանների դպրոցներում։

Ուսման մեջ աշակերտների ետ մնալու ու երկտարեցիության հիմնական պատճառներից մեկը հենց ուսման պրոցեսի և ուսուցման մեթոդների լուրջ թերություններն են։ Դասավանդման պրակտիկայում բավականաչափ ուժեղ կերպով արտահայտվում է ֆորմալիզմն ու գիտելիքների հաղորդման վերացականությունը և կտրվածությունը կյանքից։ Որոշ ուսուցիչներ, անկախ դասի բովանդակությունից, դասը կառուցում են միևնույն սխեմայով, միևնույն ձևերով։ Ուսուցման պրոցեսի կազմակերպման նման միատեսակությունն իջեցնում է աշակերտների ճանաչողական ակտիվությունը, դասի արդյունավետությունը։ Ուսուցչի բացատրությունը պետք է շարժի աշակերտների ստեղծագործական միտքը, սովորեցնի նրանց կատարելու երևույթների ու փաստերի ընդհանրացում և վերլուծություն։



Ուսուցման գործում եղած թերությունները շատ դեպքերում բացատրվում են ուսուցիչների թույլ պատրաստականությամբ։ Դեռևս ոչ բոլոր դպրոցներն են ապահովված համապատասխան կրթություն ու որակ ունեցող դասատուներով, թույլ է հսկողությունը ուսուցչի աշխատանքի նկատմամբ։

Օգոստոսյան ուսուցչական խորհրդակցությունները, ինչպես և մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մի շարք դպրոցներում թույլ են տալիս ուսուցչական կադրերի հոսունություն և առանձնապես ներդպրոցական հոսունություն, որը բացասական ազդեցություն է թողնում ուսուցման և դաստիարակության վրա։

Որոշ ուսուցիչներ աշակերտների գիտելիքների գնահատման հարցում շարունակում են զբաղվել աչքակապությամբ, արհեստականորեն բարձրացնում են նրանց գնահատականները։ Նոր Բայազետի շրջանի Նորադուզ գյուղի դպրոցի 3-րդ դասարանի դաստիարակ Պ. Կարապետյանը ինքնագլուխ, առանց դասատուի համաձայնության բարձրացնում է մի շարք աշակերտների քառորդային գնահատականները։ Աշակերտների գիտելիքների գնահատման գործում նման երևույթներ թույլ են տվել Աշտարակի, Ախտայի, Արտաշատի և մյուս շրջանների մի շարք դպրոցներում։

Շատ դեպքերում չի կատարվում պարտիայի Կենտկոմի հայտնի ցուցումը այն մասին, որ դասատուն պարտավոր է սիստեմատիկաբար և հետևողականորեն շարադրելու այն առարկան, որ ավանդում է։ Նա պետք է երեխաներին ամեն կերպ վարժեցնի զանազան տեսակի ինքնուրույն գրավոր աշխատանքների, դասագրքերով ու գրքերով աշխատելուն, կաբինետում, լաբորատորիայում, ուսումնական արհեստանոցում աշխատելուն։

Քիչ չէ այն դպրոցների թիվը, որտեղ անգամ լաբորատոր սարքավորումների ու համապատասխան նյութերի առկայության դեպքում, ուսուցչի անբարեխիղճ վերաբերմունքի հետևանքով ֆիզիկայի, քիմիայի առարկաների գծով չեն կատարվում ուսումնական ծրագրերով նախատեսված բոլոր լաբորատոր աշխատանքները։ Այդպես են վարվում Ապարանի շրջանի Արագած, Ախուրյանի շրջանի Մարմաշեն, Վեդիի շրջանի Շիրազլու գյուղերի, Բասարգեչարի շրջկենտրոնի դպրոցներում։

Հանրակրթական դպրոցը պարտավոր է իր սաներին սովորեցնել ինքնուրույն աշխատելու գրքի վրա և կարողանալու այն օգտագործել իր ամենօրյա կյանքում ու աշխատանքում։ Դասի ընթացքում, որպես կանոն, աշխատանքը դասագրքի ու գրքի վրա գրավում են շատ քիչ տեղ, որի հետևանքով շատ աշակերտներ, որոնք վերջացնում են միջնակարգ դպրոցը, չեն կարողանում ինքնուրույն աշխատել գրքի վրա։

Հանրակրթական դպրոցի հիմնական խնդիրներից մեկը հայոց ու ռուսաց լեզուների ուսուցման որակի բարելավումն է։ Այդ առարկաների դասավանդումը դեռևս պատշաճ բարձրության վրա չի գտնվում։ Մեծ թիվ են կազմում հայոց և ռուսաց լեզուներից անբավարար առաջադիմություն ունեցող աշակերտները։ Հայոց ու ռուսաց լեզուների դասատուներից ընկ. ընկ. Ա. Տերյանը, Տ. Մաթևոսյանը (Երևանի № 49 դպրոցից), Բ. Խաչատրյանը (Սևանի շրջկենտրոնի միջնակարգ դպրոցից), Գ. Արշակյանը (Աշտարակի շրջկենտրոնի յոթնամյա դպրոցից) և ուրիշներ հարկ եղած ուշադրություն չեն դարձնում աշակերտների բանավոր ու գրավոր խոսքի զարգացման, գիտելիքների ամրապնդման ու գործնական աշխատանքների կատարման վրա։

Ընթացիկ ուսումնական տարում հանրակրթական դպրոցում լուրջ ուշադրություն պետք է դարձվի աշակերտների երաժշտական դաստիարակության բարելավմանը։ Երգի ուսուցումը մտցվում է նաև 5—7-րդ դասարաններում, բոլոր յոթնամյա ու միջնակարգ դպրոցներում կազմակերպվելու են երգեցիկ խմբեր։

Աշակերտների գիտելիքների մակարդակի նկատմամբ կյանքը մշտապես նոր պահանջներ է հարուցում։ Դպրոցական պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ խրախուսել ուսուցիչների ստեղծագործական նախաձեռնությունը, զարգացնել նրանց ակտիվությունը դասավանդման ու դաստիարակման մեթոդների որոնումների ուղղությամբ։

Խոշոր թերություններ կան նաև դպրոցներում տարվող դաստիարակչական աշխատանքներում։ Սովորողների մի մասի մոտ դեռևս ցածր է կարգապահությունը։ Քիչ չեն դեպքերը, երբ աշակերտները խախտում են դպրոցական կարգապահությունը, շատերը բացակայում են դասերից, թույլ են տալիս հակահասարակական արարքներ, անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում դպրոցականի պարտականությունների հանդեպ։

Դաստիարակչական աշխատանքի գլխավոր թերությունն է խոսքի ազդեցության գերագնահատումը և կոմունիստական վարքին վարժեցնելու թերագնահատումը։

Առաջավոր դպրոցների փորձը ցույց է տալիս, որ աշակերտների դաստիարակության գործում ավելի մեծ հաջողությունների են հասնում այն դասատուներն ու դաստիարակները, որոնք կարողանում են օրգանապես զուգակցել աշակերտների համոզման ու սովորեցման մեթոդները։

Աշակերտների հետ տարվող դաստիարակչական աշխատանքում կենտրոնական տեղը պետք է գրավի նրանց աշխատանքային գործունեության տարբեր ձևերի կազմակերպումը։

Սովետական հասարակությունը մեծ գոհունակությամբ ընդունեց ուսումնա-դաստիարակչական նոր տիպի հիմնարկի՝ գիշերօթիկ դպրոցներ ստեղծելու մասին պարտիայի XX համագումարի որոշումը։ Այդ ուսումնա-դաստիարակչական հիմնարկները կոչված են ավելի բարձր մակարդակով լուծելու բազմակողմանի զարգացած ու կրթված կոմունիզմ կառուցողներ պատրաստելու խնդիրը։ Գիշերօթիկ դպրոցները ստեղծված են նաև մեր ռեսպուբլիկայում։ Այդ դպրոցների մեկ տարվա փորձը ցույց է տալիս երեխաների դաստիարակության ու կրթության նոր սիստեմի առավելությունները։

Սովետական դպրոցում կոմերիտական կազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ դաստիարակվել են երիտասարդ հայրենասերներ, որոնք գործով ապացուցել են իրենց նվիրվածությունը Հայրենիքին, պատրաստակամությունը՝ աշխատելու ժողովրդի համար։ Պարտիայի կոչով հարյուր հազարավոր պատանիներ ու աղջիկներ աշխատանքի են մեկնել խամ ու խոպան հողերը ու վեցերորդ հնգամյակի կառույցները։

Սակայն ոչ բոլոր դպրոցներում է, որ կոմերիտական աշխատանքը տարվում է բովանդակալից։ Երևանի №№ 72, 53, Բասարգեչարի շրջանի Ծովագյուղի, Կոտայքի շրջանի Քանաքեռի և այլ դպրոցներում աշակերտները թույլ են ընդգրկվում հասարակական ակտիվ գործունեության մեջ, կոմերիտական ժողովներն անցնում են ձանձրալի, նրանք դադարել են քաղաքական դաստիարակության դպրոց լինելուց։ Հայտնի է, որ ռեսպուբլիկայում



ջատ դպրոցներ չունեն ֆիզկուլտ հրապարակներ, դպրոցական բակերը կարգի չեն բերված ու կանաչապատված։ Այնինչ, այդ հարցերը կարող են լուծվել տեղում, եթե հանդես բերվի նախաձեռնություն։

Դպրոցի ղեկավարների ու դպրոցական պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ օգնել կոմերիտական կազմակերպություններին բարելավելու կոմերիտական ու պիոներական աշխատանքը դպրոցում, զարգացնելու կոմերիտականների ակտիվությունը, խթանելու նրանց նախաձեռնությունը։

Դպրոցականների քաղաքական դաստիարակության խնդիրների հաջող լուծումը հնարավոր չէ առանց ուսուցչի իդեական մակարդակի լուրջ բարձրացման։ Ուսուցիչը դպրոցի կենտրոնական դեմքն է։ Նրա կրթության մակարդակը, ուսումնական ու դաստիարակչական խնդիրները հասկանալու կարողությունը, մանկավարժական վարպետությունը որոշում են դպրոցի հաջողությունները։

Անհրաժեշտ է նշել, որ ռեսպուբլիկայի դպրոցների 5—7-րդ դասարաններում աշխատող ուսուցիչների մի մասը չունեն համապատասխան կրթություն, դեռևս մի շարք ուսուցիչներ վատ են աշխատում իրենց մանկավարժական, մեթոդական, քաղաքական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։ Առանձին ուսուցիչներ (Կիրովական քաղաքի, Կիրովականի շրջանի, Աշտարակի շրջանի դպրոցներից) կանչվում են պատասխանատվության՝ հակահասարակական արարքներ թույլ տալու համար։

Մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության բարդ գործը չի կարելի դիտել որպես միայն դպրոցի կամ ուսուցչի մասնավոր գործ։ Առանց պարտիական կազմակերպությունների և լայն հասարակայնության ակտիվ օգնության, հաջողությամբ չեն կարող լուծվել հանրակրթական դպրոցի առջև կանգնած բարդ հարցերը։ Հաշվի առնելով այդ, Երևանի Ստալինյան շրջանի, Ստեփանավանի, Էջմիածնի շրջանների պարտիական կազմակերպությունները ուժեղացրել են դպրոցին ցույց տրվող ղեկավարությունն ու օգնությունը։ Նշված շրջաններում աշակերտների գիտակցական կարգապահության հարցերը քննության առարկա են դարձել պարտիական կազմակերպություններում ու շրջանային կոմիտեներում։ Այդ աշխատանքում էական տեղ է գրավում սովորողների ծնողների պատասխանատվության բարձրացումը, պրոֆկազմակերպության ու կոմերիտմիության ակտիվ մասնակցությունը դպրոցի կարևորագույն հարցերի լուծմանը։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հատուկ թեմատիկա է մշակել ուսուցիչների սեմինար պարապմունքի համար։ Այս ուսումնական տարում պարտիական լուսավորության սիստեմում ուսուցիչներն իրենց սեմինար պարապմունքներում կսկսեն ուսումնասիրել այնպիսի հարցեր, որոնք անմիջական կապ ունեն դպրոցի խնդիրների հետ։ Ամբողջ իդեոլոգիական աշխատանքն այստեղ պետք է ենթարկված լինի ուսուցիչների ստեղծագործական մտքի զարգացմանը, օգնի նրանց բազմակողմանի գաղափարական աճին։

Ռեսպուբլիկայի հանրակրթական դպրոցների կարևոր խնդիրներից մեկը ընդհանուր միջնակարգ կրթության իրականացումն է, աշակերտների կոնտինգենտի ամրացումն ու պայքարը մաղումների դեմ։ 1956—57 ուսումնական տարում ռեսպուբլիկայի դպրոցներից մաղվել են զգալի թվով աշակերտներ։

Մաղումների թիվը հատկապես մեծ է Մարտունու, Գորիսի, Արտաշատի, Շահումյանի, Սպիտակի շրջաններում։

Դպրոցներում աշակերտների մաղումը հիմնականում բացատրվում է ուսումնա-դաստիարակչական աշխատանքների թուլությամբ. ամեն տարի մեծ թվով աշակերտներ մնում են միևնույն դասարանում ու դառնալով երկտարեցիներ՝ թողնում են դպրոցը։ Գյուղում պարտուսի իրականացման համար մեծ նշանակություն ունի դպրոցից հեռու ապրող երեխաների փոխադրականի հարցի լուծումը և դպրոցներին կից ինտերնատների կազմակերպումը։ Շատ դեպքերում աշակերտների փոխադրականի հարցը տեղերում չեն լուծում, դպրոցներին կից գործող ինտերնատների մեծ մասը ապահոված չեն համապատասխան կահավորումով, պարապմունքների համար չունեն մինիմալ հարմարություններ։

Խոշոր թերություններ կան դասագրքերի հրատարակման գործում։ Հայպետուսմանկհրատը ինչպես անցյալ տարի, այնպես էլ այս տարի ժամանակին չապահովեց հանրակրթական դպրոցները բոլոր դասագրքերով։ Հրատարակված դասագրքերից մի քանիսը լույս են տեսել սխալներով ու թերություններով։ Հատկապես շատ են սխալները թարգմանված դասագրքերում՝ 5—7-րդ դասարանի «Թվաբանություն», 6—9-րդ դասարանների «Երկրաչափություն», «Արտասահմանյան երկրների տնտեսական աշխարհագրություն» և մյուս դասագրքերում։ Մի շարք դասագրքեր անհաջող են ձևավորված։

Անհրաժեշտ է բարձրացնել ուսումնա-մանկավարժական գրականության թողարկման որակը, կարճ ժամանակում վերացնել լուրջ թերությունները հրատարակչական աշխատանքում։

Հանրակրթական դպրոցին ու ուսուցիչներին տեսական ու պրակտիկ մեծ օգնություն պետք է ցույց տա նաև մանկավարժական մամուլը։ Մանկավարժական մամուլն իր էջերում պետք է լուսաբանի դպրոցների աշխատանքի ինչպես հաջողությունները, այնպես էլ թերությունները, պրոպագանդի առաջավոր դպրոցների փորձը, հատկապես պոլիտեխնիկական ուսուցման իրականացման ուղղությամբ։

Դպրոցը հանդիսանում է իդեոլոգիական աշխատանքի կարևորագույն օղակներից մեկը։ Այնտեղ սկսվում է ձևավորվել երեխաների մատերիալիստական աշխարհայացքն ու կոմունիստական գիտակցությունը։ Ահա թե ինչու դպրոցական աշխատանքի ոչ մի բնագավառ դուրս չպետք է մնա պարտիական կազմակերպությունների տեսադաշտից։

Սովետական ժողովուրդը աշխատանքային ու քաղաքական նոր վերելքով դիմավորում է Մեծ Հոկտեմբերի 40-ամյակին։ Ռեսպուբլիկայի բազմահազար ուսուցչության ու դպրոցական բոլոր աշխատողների խնդիրն է՝ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը դիմավորել ժողովրդական կրթության ասպարեզում խոշորագույն նվաճումներով։

---



## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո անցած 40 տարում սովետական ժողովուրդը, կատարելով Վ. Ի. Լենինի պատգամները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իրագործեց երկրի ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կատարեց կուլտուրական ռևոլյուցիա, լիկվիդացրեց շահագործող դասակարգերը և կառուցեց աշխարհում առաջին սոցիալիստական հասարակարգը:

Այդ են վկայում մեր սոցիալիստական Հայրենիքը պատկերող թվերն ու փաստերը, որոնք բերում ենք ստորև:

### ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

★ 1913 թվականին ցարական Ռուսաստանի ամբողջ արդյունաբերությունը թողարկել է 16 միլիարդ ռուբլու արտադրանք՝ գրավելով աշխարհում 5-րդ, իսկ Եվրոպայում 4-րդ տեղը։

Այդ թվականին Ռուսաստանում ձուլվել է 4,2 միլիոն տոննա չուգուն, որը 7 անգամ քիչ է եղել, քան ԱՄՆ-ում, 3 անգամ քիչ, քան Գերմանիայում, 2,5 անգամ քիչ, քան Անգլիայում և 2 անգամ քիչ, քան Ֆրանսիայում. արտադրվել է 29,1 միլիոն տոննա քարածուխ, կամ 17 անգամ քիչ, քան ԱՄՆ-ում, 10 անգամ քիչ, քան Անգլիայում և 6 անգամ քիչ, քան Գերմանիայում. ձուլվել է 4,3 միլիոն տոննա պողպատ։

★ 1928 թվականին ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը հասավ 1913 թվականի մակարդակի 132 տոկոսին, 1940 թվականին՝ 852 տոկոսին, 1956 թվականին՝ 3,021 տոկոսին։

★ Հինգերորդ հնգամյակում կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 3000 արդյունաբերական խոշորագույն ձեռնարկություններ։ Այդ երկու անգամ ավելի է, քան առաջին հնգամյակում կառուցված ու շահագործման հանձնված արդյունաբերական ձեռնարկությունները։

★ 1955 թվականին ՍՍՌՄ-ում գործում էր պետական մանր և խոշոր 206 հազար արդյունաբերական ձեռնարկություն, Արդյունաբերական կոոպերացիայի՝ 107 հազար արհեստանոց ու արդյունաբերական ձեռնարկություն, Սպառողական կոոպերացիայի՝ 28 հազար արդյունաբերական ձեռնարկություն և կոլտնտեսությունների ավելի քան 350 հազար ջարբնոց, ալրաղաց և մանր ձեռնարկություն։

★ 1913 թվականին ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ արտադրության միջոցների արտադրությանը («Ա» խումբ) բաժին էր ընկնում 33,3 տոկոս, իսկ սպառման առարկաների արտադրությանը՝ («Բ» խումբ) 66,7 տոկոս։ 1956 թվականին՝ «Ա» խումբ՝ 70,8 տոկոս, «Բ» խումբ՝ 29,2 տոկոս։

★ 1929 թվականից մինչև 1955 թվականը, այսինքն՝ 26 տարում Սովետական Միությունում արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացել է ավելի քան 20 անգամ, իսկ Ամերիկայի Միացյալ Նահանգները կարողացել են այդ ժամանակաշրջանում իրենց արտադրությունը բարձրացնել 2,3 անգամ, Անգլիան՝ 1,8 անգամ, Ֆրանսիան՝ 1,2 անգամ։

★ Կոմունիստական պարտիայի վարած լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ արդյունաբերության զարգացման գործում հսկայական հաջողություններ են ձեռք բերել ցարական Ռուսաստանի ժամանակներում ճնշված ու տնտեսապես հետամնաց ժողովուրդները։ Ղազախական ՍՍՌ տերիտորիայում գտնվող ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1955 թվականին, 1913 թվականի համեմատությամբ ավելացել է 33 անգամ, Վրացական ՍՍՌ-ում՝ 27 անգամ, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 37 անգամ, Հայկական ՍՍՌ-ում՝ 41 անգամ, Տաջիկական ՍՍՌ-ում՝ 24 անգամ։ Եթե ՍՍՌՄ 1940 թվականի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն ընդունենք 100 տոկոս, ապա 1956 թվականին այն աճել է 354 տոկոսով, Լատվիական ՍՍՌ՝ 671 տոկոսով, Մոլդավական ՍՍՌ՝ 585 տոկոսով, Լիտվիական ՍՍՌ՝ 575 տոկոսով, Հայկական ՍՍՌ՝ 524 տոկոսով, Ղազախական ՍՍՌ՝ 450 տոկոսով։

★ Ցարական Ռուսաստանում 1913 թվականին արտադրվել է մետաղահատ դազգահներ՝ 1.500 հատ, մագիստրալային շոգեքարշեր՝ 477 հատ, ապրանքատար վագոններ՝ 9.700 հատ, մարդատար վագոններ՝ 1.065 հատ։ 1956 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվել է մետաղահատ դազգահներ 121,3 հազար հատ, մագիստրալային շոգեքարշեր՝ 490 հատ, ջերմաքարշեր՝ 161 հատ և մագիստրալային էլեկտրաքարշեր՝ 216 հատ, ապրանքատար վագոններ՝ 40,2 հազար հատ, մարդատար վագոններ՝ 1,799 հատ։

★ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում խոսք անգամ չէր կարող լինել ավտոմոբիլների, տրակտորների, ինքնաթիռների, կոմբայնների արտադրության մասին։ Արդյունաբերության այդ ճյուղերը ՍՍՌՄ-ում հիմք դրվեցին առաջին հնգամյակի տարիներին, որոնք գնալով ավելի աճեցին։ 1930—1933 թվականներին կառուցվեցին և շահագործման հանձնվեցին Գորկու և Մոսկվայի ավտոմոբիլային գործարանները, Ստալինգրադի, Խարկովի և Չելյաբինսկու տրակտորային գործարանները, Սարատովի կոմբայնի գործարանը, Դոնի-Ռոստովի և Տաշքենդի գյուղատնտեսական գործիքների գործարանները։ Եթե 1932 թվականին մեր երկրում արտադրվել է 23,9 հազար ավտոմոբիլ, 48,9 հազար տրակտոր (ֆիզիկական միավոր), 10 հազար հացահատիկի կոմբայն, ապա 1956 թվականին արտադրվել է ավտոմոբիլ՝ 464,6 հազար հատ, տրակտոր՝ 183,5 հազար հատ (ֆիզիկական միավոր), հացահատիկի կոմբայն՝ 81,8 հազար հատ։

★ Քիմիական արդյունաբերությունը ծանր արդյունաբերության կարևորագույն ճյուղերից մեկն է և վճռական դեր է խաղում երկրի ժողովրդական տնտեսության մեջ։ 1913 թվականին արտադրվել է հանքային պարարտանյութ՝ 69 հազար տոննա, կաուստիկ սոդա՝ 55,1 հազար տոննա, կալցիացված սոդա՝ 160 հազար տոննա։ 1956 թվականին արտադրվել է հանքային պարարտանյութ՝ 10,9 միլիոն տոննա, կաուստիկ սոդա՝ 631 հազար տոննա, կալցիացված սոդա՝ 1,545 հազար տոննա։

★ Հայաստանում քիմիական արդյունաբերությունը հիմնվել է Սովետական իշխանության տարիներին։ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ այն աճեց 2 անգամ։ Ռեսպուբլիկայում հանքային պարարտանյութ արտադրվել է 1950 թվականին՝ 57,9 հազար տոննա, 1956 թվականին՝ 182,2 հազար տոննա։



★ 1926 թվականի դեկտեմբերին գործարկվեց Վոլխովի հիդրոէլեկտրակայանի առաջին ագրեգատը, իսկ 1927 թվականի հուլիսին՝ ԶԱԳԷՍ-ի առաջին հերթը։ 1927 թվականի մարտին սկսվեց Դնեպրի հիդրոէլեկտրակայանի կառուցումը, որը շահագործման հանձնվեց 1932 թվականին։ Այս 3 հիդրոէլեկտրակայաններն էլ նախատեսված էին կառուցել ԳՈԷԼՌՈ-ի պլանով։

Էլեկտրակայանների շինարարությունը, առանձնապես խոշոր հիդրոէլեկտրակայանների շինարարությունը, լայն թափ ստացավ հետպատերազմյան հնգամյակներում։ 1956 թվականի սկզբներին ՍՍՌՄ հաշվվում էր մոտ 67 հազար էլեկտրակայան, որոնցից 232-ը ունեն 25 հազար և ավելի կիլովատ կարողություն։

1955 թվականի վերջերին արդյունաբերական էներգիա հաղորդեց Կույբիշևի հիդրոէլեկտրակայանը, որը աշխարհի ամենախոշոր կայանն է և ունի 2,100 հազար կիլովատ հզորություն։

Ներկայումս Անգարա գետի վրա կառուցվում է Բրատսկի հիդրոէլեկտրակայանը 3,200 հազար կիլովատ կարողությամբ։ Այն տարեկան կարտադրի 22 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ 11 անգամ ավելի, քան ամբողջ ցարական Ռուսաստանում արտադրվել է 1913 թվականին։

★ 1954 թվականին Սովետական Միությունում գործարկվեց առաջին ատոմային էլեկտրակայանը՝ 5000 կիլովատ կարողությամբ, որն աշխարհում առաջինն էր։ Մեկ և կես տարվա ընթացքում ատոմային էլեկտրակայանն արտադրել է 20 միլիոն կիլովատ ժամ էներգիա։ Այդ քանակությամբ էլեկտրաէներգիա ջերմակայանից ստանալու համար կպահանջվեր ծախսել ավելի քան 15 էշալոն քարածուխ, մինչդեռ ատոմային էլեկտրակայանում ծախսված է միայն մոտ 5 կիլոգրամ ուրան։

★ Եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանում ընդամենը արտադրվել է 2 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, ապա ՍՍՌՄ-ում 1928 թվականին արտադրվել է 5 միլիարդ, 1956 թվականին՝ 192 միլիարդ, իսկ այս տարվա առաջին կիսամյակին՝ 102 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։ Եթե նախառևոլյուցիոն Ռուսաստանը էլեկտրաէներգիայի արտադրությամբ աշխարհում գրավում էր 15-րդ տեղը, ապա ներկայումս ՍՍՌՄ-ն իր էլեկտրաարդյունաբերությամբ աշխարհում գրավում է երկրորդ, իսկ Եվրոպայում՝ առաջին տեղը։

★ Այժմ Սովետական Հայաստանում յուրաքանչյուր օր արտադրվում է այնքան էլեկտրաէներգիա, որքան արտադրվել է 1913 թվականին Հայաստանում ամբողջ տարվա ընթացքում։

★ Ինչպես Վ. Ի. Լենինն էր ասում, քարածուխը արդյունաբերության հացն է։ Ցարական Ռուսաստանը էներգետիկայի այդ բնագավառի արտադրությամբ շատ ետ էր մնում, որի հետևանքով էլ 1913 թվականին արտադրվել է 29,1 միլիոն տոննա քարածուխ. 1956 թվականին ՍՍՌՄ-ում արդեն ստացվել է 429,2 միլիոն տոննա քարածուխ, իսկ այս տարվա առաջին կիսամյակին՝ 226 միլիոն տոննա։ Քարածխի արդյունահանությամբ ներկայումս ՍՍՌՄ-ը գրավում է երկրորդ տեղը աշխարհում (ԱՄՆ-ից հետո) և արտադրում է ավելի շատ քարածուխ, քան Անգլիան ու Ֆրանսիան միասին վերցրած։

★ ՍՍՌՄ-ում 1928 թվականին ձուլվել է չուգուն՝ 3,3 միլիոն տոննա, պողպատ՝ 4,3 միլիոն տոննա և արտադրվել է սև մետաղից գլանվածք՝ 3,4 միլիոն տոննա։ 1940 թվականին ձուլվել է չուգուն՝ 14,9 միլիոն տոննա, պողպատ՝ 18,3 միլիոն տոննա, արտադրվել է գլանվածք՝ 13,1 միլիոն տոննա։ Անցյալ տարի մեր երկրում ձուլվել է չուգուն՝ 35,8 միլիոն տոննա, պողպատ՝ 48,6 միլիոն տոննա և արտադրվել է գլանվածք՝ 37,8 միլիոն տոննա։ Այս տարվա առաջին կիսամյակին մեր երկրի մետալուրգիական արդյունաբերությունը Հայրենիքին տվել է 18,2 միլիոն տոննա չուգուն, 25 միլիոն տոննա պողպատ և 19,8 միլիոն տոննա գլանվածք։ Միայն Մագնիտագորսկու, Կուզնեցկու, Մակեևկու գործարանները պատերազմից առաջ ավելի շատ չուգուն էին ձուլում, քան ցարական Ռուսաստանի բոլոր մետաղաձուլական գործարանները միասին վերցրած։ Առանձնապես արագ թափով է զարգանում գունավոր մետաղների արտադրությունը, որը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ աճել է՝ զուտ պղինձ՝ 153 տոկոսով, ալյումին՝ 280 տոկոսով, կապար՝ 230 տոկոսով, ցինկ՝ 200 տոկոսով։

★ Սովետական Հայաստանում գունավոր մետալուրգիայի արտադրանքը անցյալ հնգամյակում աճել է մի քանի անգամ։ Վեցերորդ հնգամյակում նախատեսված է ռեսպուբլիկայում գունավոր մետալուրգիայի արտադրությունն ավելացնել 2,5 անգամ։

★ Ներկայումս չուգունի, պողպատի և գլանվածքի արտադրությամբ ՍՍՌՄ աշխարհում գրավում է երկրորդ տեղը (ԱՄՆ-ից հետո)։ 1955 թվականին ՍՍՌՄ-ում ձուլված է այնքան չուգուն, որքան ձուլել են Անգլիան, Ֆրանսիան, Բելգիան, Իտալիան, Ավստրիան և Շվեդիան միասին վերցրած։

★ 1960 թվականին հայրենի մետալուրգիական արդյունաբերությունը տալու է չուգուն 53 միլիոն տոննա, պողպատ՝ 68,3 միլիոն տոննա, գլանվածք՝ 52,7 միլիոն տոննա։

★ Նավթի պաշարով ՍՍՌՄ հանդիսանում է ամենահարուստ երկրներից մեկը աշխարհում։ Եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանում արտադրվել է 10,3 միլիոն տոննա նավթ, ապա 1928 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվել է 11,6 միլիոն տոննա, 1940 թվականին՝ 31,1 միլիոն տոննա, իսկ 1956 թվականին՝ 83,8 միլիոն տոննա նավթ։ Միայն Թուրքմենական ՍՍՌ-ում նավթի հանույթը 1913 թվականի 120 հազար տոննայից 1956 թվականին բարձրացել է 3,430 հազար տոննայի։ Այս տարվա առաջին կիսամյակում մեր երկրում արտադրվել է 46,2 միլիոն տոննա նավթ։ 6-րդ հնգամյա պլանով նախատեսված է 1960 թվականին երկրում նավթի հանույթը հասցնել 135 միլիոն տոննայի։ Դեռևս 1938 թվականին իր նավթի հանույթով ՍՍՌՄ Եվրոպայում գրավեց առաջին տեղը։

★ 1913 թվականին ցարական Ռուսաստանում արտադրվել է ընդամենը 1,8 միլիոն տոննա ցեմենտ, իսկ 1956 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվել է 24,8 միլիոն տոննա։

★ Արտադրության միջոցների արտադրության բուռն զարգացման հետ միասին մեր երկրում տարեց-տարի աճում է ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը։ 1913 թվականին արտադրվել է բամբակե գործվածքներ 2,582 միլիոն մետր, բրդե գործվածքներ՝ 103 միլիոն մետր, մետաքսե գործվածքներ՝ 42,6 միլիոն մետր, կաշվե կոշիկներ՝ 60 միլիոն զույգ, միս՝ 1,042 հազար տոննա, ձուկ՝ 1,018 հազար տոննա, կենդանական յուղ, պանիր և այլ կաթնամթերքներ (կաթի վերածած) 2,3 միլիոն տոննա, շաքարավազ՝ 1,3 միլիոն տոննա, հրուշակեղեն՝ 109 հազար տոննա, օճառ՝ 128 հազար տոննա։ Անցյալ տարի ՍՍՌՄ թեթև և սննդի արդյունաբերությունը թողարկել է բամբակե գործվածքներ՝ մոտ 5,5 միլիարդ մետր, բրդե գործվածքներ՝ 267,7 միլիոն մետր, մետաքսե գործվածքներ՝ 754,3 միլիոն մետր, կաշվե կոշիկներ՝ 289,8 միլիոն զույգ, միս՝ (առանց կոլտնտեսությունների արտադրության) 2660 հազար տոննա, ձուկ՝ 2850 հազար տոննա, կենդանական յուղ, պանիր և այլ կաթնամթերքներ (կաթի վերածած) 17,3 միլիոն տոննա, շաքարավազ՝ 4,3 միլիոն տոննա, հրուշակեղեն՝ 1,579 հազար տոննա, օճառ 1,269 հազար տոննա։ Այս տարվա առաջին կիսամյակում ՍՍՌՄ-ում արտադրվել է ավելի շատ բամբակե, բրդե գործվածքներ, քան ամբողջ 1913 թվականի ընթացքում, իսկ մետաքսե գործվածքներ մոտ 10 անգամ ավելի, քան 1913 թվականին, կաշվե կոշիկներ մոտ 3 անգամ ավելի։



★ Նախառևոլյուցիոն Հայաստանում շաքարի, բրդե գործվածքների, մետաքսե գործվածքների արդյունաբերություն չկար, գրեթե բացակայում էր բամբակե գործվածքների և կոշիկի գործարանային արդյունաբերությունը։ 1956 թվականին Սովետական Հայաստանում արտադրվել է բամբակե գործվածքներ՝ մոտ 57 միլիոն մետր, բրդե գործվածքներ՝ 3 միլիոն մետր, մետաքսե գործվածքներ՝ 5,6 միլիոն մետր, կաշվե կոշիկներ՝ 3,106 հազար զույգ, շաքարավազ՝ 9,4 հազար տոննա։

★ Պարտիայի՝ երկրի ինդուստրացման քաղաքականության հաղթանակը ապահովեց ՍՍՌՄ պաշտպանունակության ամրապնդումը։ Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ ցարական Ռուսաստանի ռազմական արդյունաբերությունը պատերազմի վերջին երեք տարում տարեկան թողարկել է հրանոթ՝ մոտ 3.900 հատ, հաստոցավոր և թեթև գնդացիր՝ մոտ 8.900 հատ, հրացան՝ 1.050 հազար հատ, ականանետ՝ 6,200 հատ, արկ, ական և ռումբ 16,3 միլիոն հատ, իսկ տանկ և ինքնաթիռ գրեթե չի արտադրվել։ Հայրենական Մեծ պատերազմի վերջին երեք տարիներին, յուրաքանչյուր տարի ՍՍՌՄ-ում թողարկվել է տանկ և ինքնագնաց հրանոթ՝ 30 հազար հատ, ինքնաթիռ՝ 40 հազար հատ, հրանոթ՝ 120 հազար հատ, հաստոցավոր և թեթև գնդացիր՝ 450 հազար հատ, հրացան՝ 5 միլիոն հատ, ականանետ՝ 100 հազար հատ, արկ, ական և ռումբ՝ 240 միլիոն հատ։

★ Այս տարվա երկրորդ կեսի սկզբներին ՍՍՌՄ-ում արձակվեց գերհեռու միջմայրցամաքային, բազմաստիճան բալեստիկ հրթիռ, որի թռիչքը տեղի է ունենում շատ մեծ բարձրության վրա, որին մինչև այժմ դեռ չէին հասել։

★ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին հիտլերյան հորդաները մեր Հայրենիքին հսկայական վնաս պատճառեցին։ Բավական է նշել, որ նրանք ՍՍՌՄ-ից ժամանակավորապես զավթած շրջաններում բարբարոսաբար ավերեցին 31.850 արդյունաբերական ձեռնարկություն։ Այդ թվում 749 ծանր ու միջին մեքենաշինության գործարան, 1.135 ածխահոր, 213 մարտենյան վառարան, 61 խոշորագույն և մեծ քանակությամբ փոքր էլեկտրակայաններ։ 1946 թվականին երկրի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը կազմում էր 1940 թվականի 77 տոկոսը։

★ Հետպատերազմյան առաջին իսկ հնգամյակում սովետական ժողովուրդը կարողացավ բուժել պատերազմից ստացած իր վերքերը, արագ տեմպերով վերականգնել ժողովրդական տնտեսությունն ու մտահոգվել նրա հե-

տագա զարգացմամբ։ Արդեն 1950 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը հասավ 1940 թվականի մակարդակի 173 տոկոսին։

## ՏՐԱՆՍՊՈՐՏ

★ ՍՍՌՄ-ը երկաթուղու մեծ ցանց ունեցող տերություն է։ 1917—1955 թվականներին կառուցվել է մոտավորապես 50 հազար կիլոմետր նոր երկաթուղի։ Բեռնաշրջանառության ծավալով ՍՍՌՄ աշխարհում գրավում է առաջին տեղը։ Նախատեսված է 6-րդ հնգամյակում շահագործման հանձնել 8100 կիլոմետր էլեկտրիֆիկացված երկաթուղային գիծ։

★ Ներքին ջրային ուղու երկարությամբ ՍՍՌՄ գրավում է առաջին տեղն աշխարհում։ Գետային ուղու ընդհանուր երկարությունը, որը պիտանի է նավագնացության համար, հասնում է 500 հազար կիլոմետրի։ Դրանից 132 հազար կիլոմետրը 1955 թվականին օգտագործվում էր նավագնացության համար։

★ Հատկապես հետպատերազմյան հնգամյակի տարիներին ՍՍՌՄ-ում արագ թափով զարգանում է օդային տրանսպորտը։ Բավական է նշել, որ եթե 1940 թվականի ուղևորների փոխադրումն ընդունենք 100 տոկոս, ապա 1950 թվականին այն կազմում էր 392, իսկ 1955 թվականին՝ 728 տոկոս։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

★ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մեկընդմիշտ ազատագրեց Ռուսաստանի բազմամիլիոն աշխատավոր գյուղացիությանը և վճռեց հողային հարցը։

★ 1917 թվականի հոկտեմբերի 26-ի (նոյեմբերի 8-ի) գիշերը Սովետների Համառուսաստանյան II համագումարն ընդունեց հողի վերաբերյալ դեկրետ, որով հողի կալվածատիրական սեփականությունը անհապաղ, առանց որևէ հատուցման վերացվեց։ Հողը դարձավ համաժողովրդական, պետական սեփականություն և դադարեց առ ու ծախի առարկա լինել։ Հողի ամբողջ ընդերքը, անտառները, ջրերը անցան ժողովրդին՝ որպես սեփականություն։

★ Հողի մասին դեկրետի համաձայն գյուղացիությունը ստացավ ավելի քան 150 միլիոն դեսյատին նոր հողեր, որոնք առաջ գտնվում էին կալվածատերերի, բուրժուազիայի, ցարական տան, վանքերի, եկեղեցիների ձեռքին։ Բացի այդ, կոլտնտեսություններ մտած աշխատավոր գյուղացիներին անվճար անցավ 80 միլիոն հեկտար հող, որը առաջ գտնվում էր կուլակների տրամադրության տակ։ Գյուղացիությունը միաժամանակ ազատվեց կալվածատերերին ամեն տարի 700.000 ռուբլի ոսկով վարձակալային վճարումներից, ինչպես նաև հող գնելու ծախսերից։

★ Սովետական իշխանության տարիներին աշխատավոր գյուղացիությունը հողի հետ միասին բազմակողմանի օգնություն ստացավ և մեր մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի կոոպերատիվ պլանի համաձայն ամբողջապես ընդգրկվեց կոլտնտեսություններում, ակտիվորեն մասնակցեց սոցիալիզմի կառուցմանը և բանվոր դասակարգի ղեկավարությամբ ապահովեց նրա հաղթանակը։

★ Այժմ երկրում կան 78,9 հազար կոլտնտեսություն, ուր ընդգրկված են 19,9 միլիոն գյուղացիական տնտեսություն։ Կոլտնտեսություններին սպասար-



կում են 8000 ՄՏ կայան, որոնք զինված են առաջավոր մեքենայական տեխնիկայով։ Երկրում կան նաև 5800 սովետական տնտեսություն, որոնց ցանքատարածությունը 1957 թվականին կազմել է մոտ 51 միլիոն հեկտար, կամ երկրի ընդհանուր ցանքատարածության ավելի քան մեկ քառորդը՝ 1953 թվականի 10 տոկոսի դիմաց։

★ Նախասովետական ժամանակաշրջանի համեմատությամբ երկրում խոշոր չափով աճել են գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները։ 1913 թվականի 118,2 միլիոն հեկտարի դիմաց 1956 թվականին ամբողջ ցանքատարածությունը կազմել է 194,7 միլիոն հեկտար։ 1913 թվականի 104,6 միլիոն հեկտարի դիմաց 1956 թվականին ցանվել է 128,3 միլիոն հեկտար հացահատիկային կուլտուրաներ։ Այդ նույն թվականներին գյուղատնտեսական մյուս կուլտուրաների ցանքատարածությունները համապատասխանաբար կազմել են՝ տեխնիկական կուլտուրաներ՝ 4,9 : 13,1, բանջարաբոստանային կուլտուրաներ և կարտոֆիլ՝ 5,1 : 11,6, կերային կուլտուրաներ՝ 3,3 : 41,7 միլիոն հեկտար։

★ Սովետական իշխանության տարիներին գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը մեծ չափով աճել է բոլոր ռեսպուբլիկաներում։ Հայկական ՍՍՌ-ում գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունը 1913 թվականի 346 հազարի դիմաց 1956 թվականին հասել է 449 հազար հեկտարի։ Այդ նույն թվականներին գարնանացան և աշնանացան հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները համապատասխանաբար կազմել են 192 : 205, բամբակ՝ 15,3 : 16, կարտոֆիլ՝ 7 : 21, բանջարեղեն՝ 3 : 9 հազար հեկտար։ 1953 թվականի համեմատությամբ խաղողի այգիներն ընդարձակվել են 2 անգամ, պտղատու այգիները՝ 4 անգամ, ծխախոտի պլանտացիաները՝ 90 անգամ։ Շաքարի ճակնդեղի ցանքատարածությունը 1940 թվականի 1600 հեկտարի փոխարեն 1956 թվականին հասել է 4000 հեկտարի, իսկ եգիպտացորենի ցանքատարածությունը 2000-ից հասել է 18 հազար հեկտարի։

★ 1956 թվականին երկրի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսություններն արտադրել են 3,304 միլիոն փութ ապրանքային հացահատիկ, 1913 թվականին արտադրված 1,300 միլիոն փթի դիմաց։ 1913 թվականի համեմատությամբ 1956 թվականին երկրում խոշոր չափով աճել է նաև բամբակի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի, կարտոֆիլի և բանջարանոցային կուլտուրաների արտադրանքը։

★ Սովետական իշխանության տարիներին մեծ չափով աճել է նաև անասունների գլխաքանակը։ 1916 թվականի 58,4 միլիոնի դիմաց առ 1-ը հոկտեմբերի 1956 թվականի երկրում եղել է 70,4 միլիոն գլուխ խոշոր եղջերավոր անասուն։ 1916 թվականի 28,8 միլիոն կովի դիմաց առ 1-ը հոկտեմբերի 1956 թվականի եղել է 30,9 միլիոն կով, 23,0 միլիոն խոզի դիմաց՝ 56,5 միլիոն, 96,3 միլիոն ոչխարների ու այծերի դիմաց՝ 145,7 միլիոն։ Այդ նույն ժամանակում Հայկական ՍՍՌ-ում ոչխարների ու այծերի գլխաքանակը 1217 հազարից հասել է 1866 հազար գլխի, ոչխարներինը՝ 999 հազարից 1647 հազար գլխի, խոզերինը՝ 16 հազարից՝ 135 հազար՝ գլխի։

Միայն վերջին մեկ տարում (1956 թ. հուլիսի 1-ից մինչև 1-ը հուլիսի 1957 թ.) ամբողջ ՍՍՌՄ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավե-

լացել է 3 միլիոն գլխով, խոզերինը՝ 5 միլիոն 300 հազար, ոչխարներինն ու այծերինը՝ 4 միլիոն 900 հազար գլխով։

★ Ծանր ինդուստրիայի զարգացման պարտիայի քաղաքականության հետևողական կենսագործումը հնարավորություն տվեց գյուղատնտեսությանը զինելու ժամանակակից առաջնակարգ տեխնիկայով։ Այժմ երկրի դաշտերում աշխատում են ավելի քան 1,5 միլիոն տրակտոր (15 ուժանոցի վերածած), մոտ 380 հազար կոմբայն և միլիոնավոր գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Միայն վերջին երեք տարում սոցիալիստական արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տվեց ավելի քան 650 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 142 հազար հացահատիկային կոմբայն, 345 հազար բեռնատար ավտոմեքենա և ուրիշ շատ մեքենաներ։ Դա հնարավորություն տվեց կարճ ժամանակամիջոցում յուրացնելու 36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր, որոնք համարյա 1,7 անգամ գերազանցում են Մեծ Բրիտանիայի, Իտալիայի ու Ֆրանսիայի հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները միասին վերցրած։

★ Նախառևոլյուցիոն գյուղատնտեսության մեջ բանող անասունները համարյա միակ քաշող ուժն էին. մեքենայական շարժիչները գյուղատնտեսության մեջ մեկ տոկոսից էլ պակաս էին։ Այլ է պատկերը ներկայումս. ՍՍՌՄ գյուղատնտեսության մեջ մեքենայական շարժիչ ուժերը կազմում են բոլոր կարողությունների 95 տոկոսը։

★ Գյուղատնտեսության մեջ գնալով աճում են կապիտալ ներդրումները. 1951—1953 թվականների 29 222 միլիոն ռուբլու դիմաց 1954—1956 թվականներին կապիտալ ներդրումները կազմել են 57,103 միլիոն ռուբլի։

★ Լուրջ միջոցներ ձեռնարկվեցին ՄՏ կայանները և կոլտնտեսությունները մեխանիզատորներով, մասնագետներով ու փորձված ղեկավարներով ապահովելու համար։ Քաղաքներից ու արդյունաբերական կենտրոններից ՄՏ կայաններն ուղարկվեցին 25 հազար տեխնիկներ ու ինժեներներ, իսկ կոլտնտեսությունները՝ ավելի քան 120 հազար գյուղատնտեսներ ու զոոտեխնիկներ և 30 հազար կոլտնտեսությունների նախագահներ։

★ Ձեռնարկված վերոհիշյալ և մյուս միջոցառումների շնորհիվ զգալիորեն բարձրացավ հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։ 1953 թվականի համեմատությամբ 1956 թվականին հացահատիկի համախառն արտադրանքն ավելացավ 54,5 տոկոսով, կարտոֆիլինը՝ 12,9 միլիոն տոննայով, բանջարեղենինը՝ 2,4 միլիոն տոննայով։ Ավելի են արտադրվել նաև տեխնիկական կուլտուրաները։

Զգալիորեն աճել է անասնաբուծական մթերքների արտադրանքը։ 1950 թվականի համեմատությամբ 1956 թվականին մսի արտադրանքը (սպանդանոցային քաշով) աճել է 33,2 տոկոսով, կաթինը՝ 39,4 տոկոսով։ Այս մթերքների արտադրանքը կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում աճելու է ավելի քան 2 անգամ։

★ Գյուղատնտեսության արտադրության բարձրացման շնորհիվ 1953 թվականի համեմատությամբ 1956 թվականին ՍՍՌՄ-ում հաց մթերվել է 1 միլիարդ 400 միլիոն փթով ավելի, կաթ՝ 6 միլիոն 700 հազար տոննայով, միս՝ 664 հազար տոննայով, կարտոֆիլ՝ 2 միլիոն 900 հազար տոննայով, բանջարեղեն՝ 1 միլիոն 400 հազար տոննայով ավելի։

Հաջողությամբ կատարվել է անասնաբուծական մթերքների մթերման ու



գնման 1957 թվականի առաջին կիսամյակի պլանը։ 1956 թվականի առաջին կիսամյակում մթերված ու գնված 1046,7 հազար տոննա մսի (կենդանի քաշով) դիմաց 1957 թվականի առաջին կիսամյակում մթերվել ու գնվել է 1440,6 հազար տոննա, 7580 հազար տոննա կաթի դիմաց՝ 9426 հազար տոննա, 153,1 հազար տոննա բրդի դիմաց՝ 180,8 հազար տոննա, 2357,5 միլիոն հատ ձվի դիմաց՝ 3173,7 միլոն հատ ձու։

★ Հայաստանում 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելի է մթերվել ու գնվել խաղող՝ 1,8 անգամ, պտուղներ՝ 1,7 անգամ, բանջարեղեն՝ 30 տոկոսով, միս՝ 2.088 տոննա (կենդանի քաշով), կաթ՝ 4.556 տոննա, բուրդ՝ 205 տոննա։ Ռեսպուբլիկայում 1957 թվականի առաջին կիսամյակում, 1956 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, մթերվել ու գնվել է 21 տոկոսով ավելի կաթ, 9 տոկոսով ավելի բուրդ։

★ Գյուղատնտեսական ապրանքային մթերքների արտադրության ավելացման և նրանց գնման ու մթերման գների բարձրացման շնորհիվ կոլտնտեսությունների դրամական եկամուտը ՍՍՌՄ-ում 1953 թվականի 49,6 միլիարդ ռուբլու դիմաց, 1956 թվականին հասավ 94,5 միլիարդ ռուբլու, կամ աճեց մոտ 2 անգամ։

★ Կատարելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները՝ երկրի գյուղատնտեսության աշխատողները բոլոր միջոցները գործի են դրել յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ առաջիկա տարիներին ԱՄՆ-ին հասնելու՝ պարտիայի կոչի կենսագործման համար, որը խոշոր առաջընթաց քայլ է ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի կատարման ճանապարհին։

## ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

★ Արդյունաբերության ու գյուղատնտեսության արագ զարգացումը հնարավորություն տվեց զգալիորեն բարձրացնելու սովետական ժողովրդի բարեկեցությունը, որը կոմունիստական պարտիան համարել ու համարում է իր ամբողջ գործունեության հիմնական նպատակը։

★ Ժողովրդի բարեկեցության բարձրացման առավել ընդհանրացնող ցուցանիշը Սովետական Միության ազգային եկամտի աճն է։ Ազգային եկամուտը ՍՍՌՄ-ում ամբողջապես պատկանում է ժողովրդին և ավելի արագ է աճում, քան կապիտալիստական երկրներում։ 1945—1955 թվականներին ՍՍՌՄ ազգային եկամուտը միջին հաշվով տարեկան աճել է 12,8 տոկոսով, իսկ ԱՄՆ-ինը՝ միայն 1,7 տոկոսով։ 1956 թվականին Սովետական Միության ազգային եկամուտը ավելի քան 19 անգամ գերազանցում էր Ռուսաստանի 1913 թվականի ազգային եկամտին։ Ազգային եկամուտը մեզ մոտ ավելի արագ է աճել վերջին տարիներս։ Այսպես, 1950 թվականի համեմատությամբ այն 1953 թվականին կազմել է 136, 1954 թվականին՝ 153, 1955 թվականին՝ 171, իսկ 1956 թվականին՝ 192 տոկոս։

★ ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվներում նախատեսված է վեցերորդ հնգամյակում ՍՍՌՄ ազգային եկամուտն ավելացնել 60 տոկոսով։ Պարտիայի առաջադրած այդ խնդիրը հաջողությամբ կենսագործվում է։

★ Վերջին տարիների ընթացքում պարտիան ու կառավարությունը խոշոր միջոցառումներ իրականացրին սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար. բարձրացվեցին պետական կենսաթոշակները, միջնակարգ դպրոցներում և բարձրագույն ուսումնական հաստատություններում վերացվեց ուսման վարձը, ավելացվեց կանանց հղիության և ծննդաբերության արձակուրդների տևողությունը, երկու ժամով կրճատվեց աշխատանքային օրը նախահանգստյան և նախատոնական օրերին, կիրառվեց բանվորների աշխատանքային կրճատ օր ածխարդյունաբերության մեջ, ընթացիկ տարվա հունվարի մեկից բարձրացվեց ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը, սահմանվեց վեցժամյա բանվորական օր 16—18 տարեկան դեռահասների համար, բարձրացվեցին գյուղատնտեսական մթերքների գնման ու մթերման գները և այլն։ Հենց միայն այդ միջոցառումները քաղաքային ու գյուղական բնակչությանը տարեկան ավելի քան 35 միլիարդ ռուբլու լրացուցիչ եկամուտ տվին։

★ Վեցերորդ հնգամյակում բանվորների ու ծառայողների աշխատավարձը բարձրանալու է մոտավորապես 30 տոկոսով, իսկ կոլտնտեսականների դրամական ու բնամթերային եկամուտները՝ առնվազն 40 տոկոսով։ Այդ ուղղությամբ արդեն խոշոր քայլեր են արված. 1950 թվականի համեմատությամբ բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 1955 թվականին կազմել է 139, իսկ 1956 թվականին՝ 144 տոկոս։ Կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտները համապատասխանաբար կազմել են 150 և 168 տոկոս։

★ Սովետական կառավարությունն ամեն տարի հսկայական միջոցներ է ծախսում սոցիալական ապահովագրության, թոշակների, բազմազավակ ու միայնակ մայրերին տրվող նպաստների, ուսանողների թոշակների, բժշկական ձրի բուժման, սանատորիաների և բնակչության այլ կարիքների համար։ Բավական է նշել, որ սոցիալական-կուլտուրական միջոցառումների համար միայն ընթացիկ տարում պետական բյուջեով հատկացված է 188,2 միլիարդ ռուբլի, որը 24,5 միլիարդ ռուբլով ավելի է 1956 թվականին կատարված հատկացումներից։

★ Համաձայն ՍՄԿԿ XX համագումարի որոշման վերանայվեց կենսաթոշակների վճարման նախկին կարգը և լուրջ բարելավում մտցվեց այդ գործում։ Պետական կենսաթոշակների նոր օրենքի համաձայն 1956 թվականի հոկտեմբերի 1-ից զգալիորեն ավելացվեցին համարյա 15 միլիոն մարդկանց պետական կենսաթոշակները։ Բացի դրանից, մինչև 1956 թվականի վերջը ավելացված կենսաթոշակ էին ստանում կենսաթոշակի նոր անցած մոտավորապես մեկ միլիոն մարդ։ Կենսաթոշակների բարձրացման շնորհիվ բանվորների և ծառայողների տարեկան եկամուտը ավելացավ մոտավորապես 14 միլիարդ ռուբլով։

Հայկական ՍՍՌ-ում 1957 թվականի առաջին կիսամյակում պետական բյուջեից վճարվել է 154 միլիոն ռուբլի կենսաթոշակ, 1956 թվականի առաջին կիսամյակի 68 միլիոն ռուբլու դիմաց։

1957 թվականի վեց ամսում ՍՍՌՄ բնակչությունը բոլոր վճարումների և արտոնությունների ձևով պետությունից ստացել է 97,5 միլիարդ ռուբլի, որ 20 տոկոսով ավելի է, քան 1956 թվականի առաջին վեց ամսում ստացածը։



★ Սովետական իշխանության տարիներին հսկայական աշխատանք է կատարված բնակարանային շինարարության բնագավառում. բնակարանային ընդհանուր ֆոնդը քաղաքներում և քաղաքատիպ ավաններում նախասովետական շրջանի համեմատությամբ ավելացել է 3,7 անգամ։ Պետական ու կոոպերատիվ կազմակերպությունների, ինչպես նաև քաղաքային բնակչության միջոցով 1953 թվականին կառուցված է 30,8 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, 1954 թվականին՝ 32,5, 1955 թվականին՝ 33,4, իսկ 1956 թվականին՝ 36 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Կոլտնտեսականները և գյուղական ինտելիգենցիան 1956 թվականին կառուցել են 700 հազար բնակելի տուն։

★ Տարեց-տարի աճում են բնակարանային շինարարությանը հատկացվող կապիտալ ներդրումները։ Հենց միայն Հայկական ՍՍՌ-ում այդ նպատակին հատկացված պետական կապիտալ ներդրումները 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ աճել են 32 տոկոսով։

★ Բնակելի տների կառուցման բացարձակ և հարաբերական մասշտաբներով Սովետական Միությունն արդեն անցել է Արևմտաեվրոպական զարգացած կապիտալիստական երկրներից։ Բայց, չնայած դրան, մեզ մոտ բնակարանային մեծ պահանջ կա։ Բնակարանաշինարարության տեմպերը դեռևս ետ են մնում ժողովրդական տնտեսության զարգացումից, քաղաքների, արդյունաբերական կենտրոնների աճից։ Հաշվի առնելով այդ, պարտիան ու կառավարությունը խոշոր միջոցառումներ են ձեռնարկել բնակարանաշինարարությունը ամեն կերպ ծավալելու համար։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1957 թվականի հուլիսի 31-ի որոշմամբ նախատեսված է 1956—1960 թվականների պետական բնակարանային շինարարության գծով կառուցել և շահագործման հանձել 215 միլիոն քառակուսի մետր ընդհանուր բնակելի տարածություն, քաղաքներում, քաղաքատիպ ավաններում, ՄՏ կայաններում, սովետական տնտեսություններում և անտառարդտնտեսություններում բնակչության միջոցների հաշվին և պետական վարկի օգնությամբ՝ 113 միլիոն քառակուսի մետր բնակելի ընդհանուր տարածություն, կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի ուժերով՝ 4 միլիոն տուն։

Նույն այդ որոշմամբ նախատեսված է Հայկական ՍՍՌ-ում 1956—1960 թվականներին պետական բնակարանային շինարարության գծով կառուցել 1,2 միլիոն քառակուսի մետր բնակելի ընդհանուր տարածություն, իսկ քաղաքներում, ավաններում, ՄՏ կայաններում, սովետական տնտեսություններում և անտառարդտնտեսություններում՝ 0,9 միլիոն քառակուսի մետր։

★ 40 տարվա ընթացքում մեր երկրում խոշոր հաջողություններ են ձեռք բերված նաև ժողովրդական առողջապահության բնագավառում։ Բավական է նշել, որ 1913 թվականի 28068 բժշկի (ներառյալ ատամնաբուժներ) դիմաց, 1956 թվականին կային 353,971 բժիշկ, 207,3 հազար հիվանդանոցային մահճակալի դիմաց՝ 1360,0 հազար, 55 հազար մշտական մսուրների տեղի դիմաց՝ 965 հազար տեղ, մշտական մանկապարտեզներում եղած 4 հազար երեխայի դիմաց՝ 1870 հազար երեխա։ Պետական բյուջեի հաշվին ՍՍՌՄ-ում միայն 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, հիվանդանոցային հիմնարկներում մահճակալների թիվը աճեց ավելի քան 64 հազարով, մշտական մսուրների տեղերի թիվը՝ ավելի քան 50 հազարով, դեղորայքի, բժշկական սարքերի ու գործիքների արտադրությունը՝ 22 տոկոսով։ 1957 թվականի

առաջին կիսամյակում հիվանդանոցների ու պոլիկլինիկաների գործարկումն ավելացավ 22 տոկոսով, մանկապարտեզներինը՝ 23 և մանկամսուրներինը՝ 31 տոկոսով։ Այս և մյուս միջոցառումների շնորհիվ երկրում վաղուց անհետացել են համաճարակները, իսպառ վերացել և մեծապես նվազել են մի շարք հիվանդություններ, մեծ չափով պակասել է մահացության թիվը։

## ԱՌԵՎՏՈՒՐ

★ Բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների եկամուտների բարձրացման շնորհիվ բարձրանում են նաև նրանց պահանջմունքները լայն սպառման ապրանքների, ամենօրյա գործածության առարկաների նկատմամբ։ Բնակչության պահանջմունքներն այդ ուղղությամբ բավարարելու նպատակով նախատեսված է վեցերորդ հնգամյակում պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունն ավելացնել մոտավորապես 50 տոկոսով, ընդսմին ավելացնելով մանրածախ ապրանքաշրջանառության առավել բարձր աճ գյուղում։ Միաժամանակ նախատեսված է հնգամյակի ընթացքում երկրում ճաշարանների ցանցն ավելացնել 50 տոկոսով և հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքը՝ 75 տոկոսով։

★ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառությունն ավելացել է 9 տոկոսով, իսկ 1957 թվականի առաջին կիսամյակում պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալը (ներառյալ Ցենտրոսոյուզի կոմիսիոն առևտուրը) կազմեց 296 միլիարդ ռուբլի և 1956 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, համադրելի գներով ավելացավ 40 միլիարդ ռուբլով, կամ 16 տոկոսով։ Գյուղում առևտուր կատարող սպառողական կոոպերացիայի ապրանքաշրջանառությունը նույն ժամանակաշրջանում աճեց 21 տոկոսով։

## ԿՈՒԼՏՈՒՐԱ

★ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում բնակչության 75 տոկոսը (9 տարեկանից բարձր) անգրագետ էր։ Ցարական գաղութարարների վարած քաղաքականության հետևանքով վիճակը ավելի վատ էր երկրի ծայրամասերում։ Բավական է նշել, որ ադրբեջանցիների միայն 10 տոկոսն էր գրագետ, ուզբեկների՝ 2—3 տոկոսը, ղազախների՝ 2 տոկոսը, կիրգիզների՝ 1—2 տոկոսը, իսկ տաջիկների՝ միայն 0,5 տոկոսն էր գրագետ։

1914/15 թվականներին երկրում գործել են 124 հազար դպրոց, 450 տեխնիկում և մասնագիտական այլ միջնակարգ դպրոցներ, 105 բարձրագույն ուսումնական հաստատություն։ Այժմ ՍՍՌՄ-ում գործում են ավելի քան 213 հազար դպրոց, 3642 տեխնիկում և մասնագիտական այլ միջնակարգ դպրոցներ, 767 բարձրագույն ուսումնական հաստատություն։

★ 1914/15 թվականներին հանրակրթական դպրոցներում սովորել են 9,6 միլիոն աշակերտ, տեխնիկումներում և մասնագիտական այլ միջնակարգ դպրոցներում՝ 54,3 հազար ուսանող, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 127,4 հազար ուսանող։ Այժմ մեր երկրի հանրակրթական դպրոցներում սովորում են 30,1 միլիոն աշակերտ, տեխնիկումներում և մասնագիտական այլ միջնակարգ դպրոցներում՝ ավելի քան 2 միլիոն ուսանող (ներառյալ հեռակայողները), բարձրագույն ուսումնական հաստատություններում ավելի քան 2 միլիոն ուսանող (ներառյալ հեռակայողները)։



★ 1914/15 թվականներին Հայաստանի հանրակրթական դպրոցներում սովորել են 34,7 հազար աշակերտ և միջնակարգ մասնագիտական դպրոցներում՝ 100 մարդ. բարձրագույն ուսումնական հաստատություն գոյություն չի ունեցել։ Այժմ Սովետական Հայաստանի բոլոր տիպի հանրակրթական դըպրոցներում սովորում են 290 հազար աշակերտ, տեխնիկումներում և միջնակարգ մասնագիտական դպրոցներում՝ 16,5 հազար ուսանող (այդ թվում հեռակայողներ), իսկ բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 20,2 հազար ուսանող (այդ թվում հեռակայողներ)։

★ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, 1943 թվականի նոյեմբերին, ՍՍՌՄ կառավարության որոշմամբ կազմակերպվեց Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան, որի ինստիտուտների և գիտական հաստատությունների թիվը ներկայումս հասնում է 30-ի։ Միայն ակադեմիայի սիստեմում ընդգրկված են ավելի քան 500 գիտական աշխատողներ։

★ Նախառևոլյուցիոն Ռուսաստանում ակումբների- գրադարանների, կինոսարքավորումների և թատրոնների թիվը շատ աննշան էր։ Այժմ ՍՍՌՄ-ում կան շուրջ 400 հազար գրադարան, 126 հազար ակումբ, 63.341 կինոսարքավորում։ Միայն մեր՝ Հայկական ՍՍՌ-ում կան ավելի քան 1000 մասսայական գրադարան, 378 կինոսարքավորում, 10 պետական թատրոն, ինչպես նաև օպերա, կինոստուդիա, 946 ակումբ, 52 կուլտուրայի տուն։

★ Հայ գրականությունն ու մամուլը չտեսնված ծաղկման հասան Սովետական իշխանության տարիներին։ Բավական է նշել, որ 1920 թվականից մինչև 1957 թվականի առաջին կիսամյակը տպվել է 19 հազար 711 անուն գիրք, մոտ 109 միլիոն 409 հազար տիրաժով։ Միայն 1954 թվականին լույս է տեսել 934 անուն գիրք և բրոշյուր, 6 միլիոն 415 հազար տիրաժով, մինչդեռ 1913 թվականին Հայաստանում տպագրվել է 55 անուն գիրք՝ 100 հազար ընդհանուր տիրաժով։ Իսկ դաշնակների տիրապետության ժամանակ՝ 1918 թվականին, ընդամենը հրատարակվել է 6 անուն գիրք։

1956 թվականին Հայաստանում լույս են տեսել 51 անուն ռեսպուբլիկական և շրջանային թերթեր, որոնց տարեկան տիրաժը կազմել է 50 միլիոն 345 հազար օրինակ, 31 անուն ամսագրեր, տեղեկագրեր, գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատություններ, բյուլետեններ և այլ տիպի պարբերականներ՝ 1 միլիոն 118 հազար տիրաժով։

Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ գնալով ծաղկում ու բարգավաճում է մեր երկրի բոլոր ժողովուրդների՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

# ԼԵՆԻՆՅԱՆ «ԻՍԿՐԱ»-Ն ՀԱՅԱՍՏԱՆ ԱՌԱՔԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

Բոլշևիկյան պարտիայի և նրա մամուլի պատմության մեջ պայծառ էջ է կազմում լենինյան «Իսկրա»-ն։ Հանդիսանալով համառուսական առաջին անլեգալ մարքսիստական քաղաքական թերթը, Վ. Ի. Լենինի հիմնադրած «Իսկրա»-ն վճռական դեր խաղաց Ռուսաստանի և միջազգային բանվորական շարժման պատմության մեջ, Ռուսաստանում մարքսիստական նոր տիպի պարտիայի ստեղծման գործում։ «Իսկրա»-ն ջախջախիչ հարվածներ հասցրեց «էկոնոմիստներին», ռուսական և միջազգային օպորտունիզմին, մշակեց նոր տիպի մարքսիստական պարտիայի ծրագիրը, նախապատրաստեց ՌՍԴԲՊ II համագումարը և Կոմունիստական պարտիայի հիմքը դրեց։

Վ. Ի. Լենինը մշակելով և զարգացնելով համառուսական քաղաքական լրագրի օգնությամբ պարտիա ստեղծելու իր պլանը, ցույց տվեց, որ «լրագիրը ո՛չ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ է և կոլեկտիվ ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ է» (Երկեր, հատ. 5, էջ 23)։

«Իսկրա»-ի ստեղծման առաջին իսկ օրից Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն էր դարձնում նրա գործակալների վրա, հոգ էր տանում «Իսկրա»-ն Ռուսաստան առաքելու մասին, այդ նպատակով օգտագործելով բոլոր լեգալ ու անլեգալ միջոցները։

«Իսկրա»-ն Ռուսաստան էր բերվում կոնսպիրատիվ միջոցներով՝ Ռումինիայի, Պարսկաստանի, Ալեքսանդրիայի, Արխանգելսկի, Ֆինլանդիայի վրայով։ Պարսկաստանի վրայով «Իսկրա»-ի առաքումը Բաքվի իսկրայականները կազմակերպել էին դեռ 1901 թվականից սկսած։ Այդ թվականին նրանք ստացան պարտիական գրականության չորս կապոց, այդ թվում՝ «Իսկրա» թերթը, «Զարյա» ժուռնալը, Ն. Կ. Կրուպսկայայի «Աշխատավորուհի կին», «Մայիսյան օրերը Խարկովում» բրոշյուրը՝ Վ. Ի. Լենինի առաջաբանով[1] և այլ աշխատություններ[2]։ 1901 թվականի հունիսին Վ. Ի. Լենինը Մյունխենից Բաքու ուղարկած կիսածածկագիր նամակներից մեկում գրել է. ««Իսկրա»-ն Կովկասում տպագրելու վերաբերյալ մենք արդեն մանրամասն հարցում ենք ուղարկել X (խոսքը Լ. Մ. Կնիպովիչին ուղարկած հարցման մասին է — Խ. Բ.) և դեռ պատասխան չունենք։ Սև ծովի արևելյան ափի վերաբերյալ անպայման ուղիներ որոնեցեք։ Հատկապես ուշադրությունն ուղղեցեք ֆրանսիական շոգենավերի վրա — մենք հույս ունենք դեպի նրանք մուտք գտնել այստեղից»[3]։ Մինչև 1902 թվականի հունվարը Բաքվի «Նինա» տպարանում Վ. Ի. Լենինի ցուցումներով Լ. Կեցխովելու ղեկավարությամբ կազմակերպվում է «Իսկրա»-ի և նրա

[1] Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 4, էջ 458—469։

[2] Տե՛ս Ленинский сборник, том VIII, стр. 145, М.

[3] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 34, էջ 68—69։



հրատարակությամբ լույս տեսած մի շարք կոչերի ու բրոշյուրների արտատպումը։ «Նինա» ընդհատակյա տպարանում տպագրվել են Վ. Ի. Լենինի «Ի՞նչ անել», «Գյուղական չքավորությանը», «Ռևոլյուցիոն երիտասարդության խնդիրները», Դիկշտեյնի «Ով ինչով է ապրում» (այս բրոշյուրը թարգմանվել և տպագրվել էր նաև վրացերեն, հայերեն), Լիբկնեխտի «Սարդեր և ճանճեր»-ը, ինչպես նաև «Մորոզովյան գործադուլի տասնամյակը», «Պյոտր Ալեքսեևի ճառը» և այլ աշխատություններ։

«Իսկրա»-ն և նրա հրատարակությունները Անդրկովկաս է առաքվել նաև Ավստրիայի վրայով։

Արխիվային նյութերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ բացի Բաքվի ընդհատակյա «Նինա» տպարանում բազմացված «Իսկրա»-ի համարներից, Հայաստանում «Իսկրա»-ն և իսկրայական հրատարակությունները ժամանակին ստացվել են նաև արտասահմանից։ 1902 թվականի օգոստոսին Ելենովկայի փոստ-հեռագրատան բաժանմունքում բռնվել է Նոր Բայազետի գավառի Ելենովկա գյուղի բնակիչ Տիմոֆեյ Աֆոնինի անունով արտասահմանից ուղարկված ծրարը, որի մեջ էր լենինյան «Իսկրա»-ի հրատարակությամբ լույս տեսած «Զինվորի հուշագիրը» խորագրով բրոշյուրը։ Նույն թվականի սեպտեմբերի 29-ին Ելենովկայում բռնագրավվում են արտասահմանից Սեմյոնովկա գյուղի բնակիչ Իվան Նեխորոշոյի հասցեով ուղարկված ռևոլյուցիոն գրականությունը, որի մեջ էին «Ռուս ջուլհակ Պյոտր Ալեքսեևիչ Ալեքսեև» և «Թե ինչպես տերտերները ժողովրդին ստրկացրին Քրիստոսի ուսմունքով» բրոշյուրները[1]։

1901—1903 թվականներին լենինյան «Իսկրա»-ն և նրա հրատարակությունները ստացվել և տարածվել են Երևանում, Ալեքսանդրապոլում (Լենինական), Ջալալ-օղլում (Ստեփանավան), Կարսում և այլ վայրերում։ Դրանում մեծ դեր են խաղացել ինչպես տեղական, այնպես էլ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները։ Ջալալ-օղլում «Իսկրա»-ն, իսկ հետագայում «Վպերյոդ», «Պրոլետարի» թերթերն ու ռևոլյուցիոն գրականությունը ստացվել է Արոն Իսահակյանի (Իսակով) հասցեով[2]։

Միայն 1903 թվականի փետրվար-մայիս ամիսներին Երևան քաղաքի բնակիչ Նատալիա Ֆեոդորովնա Պետրովայի (հավանաբար Երևանի ռուսական գիմնազիայի ուսուցչուհի) հասցեով Ավստրիայից ստացվել են «Իսկրա»-ի 28, 29, 30, 31, 32, 33, 34, 35, 36, 37 համարներից մի շարք օրինակներ։

1903 թվականի փետրվարի 11-ին Ն. Պետրովայի հասցեով Ավստրիայից ստացված ծրարի մեջ եղել է «Իսկրա»-ի 32, մարտի 2-ին՝ 33, իսկ մայիսի 27-ին՝ 35, 36 և 37 համարներից մի քանի օրինակ։

Իհարկե այս տեղեկությունները վերաբերում են Հայաստան առաքված «Իսկրա»-ի այն համարներին, որոնք հայտաբերվել են փոստ-հեռագրատանը։ Անշուշտ թերթի շատ համարներ չեն հայտաբերվել ցարական գործակալների կողմից և հասել են սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններին։

ՌՍԴԲՊ Երևանի, Ալեքսանդրապոլի, Կարսի, Բորչալուի և Հայաստանի զինվորական մասերի բոլշևիկյան կազմակերպությունների անլեգալ գրադարաններում պահվող մարքսիստական գրականության մեջ եղել է նաև «Իսկրա»-ն։

[1] ЦГИА Груз. ССР, ф. 39, д. 556, л. 1.

[2] Տե՛ս ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 25, оп. 20, д. 34403.

1905 թվականի ապրիլին ցարական ոստիկանության կողմից հայտաբերված ՌՍԴԲՊ Ալեքսանդրոպոլի զինվորական կազմակերպության անլեգալ գրադարանում բացի «Իսկրա»-ից կային նրա հրատարակությունները՝ «Զինվորի հուշագիրը», «Գոլդբալդի ճառը», «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», «Ով պետք է հաղթի» և այլ գործեր [1]: 1906 թվականի գարնանը Մ. Միրաքյանը ՌՍԴԲՊ Հայաստանի կազմակերպությունների համար փոխադրում է 62 օրինակ բոլշևիկյան և այլ թերթեր և մի քանի հազար օրինակ ռևոլյուցիոն բրոշյուրներ, այդ թվում՝ Վ. Ի. Լենինի «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայում», Ֆ. Էնգելսի «Գյուղացիական հարցը Ֆրանսիայում և Գերմանիայում», Ի. Վ. Ստալինի «Երկու գոտեմարտ»-ը, ՌՍԴԲՊ ծրագիրը և ՌՍԴԲՊ III համագումարի ծանուցումը [2]:

Հայտնի է, որ լենինյան «Իսկրա»-ն լայնորեն լուսաբանել է Անդրկովկասի ռևոլյուցիոն իրադարձությունները, մեծ տեղ է տվել բանվորական ռևոլյուցիոն շարժումներին: Հայաստան առաքված «Իսկրա»-ի համարներում հարուստ նյութեր կային ոչ միայն Բաքվի, Թիֆլիսի, Բաթումի պրոլետարիատի գործողությունների մասին, այլև ցարիզմի դեմ Հայաստանի աշխատավորության մղած պայքարի, ՌՍԴԲՊ տեղական կազմակերպությունների աշխատանքի վերաբերյալ: «Իսկրա»-ի մոտ 34 համարներում ավելի քան 70 հոդված, թղթակցություն, նամակ, ինֆորմացիա կա Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությանը և ռևոլյուցիոն շարժումներին նվիրված: Թերթի առանձին համարներում (№№ 37 և 40) Կովկասից տպագրված է 5—6 թղթակցություն: Թիֆլիսի բանվորների 1901 թվականի մայիսմեկյան ցույցը «Իսկրա»-ն գնահատել է որպես պատմական նշանակություն ունեցող իրադարձություն Կովկասի համար: 1902 թվականին Բաքվի բանվորները «Իսկրա»-ի 22-րդ համարում գրել են. «Մենք՝ Բաքվի բանվորներս, մյուս քաղաքների բանվորներից ետ չմնալու համար, միասին որոշեցինք առաջին քայլը կատարել սուրբ գործի համար... Մենք հիշում ենք դեկաբրիստների պատասխանը Պուշկինին՝ «Կայծից բոց կբռնկի...», սակայն ուժեղ բոց բորբոքելու համար պետք է մեր կայծերը տարածել ամբողջ քաղաքով մեկ, որպեսզի մեծ հրդեհ առաջանա»:

Լենինյան «Իսկրա»-ն մեծ տեղ է տվել Հաղպատի գյուղացիների 1903 թվականի հակացարական ելույթների լուսաբանությանը:

«Անդրկովկասը ընդգրկված է ռևոլյուցիոն փոթորիկով,— 1903 թվականին «Իսկրա»-ում գրել է Բ. Կնունյանցը,— մի ամբողջ շարք հաջող ցույցերը, լայն մասսայական ագիտացիան, վերջապես այս տարվա նշանավոր ընդհանուր գործադուլները ուժեղ կերպով ռևոլյուցիոնացրին բնակչության բոլոր խավերը: Ահա թե ինչու հայ բնակչությունը, որն անտրտունջ կրել է մի ամբողջ շարք բռնություններ, այժմ խիստ կերպով բողոքում է թագակիր ավազակի նոր հափշտակության դեմ և սկսել է զենքը ձեռքին պաշտպանել իր իրավունքները» [3]: Նկարագրելով հայկական եկեղեցական ունեցվածքը ցարական կառավարությանը հանձնելու վերաբերյալ ցարի 1903 թվականի հունիսի 12-ի

---

[1] ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 33, գ. 169:

[2] Տե՛ս ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 18, գ. 2:

[3] „Искра" № 49, 1 октября 1903.



հրամանի առթիվ Հայաստանում, Բաքվում, Թիֆլիսում, Գանձակում, Շուշիում, Կարսում և այլ վայրերում առաջացած խմորումները, «Իսկրա»-ն նշել է, որ «հայ ժողովրդի համբերության բաժակը լցվել է, նրա ռևոլյուցիոն գիտակցությունը աճել է, անլեգալ գրականությունը խլում են միմյանց ձեռքից» [1]:

Ուշագրավ է այն փաստը, որ 1902 թվականին Անդրկովկասում ձևավորված լենինյան հայ իսկրայական առաջին կազմակերպության՝ Հայ սոցիալ-դեմոկրատների Միության գործունեությունն արժանացել է «Իսկրա»-ի բարձր գնահատականին: Վ. Ի. Լենինը ծանոթանալով Հայ սոցիալ-դեմոկրատների Միությանը և նրա օրգան «Պրոլետարիատ» թերթի բովանդակությանը, 1903 թվականի փետրվարի 1-ին, «Իսկրա»-ի 33-րդ համարում հատուկ հոդվածով ողջունեց Միության երևան գալը և նրա մանիֆեստում առաջ քաշված հարցերը:

1903 թվականի հոկտեմբերի 20-ին Վ. Ի. Լենինը և Գ. Վ. Պլեխանովը Ժնևից ՌՍԴԲՊ Կովկասյան Միութենական Կոմիտեին գրած նամակում հավանություն տալով Անդրկովկասի բոլշևիկների վարած ռևոլյուցիոն գծին, նրանց մարքսիստական գրականությամբ օգնություն ցույց տալու մասին գրել են. «Մենք այժմ եռանդուն մտածում ենք այստեղ վրացական և հայկական գրականության հրատարակության կազմակերպման մասին: Այդ գործին ձեռնամուխ են եղել ձեռնահաս ընկերներ» [2]:

Անդրկովկասի լենինյան-իսկրայական սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններն ունեին ինտերնացիոնալ կազմ և ամուր կանգնած էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերի վրա:

1903 թվականի հոկտեմբերին «Իսկրա»-ում հրապարակված մի նամակում Ստ. Շահումյանը խոսելով կովկասյան սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների գործունեության մասին, նշել է, որ կովկասյան սոցիալ-դեմոկրատիան այժմ, ինչպես և առաջներում, նախքան ՌՍԴԲՊ Կովկասյան Միության հիմնվելը (1903 թ. մարտ), կազմակերպական հարցերում կանգնած է Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատի շահերը ներկայացնող և պաշտպանող միասնական պարտիայի դիրքերում, որ Կովկասում կենսագործված կազմակերպական պլանը ոչ մի բանով չի տարբերվում այն պլանից, որի պաշտպանը մեր գրականության մեջ հանդիսացել է լենինյան «Իսկրա»-ն:

Լենինյան «Իսկրա»-ն և նրա գաղափարները հայ աշխատավորության մեջ տարածելու գործում հսկայական դեր են խաղացել Ստ. Շահումյանը, Բ. Կնունյանցը և մի շարք այլ պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներներ: «Իսկրա»-ում տպագրված նրանց հոդվածներում լուսաբանված է հայ իրականությանը վերաբերող կարևորագույն շատ հարցեր, ցույց է տրված Հայաստանի աշխատավորության պայքարը բուրժուական նացիոնալիզմի դեմ:

Ստորև հրապարակում ենք արխիվային մի քանի փաստաթղթեր, որոնք վկայում են 1902—1903 թվականներին «Իսկրա»-ն և նրա հրատարակությունները Հայաստան առաքելու մասին:

---

[1] „Искра" № 49, 1 октября 1903.

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 34, էջ 199:

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 1

Գաղտնի

Երևանի
Նահանգապետ
Ըստ № 1558
գրասենյակի
25 նոյեմբերի 1902 թ.
Քաղ. Երևան

ԿՈՎԿԱՍԻ ՔԱՂԱՔԱՅԻԱԿԱՆ ՄԱՍԻ ԳԼԽԱՎՈՐ ՊԵՏԻ
ԳՐԱՍԵՆՅԱԿԻ ՊԱՐՈՆ ԴԻՐԵԿՏՈՐԻՆ

*Երևանի փոստ-հեռագրատան բաժանմունքում սեպտեմբերի 29-ին բռնված արտասահմանից ստացված մի փակ նամակում, որ հասցեագրված է Նոր-Բայազետի նահանգի Սեմյոնովկա գյուղի բնակիչ Իվան Նեխորոշուն, ուղարկված է «Նարոդնիկյե լիստոկի» ռևոլյուցիոն բրոշյուրի 1902 թվականի № 4 և № 9-ը՝ «Ռուս ջուլհակ Պյոտր Ալեքսեևիչ Ալեքսեև» և «Թե ինչպես տերտերները ժողովրդին սարկացրին Քրիստոսի ուսմունքով» խորագրերով։ Այդ բրոշյուրներն ուղարկված են Երևանի նահանգական ժանդարմական վարչությանը և առաջարկված է Նոր-Բայազետի նահանգապետին Նեխորոշու նկատմամբ սահմանել գաղտնի հըսկողություն, ինչպես նաև տեղեկություններ հավաքել նրա ինքնության մասին։ Բացի այդ, նույն թվականի օգոստոս ամսին արտասահմանից ստացված է մի նամակ՝ Նոր-Բայազետի նահանգի Ելենովկա գյուղի բնակիչ Տիմոֆեյ Աֆոնինի հասցեով, որի մեջ նույնպես հայտաբերվեց «Նարոդնիկյե լիստոկի» ռևոլյուցիոն բովանդակություն ունեցող բրոշյուրի 1902 թվականի № 12-ը, «Զինվորի հուշագիր» խորագրով։ Այդ բրոշյուրն ուղարկված է Երևանի նահանգական ժանդարմերիայի պետին, իսկ Աֆոնինի նկատմամբ հավաքված տեղեկություններից երևում է, որ նա դատապարտելի ոչ մի քայլերի մեջ չի նկատվել։*

*Պատիվ ունեմ վերը շարադրվածի մասին հաղորդել Ջերդ գերազանցությանը զեկուցման համար։*

*Նահանգապետ (ստորագրություն)*
*Գրասենյակի կառավարչի պաշտոնակատար (ստորագրություն)*

ЦГИА Груз. ССР, ф. 39, д. 556, л. 1, афтограф.

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 2

ԵՐԵՎԱՆԻ ՆԱՀԱՆԳԱՊԵՏԻՆ

Գաղտնի

*Պատիվ ունեմ սույնով ներկայացնելու Ջերդ գերազանցությանը ինը հասարակ նամակներ, որոնք ստացվել են իմ տնօրինությանը վստահված գրասենյակում և իրենց մեջ բովանդակում են՝ Գավրիլի Մնացականյանցի անունով ստացված չորս նամակները՝* «Pro Armenia»* *թերթի մեկական համար (58-ից 61-ը ներառյալ), Նատալյա Պետրովայի անունով ստացված չորս նամակները՝ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական «Իսկրա» թերթի մի քանի համարներ։*

*Ստորագրություն*

*№ 21*
*10 փետրվարի*
*Երևան*

*Հայկական ՍՍՌ ԿՊԱ, ֆ. 122, գ. 3, թ. 71, բնագիրը։*

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 3

*1903 թվականի փետրվարի 12-ին ներքոհիշյալների ներկայությամբ բացվեց Նատալյա Ֆեոդորովնա Պետրովայի անունով Ավստրիայից փետրվարի 11-ին փոստով ստացված փակ հասարակ նամակ, բստ որում պարզվեց, որ ծրարում գտնվում է Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական «Իսկրա» թերթի երեսուներկուերորդ համարը և տպագիր մի ոչ մեծ երկտող, ուր ներողություն է խնդրվում այն բանի համար, որ այդ թերթն ուղարկվում է առանց նախնական համաձայնության այն ստանալու մասին, բ-հի Պետրովան հայտարարեց, որ իրեն ամենևին էլ հայտնի չէ այդ թերթն ուղարկողի ինքնությունը և վճռականապես հրաժարվեց այն ստանալուց։*

*Երևանի փոստ-հեռագրատան պետ (ստորագրություն)*
*Նրա օգնական (ստորագրություն)*
*Նատալյա Ֆեոդորովնա Պետրովա*

*Հայկական ՍՍՌ ԿՊԱ, ֆ. 122, գ. 3, թ. 52, բնագիրը։*

---

* «Pro Armenia» — *սկսել է հրատարակվել փարիզում 1900 թ. ֆրանսերեն՝ Անատոլ Ֆրանսի, Ժան Ժորեսի և մյուսների խմբագրությամբ։ Իր էջերում լայնորեն լուսաբանում էր «Հայկական հարցը»։*



## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 4

ԵՐԵՎԱՆԻ ՆԱՀԱՆԳԱՊԵՏԻՆ

*Սույնով ներկայացնում եմ Ջերդ գերազանցությանը հինգ նամակ, որոնք զանազան տեղերից ստացվել են իմ տնօրինությանը վստահված գրասենյակում, դրանցից երեքը Մուշեղ Բագրատունու, մեկը Նատալյա Պետրովայի և մեկն էլ Գավրիլ Մնացականյանցի անուններով, որպիսի նամակներից առաջին երեքում կային հնչակիստների պարտիայի Կենտրոնական Կոմիտեի՝ ռևոլյուցիոն բովանդակությամբ երեք վիմագիր թերթիկներ, չորրորդում՝ Ռուսաստանի Սոցիալ-Դեմոկրատական Բանվորական պարտիայի «Իսկրա» թերթի № 32-ը տպագրված մի երկտողով, ուր ներողություն է խնդրվում թերթը առանց հասցեատիրոջ համաձայնության ուղարկելու մասին և հինգերորդում՝ (որը վերադարձված է ստացողի կողմից)* «Pro Armenia» *ռևոլյուցիոն թերթի երեք համարներ, պատիվ ունեմ հայտնելու, որ հասցեատերերը հրաժարվեցին այդ նամակներն ընդունելուց, հայտարարելով, թե այդ նամակներն ուղարկող անձինք իրենց հայտնի չեն։*

*Ստորագրություն*

*№ 4*
*12 փետրվարի 1903 թ.*
*Երևան*

*Հայկական ՍՍՌ ԿՊԱ, ֆ. 122, գ. 3, թ. 53, բնագիրը։*

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 5

*1903 թվականի մարտի 2-ին ներքոստորագրյալների ներկայությամբ բացվեց Նատալյա Ֆեոդորովնա Պետրովայի անունով Ավստրիայից ստացված փակ հասարակ նամակը, բստ որում այդ ծրարի մեջ գտնվում է Ռուսաստանի Սոցիալ-Դեմոկրատական «Իսկրա» թերթի երեսուներեքերորդ համարը և տպագիր մի ոչ մեծ երկտող, ուր ներողություն է խնդրվում, որ այդ թերթն ուղարկվում է առանց վաղօրոք նրա հետ համաձայնեցնելու։ Քաղ-հի Պետրովան հայտարարեց, որ իրեն բոլորովին էլ հայտնի չէ այդ թերթն ուղարկողի ինքնությունը և կտրականապես հրաժարվեց այն ստանալուց։*

*Գրասենյակի պետ (ստորագրություն)*
*Նրա օգնական (ստորագրություն)*
*Շտաբս չինովնիկ (ստորագրություն)*
*Նատալյա Պետրովա*

*Հայկական ՍՍՌ ԿՊԱ, ֆ. 122, գ. 3, թ. 59, բնագիրը։*

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 6

ԵՐԵՎԱՆԻ ՊԱՐՈՆ ՆԱՀԱՆԳԱՊԵՏԻՆ

*Պատիվ ունեմ սույնով Ջերդ գերազանցությանը ներկայացնելու ինը հասարակ նամակներ, որպիսիք ստացվել են իմ տնօրինությանը վստահված գրասենյակում և բացվել հասցեատերերի ներկայությամբ, որոնք հրաժարվեցին դրանք ընդունելուց, այն է՝ հինգ նամակ Մուշեղ Բագրատունուն Լոնդոնից, որոնց մեջ կային երեք վիմատիպ թերթիկներ՝ հրատարակված հնչակիստների ռևոլյուցիոն պարտիայի* կողմից. մեկի մեջ՝ «Հնչակ» թերթի տպագրված առաջին համարը և մյուսում՝ ամենայն հավանականությամբ, նույն լրագրի թերթիկը՝ խորագիրը կտրված. մեկ նամակ տիկին Տրդատովային՝ «Դրոշակ»** նոր թերթի մեկ համար, մեկը տիկին Պետրովային՝ «Իսկրա» թերթի երեսուներեք համարի մեկ օրինակ, տպագրված երկտողի հետ միասին, երկու նամակ Գավրիլի Մնացականովի անունով, որոնցից յուրաքանչյուրի մեջ կա* «Pro Armenia» *թերթի մեկական համարը։*

*Ստորագրություն*

*№ 7*
*7 մարտի 1903 թվականի*
*Երևան*

*Հայկական ՍՍՌ ԿՊԱ, ֆ. 122, գ. 3, թ. 62, բնագիրը։*

---

* *Խոսքը մանր բուրժուական նացիոնալիստական հնչակյան պարտիայի մասին է։*

** *«Դրոշակ» — խոսքը բուրժուա-նացիոնալիստական դաշնակցության պարտիայի օրգանի մասին է։*

### ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 7

*1903 թվականի մայիսի 27-ին։ Ստացող քաղ-ուհի Պետրովայի ներկայությամբ Երևանի փոստ-հեռագրատան գրասենյակում բացվեց նրա հասցեով ստացված 4 նամակ, ըստ որում դրանցում կային ռևոլյուցիոն «Իսկրա» թերթի 35, 36, 37 համարների տասներկու թերթիկներ, մնացածներում թերթի ճակատները կտրված են և թերթի թվագրությունն ու №-ները ցույց չեն տրված։ Քաղ-ուհի Պետրովան հայտարարեց, որ ինքը չգիտի, թե ով է ուղարկել իրեն այդ նամակները և միանգամայն հրաժարվում է այդպիսիք ստանալուց։*

*Երևանի փոստ-հեռագրատան գրասենյակի պետ (ստորագրություն)*

*Շտաբս չինովնիկ (ստորագրություն)*

*Նատալյա Պետրովա*

*Հայկական ՍՍՌ ԿՊԱ, ֆ. 122, գ. 3, թ. 69, բնագիրը։*



*Այս փաստաթղթերը լիովին վկայում են, որ լենինյան «Իսկրա»-ն և նրա հրատարակությունները ժամանակին առաքվել են Հայաստան և անգնահատելի դեր են խաղացել հայ աշխատավորության մեջ մարքսիզմի գաղափարների տարածման, Հայաստանում լենինյան-իսկրայական ուղղությամբ սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ձևավորման և հայ աշխատավորությանը բոլշևիզմի դրոշի տակ համախմբելու գործում։*

*Լենինյան «Իսկրա»-ի տրադիցիաներով դաստիարակված հայ աշխատավորությունը բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ Ռուսաստանի բանվորների և գյուղացիների օրինակով ցարական ինքնակալության դեմ մղված պայքարում ձեռք բերեց քաղաքական կոփվածություն և հարուստ փորձ։*

*Վ. Ի. Լենինի վառած «Իսկրա»-ից («Կայծ»-ից) 40 տարի առաջ, 1917 թվականին, բռնկվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բոցը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան նոր դարագլուխ բացեց մարդկության համաշխարհային պատմության մեջ՝ իմպերիալիզմի կործանման և նոր, սոցիալիստական հասարակարգի հաստատման դարագլուխը։*

---



# Ի՞ՆՉ Է ԳԻՏԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԻՆՉՊԵ՞Ս Է ԱՅՆ ԾԱԳԵԼ

Հ. ԱՍԼԱՆՅԱՆ

*Ի՞նչ է գիտակցությունը, ինչպե՞ս է այն ծագել, ո՞րն է նրա աղբյուրն ու բովանդակությունը։*

*Անկասկած, այս հարցերը գիտության ու փիլիսոփայության սկզբունքային, բարդ բնագավառին են պատկանում։ Գիտակցության ծագման հարցը շատ հեռավոր ժամանակներից ի վեր զբաղեցրել է մարդկանց մեծագույն հետաքրքրականությունը։ Այդ հարցի ճիշտ մեկնաբանումը վճռական նշանակություն ունի փիլիսոփայական հոսանքների էությունը որոշելու, աշխարհի մասին գիտական, դիալեկտիկա-մատերիալիստական հայացք կազմելու համար։*

Կրոնի ու իդեալիզմի *քարոզիչները որքա՜ն են չարաշահել գիտակցության և նյութի, հոգու և մարմնի փոխհարաբերության հարցը, միստիկայի թանձր մշուշով պատելով գիտակցության էությունը, հայտարարելով, թե՛ այն մատերիայից անկախ, իբրև թե անմահ և անբացատրելի հոգու գործունեությունն է, թե՛ հոգին ոչ մի կապ չունի մարմնի հետ և մարդու մահվանից հետո անմահ է մնում, թափառում է մարմնից մարմին և վերջ ի վերջո վերադառնում հոգիների գերբնական աշխարհը։ Այս հայացքը ոչ այլ ինչ է, եթե ոչ վայրենի մարդու պրիմիտիվ պատկերացման, հոգեպաշտության (անիմիզմի) ուղղակի և անմիջական շարունակությունը։*

Իդեալիզմը, *որն ըստ էության նույն արմատից է ծագել, ինչ որ կրոնը, հանդիսանում է նրբացած կրոն՝ գիտական որոշ դունավորումով։ Հոգու անմահություն, կամքի ազատություն, աստծու գոյություն՝ այս գաղափարները հատուկ են ոչ միայն կրոնին, այլև այս ու այն ձևով իդեալիզմին։ Հին աշխարհի իդեալիստ Պլատոնը կարծում էր, որ մարդու մարմնի մեջ (ինչպես և կենդանական ու բուսական մարմինների մեջ) դրված է հոգին, որը մարդու մահվանից հետո վերադառնում է իդեաների գերբնական, հավիտենական աշխարհը։ 18-րդ դարի անգլիական փիլիսոփա-եպիսկոպոս Ջորջ Բերկլին ճիգ ու ջանք էր թափում ժխտելու նյութը, մատերիան և հիմնավորելու այն սուբյեկտիվ-իդեալիստական դրույթը, թե նյութը զգայությունների կոմպլեքս է, իսկ այդ կոմպլեքսն իբր թե առաջանում է սուբյեկտների մեջ աստծու ներգործությամբ։ Ըստ գերմանական հայտնի իդեալիստ Հեգելի փիլիսոփայական սիստեմի, մարդու գիտակցությունը (և ամբողջ աշխարհը) համաշխարհային իդեայի, այսպես կոչված բացարձակ ոգու զարգացման դրսևորումն է։ Ժամանակակից իդեալիզմը ավելի այլանդակ, ավելի ռեակցիոն ձևով պրոպագանդում է Պլատոնի, աստվածաբանների, Բերկլիի հայացքները։*

Գիտակցության կրոնա-իդեալիստական կեղծ մեկնաբանությանը գիտության ու փիլիսոփայության պատմության մեջ հակադրվել է մատերիալիստական գիծը։ Արդեն նախամարքսյան մատերիալիստները ցույց են տվել գիտակցության առաջնայնության, հոգու անմահության ուսմունքի ամբողջ սխալականությունը։ Մատերիալիզմը բնագիտությանը լիովին համապատասխան, բնությունը, մատերիան համարում է առաջնային, իսկ գիտակցությունը, մտածողությունը՝ երկրորդային։ Բայց փիլիսոփայության պատմության մեջ գոյություն են ունեցել մատերիալիզմի տարբեր ձևեր։ Նախամարքսյան մատերիալիզմը հենվելով բնագիտության վրա և վկայակոչելով փորձը, վճռականորեն մերժում էր հոգու անմահության կոնցեպցիան և հիմնավորում այն դրույթը, որ գիտակցությունը բնության արդյունք է, նրա այն մասի հատկությունը, որ կոչվում է ուղեղ, և որ իր բովանդակությամբ գիտակցությունն առաջանում է զգայական աշխարհից։ Ոչինչ չկա բանականության մեջ, որ առաջացած չլինի զգայական ճանապարհով արտաքին աշխարհի ներգործության հետևանքով։ Այս նրանց հիմնական դրույթն էր։ Գիտակցությունը, ըստ այդ մատերիալիստների, նյութական աշխարհի արտացոլումն է։ Սակայն մետաֆիզիկական մատերիալիզմի արտացոլման թեորիան խիստ թերի էր, սահմանափակ. այդ մատերիալիզմը չկարողացավ բացահայտել գիտակցության ծագման պրոցեսը, չկարողացավ վեր հանել արտացոլման դիալեկտիկական բնույթը, նրա կապը մարդու հասարակական-պատմական գործունեության հետ։ Այդ թերությունները հաղթահարվեցին դիալեկտիկական մատերիալիզմի կողմից։

Գիտական մատերիալիզմը ոչ մի կերպ չպետք է շփոթել վուլգար մատերիալիզմի հետ։ Այս ուղղության ներկայացուցիչները գիտակցության ծագումը, առանձնահատկությունները, բարդ բնույթը բացատրելու փոխարեն գռեհիկ կերպով այն նույնացնում են մատերիայի, նյութի հետ։ Վուլգար մատերիալիզմի հիմնական ֆորմուլան այն էր, թե ինչպես լյարդը լեղի է արտադրում, այնպես էլ ուղեղը միտք է արտադրում։ Այս բացատրությունը նույնքան հակագիտական է և թշնամի դիալեկտիկական մատերիալիզմին, որքան և իդեալիզմը. վուլգար մատերիալիզմը փաստորեն շուռ տված իդեալիզմն է։ Պատահական չէ, որ մարքսիզմի հակառակորդները, հաճախ ֆալսիֆիկացիայի ենթարկելով մարքսիզմը, ներկայացնում են այն որպես վուլգար մատերիալիզմ։

Իրականում միտքը, իհարկե, նյութական չէ և չի կարող արտադրվել ուղեղում, ինչպես լեղին է արտադրվում լյարդում։ Գիտակցությունը չունի գույն, համ, ծանրություն, երկարություն, լայնություն, այն չի կարելի տեսնել, շոշափել, համ առնել և այլն։ Այդ բոլորը ֆիզիկական նյութի հատկություններն են։ Բայց այդ չի նշանակում, թե գիտակցությունը ռեալ չէ. նա ռեալ է, բայց նա սուբյեկտիվ ռեալություն է, նյութից անբաժանելի։ Դրան հակառակ նյութը օբյեկտիվ ռեալություն է՝ գիտակցությունից դուրս և անկախ։

Ժամանակակից բուրժուական փիլիսոփայության մեջ հավասարապես տարածված է ինչպես իդեալիզմը, այնպես էլ վուլգար մեխանիցիզմը, բիոլոգիզմը։ Վերջինիս օրինակ կարող են հանդիսանալ ֆրեյդիզմը, բիհեվիորիզմը, պրագմատիստների հայացքները։ Ամերիկյան բիհեվիորիզմի հիմնադիր Ուոտսոնը իր ընթերցողներին հավատացնում է, թե գիտակցություն ասածը, այսինքն՝ մտապատկեր, հասկացություն, երևակայություն, իդեա ռեալ կերպով գոյություն չունի, ուստի և մարդու գործունեությունը նկարագրելիս և վերլու-



ծելիս այդ՝ այսպես կոչված հոգևոր պրոցեսները պետք է դեն նետվեն։ Ֆրեյդիստների և բիհեվիորիստների համար մարդու ամբողջ հոգեկան գործունեությունը զուտ ենթագիտակցական, բնազդային կամ մկանային ռեակցիաներ են, ոչ ավելին։ Դրանից հեռու չեն գնում նաև պրագմատիստները, որոնց հայացքներում հատուկ ցայտունությամբ է դրսևորվում սուբյեկտիվ իդեալիզմի և բիոլոգիզմի միահյուսումը։ Օբյեկտիվ աշխարհի և նրա ճանաչելիության ժխտումը պրագմատիստները շղարշում են մտածողության վերաբերյալ բիոլոգիական դատողություններով. մտածողության պրոցեսը նրանց մեկնաբանությամբ ոչ այլ ինչ է, քան եթե զուտ մեխանիկական պրոցես, ներօրգանական ռեակցիա արտաքին ազդակների նկատմամբ։ Այս հայացքի տարածումը իմպերիալիստական ագրեսիվ շրջանների իդեոլոգների կողմից որոշ նպատակ է հետապնդում. ժամանակակից պայմաններում այդ գռեհկաբանությունները նպատակ ունեն մարդու մեջ մեռցնել բանականը, մտածողությունը, մարդկանցից պատրաստել կույր, բութ բնազդով ղեկավարվող բարոյազուրկ էակներ, թնդանոթի միս, սոցիալիզմի, դեմոկրատիայի, գաղութների ազատագրական շարժման դեմ պայքարելու համար։ Այդ մասին են վկայում հիտլերյան զորքերի անհաշիվ չարագործությունները 2-րդ համաշխարհային պատերազմի ժամանակ։ Այդ ոգով են դաստիարակում իրենց զորքերին բոլոր իմպերիալիստները։ Կոմունիստները իրենց թեորիական և գործնական աշխատանքում ամենավճռական կերպով մերկացնում են իմպերիալիստական վուլգարիզատորների կոնցեպցիան և պաշտպանում մարդկային լուսավոր բանականության իրավունքները։

Գիտակցության էության և ծագման խորը գիտական բացատրությունը տալիս է միայն դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը՝ ամենապրոգրեսիվ, ամենառևոլյուցիոն դասակարգի ու պարտիայի աշխարհայացքը։ Նշանակելով մի ամբողջ հեղաշրջում հասարակական մտքի պատմության մեջ, դիալեկտիկական մատերիալիզմն իր մեջ անխզելի կերպով միացնում է խըստիվ գիտականությունը և աշխարհի վերափոխման ռևոլյուցիոն ուժը, մերկացնելով գիտակցության վերաբերյալ բոլոր հակագիտական, ռեակցիոն կոնցեպցիաները։

Մարքսիզմ-լենինիզմը խորապես հիմնավորեց այն ֆունդամենտալ մատերիալիստական դրույթը, որ մատերիան առաջնային է, իսկ գիտակցությունը երկրորդային։ Դիալեկտիկական մատերիալիզմը ելնում է այն սկզբունքից, որ մատերիան գոյություն է ունեցել և գոյություն ունի գիտակցությունից առաջ, նրանից դուրս և անկախ, գոյություն ունի ժամանակի, տարածության ու շարժման մեջ, ըստ որում այդ շարժումը կատարվում է դարձյալ գիտակցությունից անկախ որոշ օբյեկտիվ օրինաչափություններով։ Մատերիայի առաջնայնության և գիտակցության երկրորդայնության թեզը պետք է հիմնավորել այսպես. 1) գիտակցությունը պատմական երևույթ է և ոչ թե հավիտենապես հատուկ է նյութին. գիտակցությունը, մտածողությունը առաջացել է մատերիայի երկարատև զարգացման որոշ աստիճանում։ Հետևաբար գիտակցությունը նյութի արդյունքն է (ճիշտ է, շատ բարձր արդյունքը) և նյութին է պարտական իր ծագումով. 2) գիտակցությունը նյութից անկախ ինքնուրույն սուբստանցիա չէ, ընդհանրապես նա սուբստանցիա չէ, այլ հատկություն է, նա ուղեղի ֆունկցիան է, իսկ ուղեղը՝ նրա նյութական կրողը, օրգանը։ Մտածողությունն, ասում է Էնգելսը, այլ բան չէ, քան մարդկային ուղեղի բարձրա-

*գույն արդյունք, իսկ ուղեղը նյութի զարգացման բարձրագույն ձևն է։ Ուրեմն, ամբողջ հարցն այն է, թե ինչպես է չմտածող նյութը դարձել մտածող նյութ. 3) մտածողությունը, ընդհանրապես գիտակցությունը նյութական աշխարհի արտացոլումն է, նա միշտ որոշակի բովանդակություն ունի. այս նշանակում է՝ զուտ մտածողություն որպես այդպիսին, որպես բացարձակ ինքնուրույն մտածողություն գոյություն չունի. գիտակցությունը կամ առարկաների կամ նրանց հատկությունների կամ նրանց գործողությունների կամ հարաբերությունների արտացոլումն է։*

*Արտացոլման մարքսիստական-լենինյան թեորիան համաշխարհային գիտության մեծագույն նվաճումներից մեկն է։ Բայց պետք է նկատի ունենալ, որ գիտակցությունը որպես օբյեկտիվ աշխարհի արտացոլում՝ մեխանիկական, պարզ, հայելիական արտացոլում չէ. այն խիստ բարդ, յուրահատուկ երևույթ է, որի ձևերն են՝ զգայությունը, մտապատկերը, հասկացությունը, դատողությունը, մտահանգումը։ Այդ արտացոլումը կարող է լինել իրականության ճշգրիտ պատկերը, կարող է լինել նրա աղավաղված և նույնիսկ ֆանտաստիկ արտացոլումը, բայց բոլոր դեպքերում՝ արտացոլումը։ Կան արտացոլման տարբեր տիպեր՝ գիտական, գեղարվեստական, կրոնական և այլն։ Բայց բոլոր դեպքերում գիտակցությունը աշխարհի և նրա օրինաչափությունների արտացոլումն է։*

*Ինչպե՞ս է ծագել այդ գիտակցությունը։*

*Մարդու և դրա հետ միասին նրա գիտակցության ծագումը ունի իր նախապատմությունը, այն նախապատրաստվել է օրգանական աշխարհի զարգացման ամբողջ ընթացքով։ Ինչպես նշում են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները, առանց այդ նախապատմության մարդու ուղեղի և նրա մտածունակության ծագումն ու գոյությունը կարող է հրաշք թվալ։ Իդեալիստները հենց այդպես էլ մեկնաբանում են։ Մինչդեռ այդ այդպես չէ։*

*Գիտությունը հիմնավորապես ցույց է տվել, որ օրգանական աշխարհը, նույն թվում և մարդու ուղեղը, բաղկացած են նույն տարրերի ատոմներից, որոնցից կազմված են մոլորակները, երկիրը, արևը, բոլոր մարմինները։ Բայց այդ տարրերի ատոմները օրգանական աշխարհում, բուսական ու կենդանական մարմնի մոլեկուլներում բոլորովին այլ կապակցության ու հարաբերությունների մեջ են գտնվում և ունեն բոլորովին յուրահատուկ օրինաչափություններ։ Գիտությունը մեծագույն հաջողությունների է հասել, բացահայտելով օրգանական միացությունների առաջացման պրոցեսը, որոնց հիմքը կազմում է սպիտակուցային նյութը։ Սպիտակուցը կենսական օրինաչափությունների հիմքն է։ Սպիտակուցի մոլեկուլը չափազանց բարդ կազմ ունի. եթե, օրինակ, ածխաթթու գազի մոլեկուլը բաղկացած է մեկ ատոմ ածխածնից և երկու ատոմ թթվածնից, ապա սպիտակուցի մոլեկուլը կազմված է տասնյակ ու հարյուր հազարավոր ատոմներից։ Օրգանական աշխարհի երկարատև զարգացումը առաջացրել է բջիջ և հետագա երկարատև զարգացման ընթացքում՝ բուսական ու կենդանական աշխարհի վիթխարի բազմազանություն։*

*Կենդանիների հոգեկան կյանքի նյութական սուբստրատը ներվային օրգաններն են։ Մատերիալիզմը, ասում է Լենինը, լիովին համաձայնելով բնագիտության, առաջնայինը ընդունում է մատերիան, երկրորդայինը համարելով գիտակցությունը, զգայությունը, մտածողությունը, որովհետև պարզ արտահայտված ձևով զգայությունը և ամբողջ գիտակցությունը կապված են*



*մատերիայի բարձր ձևի՝ կենտրոնական ներվային սիստեմի, հատկապես գլխուղեղի հետ։ Այդ սիստեմն ունի իր զարգացման պատմությունը։ Ծովային հիդրայի և նման տիպի կենդանիների մարմնի մակերեսին մյուս բջիջների արանքներում ցրված են առանձին բջիջներ, որոնք խիստ զգայուն են արտաքին աշխարհի գրգիռների նկատմամբ, հաղորդում են այդ գրգիռները մարմնին և համապատասխան ռեակցիա առաջացնում։ Անձրևորդի և նման կենդանիների մոտ ներվային բջիջների հետագա զարգացում ենք տեսնում. այդ բջիջները արդեն ավելի խորն են ընկած մարմնի հատվածներում և իրար հետ միանալով՝ կազմում են յուրահատուկ մի շղթա։ Այդ շղթայի հանգույցներից ներվային թելիկներ են գնում դեպի մարմնի մակերեսը (պերիֆերիան) և ստանալով արտաքին աշխարհի գրգիռները, հաղորդում են մարմնին, առաջացնում համապատասխան ռեակցիաներ։ Իսկ միջատների մոտ ներվային սիստեմը բավական դիֆերենցված է, առաջացել են զարգացած զգայարաններ (շոշափելիք, տեսանելիք և այլն), որոնք հնարավորություն են տալիս միջատին ամենանրբին փոխազդեցությունների մեջ մտնել միջավայրի հետ։ Ներվային սիստեմի բարձրագույն աստիճանը կենտրոնական ներվային սիստեմն է, գլխուղեղը։ Գլխուղեղը, ասում է մեծ գիտնական Ի. Պ. Պավլովը, երկրային բնության բարձրագույն արդյունքն է, կենդանու և միջավայրի նրբագույն հարաբերությունների օրգանը։ Որքան բարձր է կանգնած կենդանական սանդուղքի վրա այս կամ այն էակը, այնքան ավելի վճռական ու կոորդինացնող դեր է խաղում գլխուղեղը։ Ապացուցված է, որ գլխուղեղի վիրահատման դեպքում տարբեր կենդանական խմբերի մեջ տարբեր հետևանքներ են ստացվում. ձկների և գորտերի վարվելակերպը քիչ փոփոխություն է կրում, թռչուններինը՝ ավելի շատ, շունն ու կապիկը լիակատար հաշմանդամ են դառնում, իսկ մարդը մահանում է։ Այստեղից պարզ է, որ կաթնասունների և մարդու հոգեկան ամբողջ կյանքը կարգավորվում է կենտրոնական ներվային սիստեմի միջոցով։*

*Կենդանիների ներվային ապարատի էվոլյուցիայի հետ անխզելիորեն կապված է նրանց բարձրագույն ներվային գործունեությունը՝ պսիխիկան։ Այդ պսիխիկայի ստորին արտահայտությունը անպայման ռեֆլեքսն է։ Ռեֆլեքսը ներվային գոյացում ունեցող օրգանիզմի բնածին հատկությունն է՝ որոշ նպատակահարմար ձևով պատասխանելու միջավայրի գրգիռներին։ Ռեֆլեքսների շղթան բնազդն է (ինստինկտ)։ Միջատների և նրանցից բարձր կենդանիների մոտ մշակվել են շատ բարդ բնազդներ՝ շինարարական, բազմացման, պաշտպանական և այլն։ Բնազդները անցնում են ժառանգաբար և շատ դանդաղ են փոխվում։ Հենց որ մեղվի ձագը դուրս է գալիս ձվից, նա անմիջապես նետվում է դեպի ծաղիկները, մղվելով հյութ հավաքելու բնազդով։*

*Կենդանուն շրջապատող պայմանների բազմապիսությունն ու անընդհատ փոփոխությունը առաջ են բերել կենդանիների մեջ ավելի բարդ, ավելի պլաստիկ ռեֆլեքսներ, ըստ Պավլովի բացատրության, պայմանական ռեֆլեքսներ։ Այդ ռեֆլեքսները ավելի ճկուն են, ավելի բազմազան և հանդիսանում են կենդանիների պսիխիկայի զարգացման նոր էտապ։ Ամենաբարձր կենդանիների մոտ (շունը, ձին, կապիկը) հանդես են գալիս նույնիսկ ինտելեկտի, այսինքն գիտակցության սաղմեր։ Այդ կենդանիները ընդունակ են հաճախ գիտակցություն հիշեցնող գործողություններ կատարելու։ Բայց այդ հարցի լուսաբանումը մեր խնդրի մեջ չի մտնում։ Ընդգծենք միայն, որ այնուամե-*

նայնիվ կենդանիների պսիխիկան դեռ գիտակցություն չէ. լավագույն դեպքում նա իր մեջ պարունակում է գիտակցության սաղմեր, տարրեր։ Սակայն այդ սաղմից ու տարրերից կենդանական աշխարհն այն կողմը չի անցել։ Գիտակցությունը հատուկ է միայն մարդու պսիխիկային, որն արմատապես տարբերվում է կենդանիների պսիխիկայից։



Մարդու ձևավորումը և դրա հետ միասին նրա գիտակցության ծագումը երկարատև, դժվարին պրոցես է։ Մարդաբանությունը, համեմատական անատոմիան և ֆիզիոլոգիան վաղուց հաստատել են, որ մարդն առաջացել է բարձր զարգացած մարդանման կապիկներից, մի քանի հարյուր հազար տարի սրանից առաջ։ Վճռական դերն այստեղ խաղացել է աշխատանքը։ Աշխատանքի պրոցեսում է ձևավորվել մարդը, այդ պրոցեսում են զարգացել նրա բոլոր ֆիզիկական և հոգևոր ընդունակությունները և գիտակցությունը։ Արդեն մարդու նախորդի մոտ, նրա կյանքի գոյության պայմանների ազդեցության տակ սաղմային ձևով տեղի է ունեցել ֆունկցիաների որոշ բաժանում առաջին և հետին վերջավորությունների միջև. առաջին թաթերը մեծ մասամբ ծառայել են ոչ թե քայլելու, այլ մագլցելու, բռնելու, ճյուղը կամ միրգը պոկելու, առարկան նետելու և այլ գործողությունների համար։ Հետագայում կենսապայմանների փոփոխման հետևանքով (անտառից ընկել են տափաստան) այդ բաժանումը ավելի է խորացել և առաջին թաթերը երկարատև ու աստիճանական փոփոխման ենթարկվելով, դարձել են ձեռքեր։ Ձեռքերը հետևաբար ոչ միայն աշխատանքի գործիքներ են, այլ նախ և առաջ աշխատանքի արդյունք։ Իհարկե, սկզբնապես ձևավորվող մարդու այդ աշխատանքը շատ պրիմիտիվ է եղել և բնազդական բնույթ է կրել։ Բայց առաջին քայլն արված էր մարդու առաջացման համար։

Սակայն ձեռքերը մարմնի հետ մի ամբողջություն են կազմում և նրանցում առաջացած փոփոխությունները իրենց հերթին ձևափոխություն առաջացրին մարդանման կապկի ամբողջ կառուցվածքում։ Հետևանքը եղավ այն, որ հարյուր հազարավոր տարիների ընթացքում մարդանման կապկի մարմինը աստիճանաբար, բայց անշեղ կերպով ուղղահայաց դիրք ընդունեց. ձևավորված մարդը կանգնում է երկու թաթերի վրա, կրծքի վանդակը և գլխուղեղը ազատվում են մարմնի ճնշումից, ձեռքերը սովորում են կատարել բազմազան նոր, կենդանուն անհայտ օպերացիաներ։ Սա մի ամբողջ հեղաշրջում էր, որով նախադրյալներ ստեղծվեցին մարդու հետագա զարգացման համար։

Ձևավորված մարդը սկսեց հետզհետե ավելի բազմապիսի նոր ֆունկցիաներ կատարել, ավելի ակտիվ, բարդ ու բազմազան ձևերով ազդել բնության նյութերի վրա և առաջ բերել այդ նյութերի այնպիսի ձևափոխություններ, որոնք առանց մարդու տեղի չէին ունենա։ Այս պրոցեսում մարդը սովորեց ոչ միայն օգտագործել բնության նյութը, առարկաները, այլև պատրաստել նոր առարկաներ և տեղավորել իր և բնության նյութի միջև. դրանք աշխատանքի գործիքներն էին։ Մարդը դարձավ գործիք շինող կենդանի, ինչպես բնորոշում է Մարքսը, համաձայնվելով գիտնական Ֆրանկլինի հետ։ Դրանով արվեց նոր, ավելի վճռական քայլ. մարդը վերջնականապես անջատվեց կենդանական աշխարհից, աշխատանքն էլ նոր որակ ու բնույթ ստացավ։ Ի տարբերություն մյուս կենդանիների, մարդը ակտիվ կերպով ներգործում է բնու-



թյան վրա, առաջացնում է բնության մեջ նոր պրոցեսներ։ Աշխատանքի կլասիկ բնորոշումը տվել է Մարքսը «Կապիտալ»-ում. «Աշխատանքը նախ և առաջ մարդու ու բնության միջև կատարվող պրոցես է, մի պրոցես, որի մեջ մարդն իր սեփական գործունեությամբ միջնորդավորում, կարգավորում և վերահսկողության է ենթարկում նյութերի փոխանակությունը բնության և իր միջև։ Բնության նյութի դիմաց նա ինքն էլ կանգնած է իբրև բնության ուժ։ Իր մարմնին պատկանող բնության ուժերը՝ բազուկներն ու ոտքերը, գլուխն ու մատները նա շարժման մեջ է դնում, որպեսզի բնական նյութը յուրացնի իր սեփական կյանքի համար պիտանի որոշ ձևով։ Այդ շարժման միջոցով ներգործելով իրենից դուրս գտնվող բնության վրա և այն փոփոխելով, նա միևնույն ժամանակ փոփոխում է իր սեփական բնությունը։ Նա զարգացնում է իր բնության մեջ նիրհող կարողությունները և այդ ուժերի խաղը ենթարկում է իր սեփական իշխանությանը»։

Այս բնորոշման մեջ մեկ հիմնական միտք պետք է ընդգծվի, այն է՝ փոփոխելով բնությունը մարդը փոփոխում է նաև իր սեփական բնությունը, աշխատանքի պրոցեսում զարգացնելով իր տեխնիկական, գիտական, գեղարվեստական ընդունակությունները։ Աշխատանքի ընթացքում նա սովորեց պատրաստել գործիքներ և անվերջ զարգացնել դրանք ու դրանով իսկ նոր, ավելի բազմազան և ավելի խոր ձևափոխություններ մտցնել բնության մեջ։ Այդ նույն պրոցեսում նա սովորեց նկատել իրերի, առարկաների, երևույթների հատկությունները, կապակցությունները, գործողությունները, ֆիքսել դրանք մտապատկերների ու հիշողության մեջ, իսկ հետագայում կատարել ավելի բարդ մտածական գործողություններ՝ աբստրահումներ, ընդհանրացումներ։ Սկզբնապես նրա հիշողության մեջ ֆիքսվում էին այն հատկություններն ու գործողությունները, որոնք անմիջականորեն միահյուսված էին նրա աշխատանքի հետ, իսկ հետո նա սովորեց պատկերացնել ու գիտակցել առարկաների ավելի խոր հարաբերություններն ու կապակցությունները, ճանաչել նրանց օրինաչափությունները։ Այսպես է ընթացել գիտակցության ծագումն ու զարգացումը։ Նույն աշխատանքի ընթացքում է մշակվել, ասում է Մարքսը, գեղեցիկի զգացմունքն ու ճաշակը, մարդը սովորել է կերտել գեղարվեստական կերպարներ, ու այդպիսով առաջացել է աշխարհի գեղարվեստական արտացոլումը։

Իդեալիստները մոլորության մեջ են, երբ գիտակցության առաջացումը անջատում են մարդու ձևավորման պատմական այդ մեծ պրոցեսից։ Սխալվում են նաև այսպես ասած նատուրալիստ փիլիսոփաներն ու բնագետները, որոնք կարծում են, թե գիտակցությունն առաջացել է զուտ բնական, բիոլոգիական ֆակտորների ազդեցության տակ։ Էնգելսն իր ժամանակին քննադատության է ենթարկել այդ տեսակետը։ «Ինչպես բնագիտությունը, այնպես էլ փիլիսոփայությունը,— գրել է Էնգելսը,— մինչև այժմ միանգամայն արհամարհել են մարդու մտածողության վրա նրա գործունեության թողած ազդեցության հետազոտումը։ Նրանք գիտեն մի կողմից՝ միայն բնությունը, իսկ մյուս կողմից՝ միայն միտքը։ Սակայն մարդկային մտածողության ամենաէական և մերձավորագույն հիմքը հենց բնության փոփոխումն է մարդու կողմից, այլ ոչ թե սոսկ բնությունը որպես այդպիսին, և մարդկային բանականությունը զարգացել է այն չափով, որչափով նա սովորել է փոփոխել բնությունը»։

Սակայն աշխատանքը սոսկ բիոլոգիական, անհատական երևույթ չէ. այն

հասարակական երևույթ է։ Մենք չգիտենք անհատական արտադրություն, ասում է Մարքսը, մենք գիտենք հասարակականորեն պայմանավորված անհատների արտադրություն։ Երբ աշխատանքը սկզբում դարձավ կանոն, իսկ հետո անհրաժեշտություն, նա շարունակ հարկադրում էր ձևավորվող մարդկանց համախմբվել իրար հետ, որոշ հարաբերությունների մեջ մտնել՝ նյութական բարիքները արտադրելու և բաշխելու համար։ Հետևաբար, եթե արտադրության մի կողմը մարդկանց հարաբերությունն է դեպի բնությունը և դրա մարմնացումն են արտադրողական ուժերը, ապա մյուս կողմը մարդկանց հարաբերություններն են իրար նկատմամբ։ Եվ այս է, որ հասարակական բնույթ է տալիս արտադրությանը։ Ուստի այն թեզը, թե մարդը գործիք շինող կենդանի է, Մարքսը լրացնում է մի այլ թեզով՝ մարդը հասարակական կենդանի է։ Այս երկու հատկությունների մեջ բացահայտված է մարդու բուն էությունը, նրա ամբողջ հոգևոր կյանքի ծագման ու զարգացման հիմքը։ Հետևաբար, նրա գիտակցությունն էլ բիոլոգիական երևույթ չէ, այլ հասարակական երևույթ։

Համատեղ աշխատանքի հետևանք է նաև այն ֆակտորը, որը մտածողության հզորագույն խթան է հանդիսանում. դա լեզուն է, հոդաբաշխ խոսքը։ Լեզուն նույնքան հին է, որքան և մտածողությունը, ասում է Մարքսը։ Նախնադարյան կոլեկտիվի անդամների մեջ առաջացել է իրար բան ասելու պահանջը՝ առանց դրան անհնարին էր համատեղ աշխատակցություն։ Մեկուսացած մարդկանց արտադրությունը նույնքան անհնարին է, որքան լեզվի ծագումն ու զարգացումը առանց իրար հետ հաղորդակից լինելու պահանջ զգացող մարդկանց։ Այդ հաղորդակցման հզոր միջոցը հանդիսացավ լեզուն։ Լեզուն պրակտիկ մտածողությունն է, այսպես ասած մտածողության բնական մարմինը։ Լեզվական ձևերի մեջ (բառապաշար ու բառաձևեր, նախադասություններ, քերականական բազմապիսի ձևեր), հետևաբար և մտածողության մեջ ամփոփված են հասարակական ամբողջ փորձը, մարդկային իմացության ձեռք բերած արդյունքները։ Գրավոր ու բանավոր խոսքը մտածողության ու գիտակցության զարգացման հզոր միջոց է։ Լեզվի միջոցով նոր սերունդները ժառանգում են անցյալ սերունդների ձեռք բերած գիտելիքները, մտքերն ու իդեաները։ Լեզուն խորապես ժողովրդական է. ժողովրդական բառ ու բանի, առածների, առակների, ժողովրդական ասույթների, գիտական աֆորիզմների մեջ ընդհանրացած է ժողովրդի պատմությունն ու իմաստությունը։ Հանդիսանալով հաղորդակցման հիանալի միջոց, լեզուն նպաստել է մարդկանց միավորմանը հասարակության մեջ, հասարակական աշխատանքի կազմակերպմանը, կուլտուրայի զարգացմանը։ Կոլեկտիվ աշխատանքով մարդկանց ձեռք բերած ամեն մի գիտելիք թանձրանում և ամրապնդվում է նոր հասկացությունների, տերմինների մեջ։ Լեզվի միջոցով մարդիկ ժառանգում են անցյալ հասարակական փորձը. առանց դրան ամեն մի գիտելիք մոռացության կարող էր տրվել և ամեն անգամ երկար ժամանակ պիտի պահանջվեր մարդկանց հիշողության մեջ վերականգնելու համար։

Մտածողության էությունը հասկանալու համար պետք է հիշատակել նաև նրա էվոլյուցիայի մասին։ Ծագելով մարդկանց արտադրական և հասարակական գործունեության հիմքի վրա, լեզուն և մտածողությունը աստիճանաբար ձևավորվել և այն կատարելության են հասել, որոնց օգնությամբ մարդը ստեղծել է մեծ քաղաքակրթությունը։ Փոխելով բնությունը, մարդը փոխում է նաև իր սեփական բնությունը։ Սա խորագույն ճշմարտություն է։ Սկզբնապես մարդիկ մտածել են մտապատկերներով։ Լեզուն և մտածողությունը ֆիքսում էին մարդու անմիջական արտադրական գործունեությունը։ Սկզբնապես, ասում է Մարքսը, գիտակցությունը անմիջականորեն միահյուսված է նյութական արտադրության հետ։ Ծագելով հարյուր-հազարավոր տարիներ առաջ, լեզուն և մտածողությունը անցել են պատմական զարգացման, բարդացման ու հարստացման մեծ ճանապարհ։ Իհարկե, լեզուն ունի զարգացման իր օրենքները (դրանցով զբաղվում է լեզվաբանությունը), մտածողությունն՝ իր օրենքները (դրանցով զբաղվում են փիլիսոփայությունը, տրամաբանությունը, հոգեբանությունը)։ Սակայն դրանց անջատ պատկերացնել անհնար է։ Այս կապակցությամբ սկզբունքային խոր նշանակություն ունի Լենինի այն դրույթը, թե լեզվի պատմությունը միաժամանակ մտքի պատմությունն է։ Հնադարյան ժողովուրդների և երեխայի մտավոր զարգացումը մեզ հնարավորություն են տալիս գաղափար կազմել, թե ինչպես է կատարվել մտածողության էվոլյուցիան։



Սկզբում դա եղել է կոնկրետ, պատկերավոր, մտապատկերներով մտածողություն։ Ընդհանուր հասկացություններ չեն եղել, յուրաքանչյուր խոսք ներկայացրել է մի ամբողջական կոմպլեքս միտք, որ արտահայտել է և՛ առարկա, և՛ հատկություն, և՛ գործողություն։ Հետամնաց ժողովուրդներն ունեն պատկերացումներ առանձին ծառերի, առանձին ձկների, առանձին թռչունների մասին, սակայն ընդհանուր աբստրակտ հասկացություններ չունեն։ Հետագայում առաջանում են մտածողության զարգացման այնպիսի ընդունակություններ, ինչպիսիք են աբստրահումը, ընդհանրացումը, մտահանգումը և այլն։ Դրա հետ միասին խոսքն էլ բաժանվում է քերականական տարրերի, որոնք նշանակում են առարկան կամ գործողությունը կամ հատկությունը և այլն։

Աբստրահումը տրամաբանական մի գործողություն է, երբ մարդ մտովի առանձնացնում է առարկայի երևույթի այս կամ այն էական կողմը, հատկանիշը։ Բայց առարկաների, երևույթների կողմերը, հատկանիշները մեխանիկական գումար չեն ներկայացնում, այլ մի ամբողջություն են կազմում։ Ուստի և աբստրահումը ենթադրում է ամբողջության մասնատում, անդամատում, մի խոսքով անալիզ։ Ընդհանրացումը առարկաների և երևույթների ընդհանուր կողմերի կամ հատկանիշների միավորումն է մեկ հասկացության մեջ։ Ընդհանրացումն իր հերթին ենթադրում է սինթեզ, ամբողջություն կազմելու ընդունակություն։ Անալիզը, աբստրահումը, սինթեզը, ընդհանրացումը մարդկային մտածողության մեծագույն ընդունակություններն են, անխզելիորեն կապված լեզվական ձևերի հետ։ Դրանք ընդհանուր մարդկային ձևեր են։ Լեզուն, որ ընդհանրացման հզոր միջոց է, Ի. Պ. Պավլովն անվանում է երկրորդ սիգնալային սիստեմ հատուկ միայն մարդուն։ Կենդանիներին հատուկ է միայն առաջին սիգնալային սիստեմը, այսինքն՝ բնության առարկաների և երևույթների անմիջական ընկալումը։ Երբ պալեոնթոլոգը անհետացած կենդանու մնացորդների հիման վրա վերականգնում է ամբողջ կենդանու տիպը, երբ հնեաբանը Զվարթնոցի բեկորների հիման վրա վերականգնում է այդ հոյակապ տաճարի ամբողջական պատկերը, երբ ավիակոնստրուկտորը մտովի կառուցում է օդանավ և հետո այդ կերտվածքը մարմնացնում է մետաղի ու այլ նյութերի մեջ, երբ դատարանը քննում է հանցագործությունը, վերարտադրում է նրա ընթացքը, հետևանքը և կայացնում է վճիռը, երբ ճարտարա-

պետը մտովի կառուցում է Սովետների պալատը, որը շուտով կմարմնանա երկաթ-բետոնի, գրանիտի ու մարմարի մեջ, երբ կոմպոզիտորը երևակայությամբ կերտում է սիմֆոնիան, այն մարմնացնելով երաժշտական հնչյունների, մեղեդիների մեջ, երբ մաթեմատիկոսը բարդ դիֆերենցիալ և ինտեգրալ հաշիվներ է կատարում և այլն և այլն՝ այդ բոլոր դեպքերում մարդիկ օգտըվում են մտածողության այնպիսի հոյակապ պրիոմներից, ինչպիսիք են՝ անալիզը, սինթեզը, աբստրակցիան, ընդհանրացումը, ստեղծագործական երևակայությունը։

Այս իմաստով էլ պետք է հասկանալ Մարքսի այն հայտնի միտքը («Կապիտալ»-ում), թե մեղուն էլ կառուցում է, ճարտարապետն էլ։ Բայց մեղուն բնազդաբար է կառուցում իր մեղվաբջիջը, իր գլխում նախորոք չունենալով կառուցվելիքի մտապատկերը, իսկ ճարտարապետը նախքան շենքի կառուցելը իր գլխում նախապես ունի դրա իդեալական պատկերը։

Իզուր չէ, որ Լենինը բազմիցս անդրադառնում է այդ հարցերին։ «Ի՞նչ անել»-ում Լենինը վառ կերպով խոսում է ստեղծագործական երևակայության նշանակության մասին ռևոլյուցիոն գործիչի համար։ Պարտիայի XI համագումարում Լենինն ընդգծում էր, որ իզուր են կարծում, թե ստեղծագործական երևակայությունը հարկավոր է միայն բանաստեղծին։ Ո՛չ. այն հարկավոր է և՛ մաթեմատիկոսին, և՛ բոլոր գիտնականներին, և՛ քաղաքական գործիչին։ Եվ իրոք, եթե պարտիական ղեկավարը չի ուզում մնալ երևույթների մակերեսին, լինել փաստերի սոսկ արձանագրող, քարշ գալ դեպքերի հետևից, նա պետք է համարձակ ընդհանրացումներ անի իր շրջանի, ռեսպուբլիկայի, երկրի տընտեսական ու քաղաքական զարգացման մասին, օրինաչափություններ բխեցնի, կանխատեսություններ անի, գիտական հիմքերի վրա կառուցի իր ղեկավարությունը։

Գիտակցության ծագումը դիալեկտիկական բարդ պրոցես է։ Մատերիայից գիտակցության անցնելը, ասում է Լենինը, դիալեկտիկական բնույթ ունի և այդ պրոցեսը չհասկացան ոչ միայն մետաֆիզիկ իդեալիստները, այլև դիալեկտիկայի կողմնակից Հեգելը։ Իդեալիզմն ընդհանրապես անջատում է գիտակցությունը մատերիայից, ձգում, ուռցնում է մտածողությունը, դարձնում մատերիայից անկախ էակ, աշխարհի արարիչ, անմահ հոգի և այլն։ Իդեալիստական աշխարհայացքը պատահական երևույթ չէ, այն չի կարելի հայտարարել զուտ մոլորության կամ թյուրիմացության արդյունք։ Այն իհարկե, մոլորություն է, բայց այդ մոլորությունը փիլիսոփայական մի ամբողջ հոսանք է կազմում, ունի իր կողմնակիցներն ու հետևողները, հազարավոր տարիներ պահպանվում է բազմաթիվ մարդկանց գիտակցության մեջ։ Նշանակում է այն ունի պատմական և սոցիալ-դասակարգային խոր արմատներ։ Նշանակում է, հասարակության մեջ կան խավեր, դասակարգեր, որոնք շահագրգռված են նման հայացքներ տարածելու մեջ և իրենք էլ հենց տարածում են բոլոր միջոցներով այդ հայացքները։

Սակայն դրանով հարցը չի սպառվում. կա իդեալիզմի մի այլ արմատ ևս։

Աբստրակտ մտածողության առաջացումով մտավոր աշխատանքը անջատվեց ֆիզիկական աշխատանքից և դարձավ մարդու գործունեության մի ինքնուրույն բնագավառ, գիտակցությունը ձեռք բերեց որոշ ինքնուրույնություն, ճարաբերական ինքնուրույնություն։ Դա իր ժամանակին պատմական պրոգրեսիվ երևույթ էր, առանց դրան գիտություն լինել չէր կարող։ Սակայն



աբստրակցիան ու ընդհանրացումը իրենց մեջ պարունակում են իդեալիզմի իմացաբանական արմատ։ Լենինը խորապես բացատրել է այդ. «Մարդու իմացության երկատումը և իդեալիզմի (= կրոնի) ճնարավորությունը տրված են արդեն առաջին տարրական աբստրակցիայում»։ Իդեալիստը աբստրակցիայի ու ընդհանրացման արդյունքը անջատում է կոնկրետից, միտքն անջատում է առարկայից և դարձնում է ինքնուրույն էակ և, ծառերի հետևում չտեսնելով անտառը, մետաֆիզիկորեն հայտարարում է հոգի, համաշխարհային իդեա, աստված, արարիչ։ Իսկ ռեակցիոն դասակարգերի շահերը ամրապնդում են այդ եզրակացությունը։ Մյուս կողմից շահագործական հասարակության ամբողջ իրադրությունը մասսաների մեջ սերմանում է իդեալիստական պատկերացումներ։ Այդպիսով, գրում է Էնգելսը, «մարդիկ քաղաքակրթության արագ զարգացման ծառայությունը սկսեցին վերագրել գլխին, ուղեղի զարգացմանն ու գործունեությանը։ Մարդիկ սովորեցին իրենց գործողությունները բացատրել իրենց մտածողությամբ, փոխանակ դրանք բացատրելու իրենց պահանջմունքներով (որոնք իհարկե արտացոլվում են գլխում, գիտակցվում են), և այդպիսով ժամանակի ընթացքում ծագեց իդեալիստական այն աշխարհայացքը, որ տիրել է մտքերին, մանավանդ անտիկ աշխարհի կործանման ժամանակվանից»։ Այդ հայացքը, ավելացնենք մենք, այժմ այնպիսի նախապաշարմունքի ուժ է ստացել իմպերիալիզմի իդեոլոգների մոտ, որ խանգարում է նրանց հասկանալ նույնիսկ ամենապարզ բաները։

Այդ նախապաշարմունքի անհիմն լինելը ցույց տանք մի քանի ամփոփումներով.

1. Մեր գիտակցության հիմքն ու աղբյուրը օբյեկտիվ աշխարհն է իր առարկաներով, հատկություններով ու կապակցություններով։ Չլինեին առարկաները, այդ առարկաները չունենային տարածական ձև, որակ, քանակ, ապա մեր գիտակցության մեջ էլ չէր լինի դրանց համապատասխան մտապատկերը, հասկացությունը, երկրաչափական ֆիգուրը, քանակի գաղափարը և այլն։

2. Աբստրակտ գաղափարների առաջացման համար պետք է ոչ միայն լինեին առարկաներ, այլև պետք է առաջանար այդ առարկաների այս ու այն կողմը աբստրահելու և ընդհանրացնելու ընդունակություն, իսկ դա երկարատև պատմական զարգացման արդյունք է։

3. Գիտակցությունը ծագել է մարդու ակտիվ արտադրական գործունեության հիման վրա։ Հետևաբար, ոչ թե օբյեկտիվ առարկաներն են ինքնին առաջ բերել մարդկային մտածունակությունը, այլ մարդու հասարակական-պատմական պրակտիկան։ Պրակտիկան նախորդել է թեորիային և բարձր է թեորիայից։ Առաջ մարդիկ գործել են, հետո են սկսել ընդհանրացումներ ու դատողություններ անել։ Միլիոնավոր սերունդների պրակտիկ փորձի հիման վրա են ծագել մտածողության ձևերը և բովանդակությունը։

4. Գիտակցության իդեալիստական մեկնաբանության կողմնակիցները վկայակոչում են մարդու գիտակցության ինքնուրույնությունն ու ակտիվ դերը։ Սակայն մարքսիզմ-լենինիզմը ոչ միայն չի ժխտում մարդկային մտածողության ճարաբերական ինքնուրույնությունն ու ակտիվ դերը, այլ ընդհակառակը, ընդգծում է այդ բանը։ Հենց մարքսիստներն են, որ պաշտպանում են մարդկային բանականության առանձնահատուկ որակի սկզբունքը վուլգարիզատորների աղավաղումից։

*Գիտակցությունը ոչ միայն արտացոլում է աշխարհը, ասում է Լենինը, այլև կերտում է այն։ Վուլգարիզատորը կարող է ասել. «Դա իդեալիզմ է»։ Մինչդեռ դրանում կա խոր դիալեկտիկա-մատերիալիստական բովանդակություն։ Այն ամենը, ինչ մարդը կերտել է, իհարկե, կերտել է իր բանականության օգնությամբ։ Բանականությունից զուրկ կենդանիները ոչինչ չեն կերտում։ Ամբողջ հարցն այն է, սակայն, որ բանականությունը ինչ-որ միստիկական ուժով չէ գործում։ Նախքան բնության վերափոխումը, մարդկային բանականությունը, ինչպես տեսանք, ինքն այդ բնության զարգացման արդյունքը հանդիսացավ։ Այնուհետև, ոչ միայն իր ծագումով, այլև իր բովանդակությամբ մարդկային գիտակցությունը պարտական է նյութական աշխարհին, այնտեղից է կորզում իր բովանդակությունը, այնտեղ է գտնում իր գործունեության հենարանը։ Արտացոլելով բնության մեխանիկական, քիմիական, օրգանական, պատմության, հասարակական-տնտեսական օրենքները, ճանաչելով դրանք, մարդկային մտածողությունը հենվում է այդ օրենքների վրա։ Բոլոր այն դեպքերում, երբ մարդը ձգտում է իր մտածողությունը հակադրել օբյեկտիվ իրականության օրենքներին կամ խախտել դրանք, նա կրախի է մատնվում։ Փաստերը յուրաքանչյուր քայլափոխում հիշեցնում են մեզ, որ մենք մեր մարմնով, արյունով, ուղեղով բնության մի մասն ենք կազմում, նրա մեջ ենք գտնվում։ Բայց մարդը բնության սոսկ մասը չէ, նա վերափոխիչ ուժ է, որը ճանաչում է բնության օրենքները և համաձայն այդ օրենքների գործում։ Ճանաչողության ծավալը, խորությունը, բնույթը պայմանավորված են պատմական հանգամանքներով և գիտության մակարդակով։ Շահագործական հասարակարգերը իրենց բուն էությամբ կաշկանդում են մարդուն, սահմանափակում նրան նույնիսկ այն օրենքների նկատմամբ, որպիսիք նա արդեն ճանաչել է։ Դրան հակառակ սոցիալիստական հասարակարգը խորտակում է մարդուն սահմանափակող շղթաները և անսահման հորիզոններ բաց անում նրա ստեղծագործական բանականության առաջ։*

***

*Ինչպես տեսնում ենք, գիտակցությունը ոչ բիոլոգիական երևույթ է, ոչ դերբնական հոգու դրսևորում, ոչ մարդու արհեստական հայտնագործություն։ Գիտակցության ծագումը մի բարդ, երկարատև դիալեկտիկական պրոցես է, որը չեն կարող կամ չեն ուզում հասկանալ իդեալիստները։ Իդեալիստներն անզոր են այդ պրոցեսը բացատրելու։ Հենց վերջերս, գերմանական մի փիլիսոփա գրել է. «Մինչև այժմ ոչ մի մատերիալիստ չի կարողացել ապացուցել, որ տիեզերական նյութից որևէ աստիճանում ծագել է ոգին»։ Մեր համառոտ ակնարկը ցույց տվեց, որ դիալեկտիկական մատերիալիզմը միակ աշխարհայացքն է, որ ճիշտ և խոր կերպով բացատրում է գիտակցության էությունը. հենվելով գիտությունների վրա, նա վեր է հանում գիտակցության ծագման պրոցեսը, համարձակորեն դնում է չլուծված կնճռոտ հարցեր և ճիշտ մեթոդ է տալիս գիտություններին այդ հարցերը լուծելու համար։ Դիալեկտիկական մատերիալիզմը հզոր զենք է միլիոնավոր մասսաներին բարձր գաղափարներով զինելու, աշխարհը ճիշտ հասկանալու և այն կոմունիստական պրոգրեսի ուղղությամբ վերափոխելու համար։*

---



# ՊԱՐՏԻԶԱՆԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ԷՋԵՐԸ

*Սովետական բոլոր ժողովուրդների հետ միասին, նրանց հետ ուս-ուսի տված՝ հայ ժողովրդի լավագույն զավակները հերոսական փառքով իրենց պսակեցին Հայրենական Մեծ պատերազմի ռազմաճակատներում։ Սովետական Բանակի շարքերում կռվելով հիտլերյան զավթիչների դեմ՝ հայ մարտիկները պաշտպան կանգնեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումներին, անձնվիրաբար պաշտպանեցին սոցիալիստական Հայրենիքի փառքն ու պատիվը, իրենց հայրենական օջախը։ Թշնամու խոր թիկունքում ևս՝ ուկրաինական ու բելոռուսական պարտիզանական ջոկատներում, ֆրանսիական դիմադրության շարժման գնդերում և այլուր ֆաշիստական հրոսակների դեմ կռվում էին նաև բազմաթիվ հայեր։*

*Դժբախտաբար, մինչև վերջերս էլ մեր ժողովուրդը շատ քիչ բան գիտեր իր այն զավակների ճակատագրի մասին, որոնք փախուստ տալով ֆաշիստական գերությունից կամ ազատվելով թշնամական շրջապատման օղակից, հետագայում զենքը ձեռքին կռվել են պարտիզանական ջոկատներում։ Մեր գրականության մեջ եղած այդ բացը որոշ չափով գալիս է լրացնելու Ս. Հարությունյանցի «Ռազմաճակատի այն կողմում» գիրքը *, որ վերջերս ռուսերեն լեզվով լույս է ընծայել Հայպետհրատը։ Գրքի հեղինակը, որը եղել է հայկական հրաձիգ դիվիզիայի գումարտակներից մեկի կոմիսարը, 1942 թվականին մասնակցել է Ղրիմի օպերացիային և ծանր վիրավորված վիճակում գերի առնվել գերմանացիների կողմից, ապա նետվել Դեմբլինի համակենտրոնացման մահվան ճամբարը։ Նա տեսել է գերության նախատինքը, ըմպել ֆաշիստական ստրկության դառնությունը։ Նա եղել է ճամբարի ընդհատակյա պարտիական կազմակերպության ղեկավարը և հետո՝ հայկական «Հաղթանակ» պարտիզանական ջոկատի հրամանատարը։*

*Այս գրքում դեպքերն ու իրադարձությունները նկարագրված են նրանց անմիջական մասնակցի կողմից, որը տեսել է մեր ժամանակավոր անհաջողությունը, նահանջը և, վերջապես, նրա հաղթական երթը դեպի Բեռլին։*

*Գրախոսվող գիրքը, ինչպես հեղինակն էլ նշում է, գեղարվեստական երկ չէ, այլ ճշմարտացի պատմություն հայ պարտիզանների մի ջոկատի և նրա մարտական գործողությունների մասին՝ սկսած ջոկատի առաջին փոքր ելույթներից մինչև խոշոր գործողությունները։ Դա գրառումներ են սովետական շարքային մարդկանց ու նրանց մարտական գործերի մասին, որոնք գտնվելով թշնամական օղակում՝ պահպանել են իրենց հոգու կայունությունը, բարոյական անաղարտությունը, իրենց նվիրվածությունը Հայրենիքին։*

*Գիրքը բացվում է Կովպակի անվան Ուկրաինական առաջին պարտիզանական դիվիզիայի հրամանատար, Սովետական Միության Հերոս՝ գեներալ-*

1 С. Арутюнянц, „По ту сторону фронта“, записки партизана, Армгиз, Ереван 1957 г.

*մայոր Պ. Վերշիգորայի ներածական հոդվածով։ Նա բարձր է գնահատում թշնամու թիկունքում, հիտլերյան զինված ուժերի ջախջախման գործում հայ պարտիզանների մասնակցությունը։ Բացի ջոկատներում եղած առանձին հայ պարտիզաններից, Ուկրաինայում գոյություն ունեին մի քանի պարտիզանական խմբեր՝ կազմված համարյա բացառապես հայերից։ Այսպես, Սովետական Միության Հերոս գեներալ-մայոր Նաումովի պարտիզանական հեծելազորային միավորման կազմում գործում էր Ա. Ի. Միկոյանի անվան հայկական հեծելավաշտը, որը դեպի Լվովի և Դրոգոբիչի մարզերը Նաումովի արշավանքի ժամանակ գործում էր որպես հարվածային խումբ։ Հայ պարտիզանների երկրորդ խումբը՝ «Հաղթանակ» ջոկատը, 1944 թվականին միացավ Պ. Վերշիգորայի հրամանատարության տակ գործող Ուկրաինական առաջին դիվիզիային և մասնակցեց նրա երկու ծանր արշավանքներին։*

*Ահա հենց այս «Հաղթանակ» ջոկատի մարտական գործողություններն է պատկերում գրախոսվող գիրքը, որը կարդացվում է մեծ հետաքրքրությամբ։*

*Ծանր ու անհավասար կռիվներում վիրավորված կամ շրջապատման մեջ ընկած մարտիկներին գերի են վերցնում հիտլերյան զավթիչները և ուղարկում մահվան ճամբարները։*

*Ահա նրանք՝ «անհայտ կորածները»։*

*«Չլինի՞ թե ետ մնամ, չլինի՞ թե ընկնեմ», շարունակ այս միտքն է ծակում մարդու ուղեղը։ Կանգ առնել կամ ընկնել՝ հավասարազոր էր մահվան. հիտլերականները գնդակահարում են յուրաքանչյուրին, ով ընկնում է կամ ետ մնում շարասյունից։ Գերիների շարասյուներն ամեն մի կիլոմետրի վրա պակասում են, իսկ ճանապարհին մնում են գորշ, անձև կույտեր։*

*Ոչ ոք ետ չի նայում։ Բայց երբ հետևում լսվում է ավտոմատի ճարճատյունը, մարդիկ ցնցվում են, կուչ գալիս, և ատամները սեղմած շարունակում են առաջ գնալ դեպի անհայտություն։*

*Մենք կորցրել էինք ժամանակի հաշիվը։ Քանի՞ օր կտևի այս հոգեմաշ, համարյա մեխանիկական դարձած շարժումը դեպի Արևմուտք։ Մեզանից ոչ ոք չէր կարող ասել այդ։ Եվ ոչ ոքի հետ խոսելու սիրտ էլ չկար։ Ինչի՞ մասին խոսես։ Գերության նախատինքի՞ մասին, որ մեզանից ամեն մեկի մեջ այրող ամոթանքի զգացմունք էր հարուցում։*

*Գլուխները կախ քայլում էին շարասյան մեջ մեր մարտիկներն ու հրամանատարները» (էջ 9)։*

*Գրքի առաջին գլուխը, որ վերնագրված է «Փշալարի հետևում», նկարագրում է գերի ընկած սովետական մարտիկների ծանր ու մղձավանջային վիճակը ֆաշիստական Դեմբլին ու ապա Սելեց-Զավոնիի համակենտրոնացման ճամբարներում։ Հիտլերյան ճիվաղներն անում էին ամեն ինչ, որպեսզի ֆիզիկապես հյուծեն ռազմագերիներին, նվաստացնեն հոգեպես. նրանք ջանում էին սովետական ռազմիկներին վերածել ստրուկների մի անդեմ մասսայի՝ զուրկ մարդկային արժանապատվության, պարտքի ու պատվի զգացմունքից։ Մահվան ճամբարներում հաստատված սովի «սննդային ռեժիմը», տարափոխիկ հիվանդությունները, ծեծն ու լլկանքը, խոշտանգումները, ֆիզիկական ծանր աշխատանքը գերեզման էին տանում հարյուրավոր մարդկանց։ Հեղինակը տալիս է համակենտրոնացման ճամբարներում սովետական ռազմիկների ապրած ծանր տառապանքների ճշմարիտ նկարագրությունը։*

*Սակայն գերության մեջ էլ ֆաշիստները չկարողացան ծնկի բերել, ընկճել սովետական մարդկանց։ Գրքում սրտահույզ էջեր կան սովետական ռազմիկների կայունության, տոկունության, Հայրենիքի նկատմամբ ունեցած նրանց անսահման սիրո և նվիրվածության մասին։ Թշնամին չկարողացավ սասանել մեր մարդկանց մեծ հավատը հաղթանակի նկատմամբ։*



*Գրքում նկարագրված է մի այսպիսի էպիզոդ։ Գնացքով գերիներին փոխադրում են համակենտրոնացման ճամբար։ Ճանապարհին հայ մարտիկներից մեկը՝ Անդրանիկը, դառնում է իր ընկերներին և վստահորեն ասում.*

*«— Բայց և այնպես ֆաշիստական զավթիչները չե՛ն լինի Բաքվում, Թբիլիսիում ու Երևանում։ Չե՛ն թողնի նրանց։ Չե՛ն թողնի,— կրկնում էր նա՝ կարծես աշխատելով ինքն իրեն համոզել»։*

*Եվ երբ մեկը կասկածանքի տակ առնելով ասում է, թե դժվար, շատ դըժվար կլինի հաղթել գերմանացիներին, Անդրանիկը, ամբողջ մարմնով ցնցվելով, գոչում է.*

*«— Դժվա՞ր է լինելու։ Էհ, ի՛նչ կա որ, իհարկե, հեշտ չի լինելու։ Ո՞վ է ասում, թե ֆաշիստների հետ կռվելը հեշտ բան է։ Բայց, միևնույն է, մերոնք նրանց կջախջախեն ու կվռնդեն» (էջ 13)։*

*Եվ երբ պրովոկատորներից մեկի մատնությամբ, հենց գնացքի ընթացքի ժամանակ գերմանացիները գնդակահարում են այդ անհայտ հերոսին, նրա վերջին խոսքն է լինում.*

*— Ընկերնե՛ր, վրեժ լուծեք։*

*Գերության մեջ էլ սովետական մարտիկները շարունակում են պայքարել։ Հեղինակը հանգամանորեն պատմում է, թե ինչպես ճամբարում ստեղծվում է ընդհատակյա պարտիական կազմակերպություն, որը ագիտացիոն-պրոպագանդիստական լայն աշխատանք է ծավալում ռազմագերիների մեջ, համախմբում նրանց իր շուրջը, ուժ և հավատ է ներշնչում հուսալքվածներին, տապալում նրանց իր շուրջը...*

*Ընդհատակյա պարտիական բյուրոն կապվում է տեղական բնակիչների հետ, ձեռք բերում «Պրավդա» թերթը։ Գրքում լավ է տրված այդ էպիզոդը, երբ ամիսներ հետո սովետական մարդիկ՝ կտրված արտաքին աշխարհից, հնարավորություն են ստանում տեսնելու իրենց հարազատ թերթը։*

*«— Դե լավ, ընկերներ,— մի տեսակ առանձին հանդիսավորությամբ խոսեց Մաթևոսը,— նայեցեք...*

*Նա ծոցից ինչ-որ բան հանեց և փռելով, ցույց տվեց բոլորին՝ շուռումուռ տալով բոլոր կողմերի վրա։*

*— «Պրավդա՜», «Պրավդա՜»։*

*Անտառի տերևների սոսափյունի պես հազիվ զսպված մի շշուկ տարածվեց բարակում։ Տասնյակ ձեռքեր մեկնվեցին դեպի Մաթևոսը։ Ամեն մեկն ուզում էր ձեռքով շոշափել թերթը, համոզվել, որ աչքերը չեն խաբում իրեն։ Բոլորի դեմքը պայծառացել էր երջանիկ ժպիտից, շողում էին աչքերը։*

— Կամաց, տղերք,— վախեցած շշնջաց Մաթևոս Խաչատրյանը։— Կպատռենք և էլ ոչինչ չենք կարող կարդալ» (էջ 108)։

Հիտլերյան խուզարկուներից գաղտնի մի քանի երեկո շարունակ ծայրից-ծայր կարդում ու վերակարդում են «Պրավդա»-ն։

«Արեգակի պայծառ, կենարար ճառագայթները նորից ցրեցին խավարը։

Բոլոր ներքին կասկածները, ամբողջ երկյուղը, որ երկար ամիսներ մաշում էին մեր սիրտը, միանգամից չքացան։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան վստահորեն առաջ է տանում ժողովրդին։ Նա հաստատ հավատում է սովետական մարդկանց ուժին, վստահ է, որ լույսը վերջնական հաղթանակ է տանելու խավարի դեմ, որն իր սև թևով ժամանակավորապես ծածկել է մեր Հայրենիքի մի մասը» (էջ 111)։

Պարտիական կազմակերպությունը՝ հայրենասեր բնակիչների աջակցությամբ կազմակերպում է ռազմագերիների փախուստը մահվան ճամբարից։

«Նորից կրակի գծում»— այսպես է վերնագրված գրքի երկրորդ գլուխը։ Ահա նրանք՝ «անհայտ կորածները», որոնց կորուստը դեռ ողբում են շատ հայ ընտանիքներ։ Մարտիկներն ազատության մեջ են, կազմակերպում են հայկական պարտիզանական ջոկատը։ Նրանք նորից պայքարի առաջին գծումն են. ժողովրդական վրիժառուները երդվում են ամեն կերպ օգնել Սովետական Բանակին՝ ջախջախելու և մայր հողից վռնդելու հիտլերյան զավթիչներին, վրեժխնդիր լինել նրանց արյունոտ չարագործությունների համար։ Հեղինակը պատմում է պարտիզանական ջոկատի մարտական առաջին մկրտության, պարտիզանական պայքարի հերոսական բախումների մասին։ Ուկրաինայի հողում մի բուռն հայ քաջեր, վատ զինված, կտրված Մեծ հողից, կիրառելով պարտիզանական պատերազմի տակտիկան՝ մեկ տարի շարունակ հանկարծակի և դիպուկ հարվածներով ուժասպառ, արյունաքամ էին անում գերմանական զորամասերը, ոչնչացնում նրանց կենդանի ուժն ու տեխնիկան, կտրատում ռազմական կոմունիկացիաները, պայթեցնում երկաթուղային էշելոնները, ճանապարհները, կամուրջները և այլն։

Ս. Հարությունյանցի գրառումներն ընթերցողին ծանոթացնում են հայկական պարտիզանական ջոկատի մարտական ուղու հետ։ Այդ կռիվներում ջոկատն անընդհատ համալրվում է գերմանական ճամբարներից փախած հայ, վրացի, ադրբեջանցի, ռուս, ղազախ, ուկրաինացի բազմաթիվ ռազմագերիներով. ջոկատ են գալիս տեղացի բնակիչները։ Բացի ռազմական արշավանքներից, պարտիզանները մասսայական-բացատրական խոշոր աշխատանք են կատարում տեղական բնակիչների շրջանում, գրում ու տարածում են բազմաթիվ թռուցիկներ։

1944 թվականի սկզբներին պարտիզանական «Հաղթանակ» ջոկատը հանդիպում է Կովպակի անվան Ուկրաինական առաջին պարտիզանական լեգենդար դիվիզիային և միանում նրա հետ։

Գրքի վերջին՝ «Անմոռանալի օրեր» գլխում տրված է ուկրաինացի ժողովրդական վրիժառուների հետ միասին հայ հայրենասերների կատարած սխրագործությունների սեղմ պատկերը։ Ուկրաինական պարտիզանական դիվիզիայի կազմում հայերը մասնակցում են թշնամու գերազանց ուժի դեմ Լվով—Վարշավյան ծանր արշավանքին, մարտերով անցնելով մոտ 3.000 կիլոմետր ճանապարհ։

«Ռազմաճակատի այն կողմում» գրքում կան արժեքավոր շատ նյութեր



ինչպես հայ, այնպես էլ եղբայրական ժողովուրդների լավագույն որդիների հերոսական սխրագործությունների, նրանց հայրենասիրական սքանչելի գործերի մասին։ Պարտիզանի գրառումներից ընթերցողի առաջ կանգնում են կոլտնտեսային դաշտերի մարդիկ՝ Հակոբ Հակոբյանը և Լորիս Մելիքյանը, անբաժան ընկերներ Անտոն Պողոսյանը և Վալոդյա Տոնյանը, ուսուցիչ Ալո Ցայրոյանը, ջոկատի պարտկազմակերպիչ դոցենտ Հովհաննես Պետյանը, պարտիական նախկին աշխատող Մաթևոս Խաչատրյանը, ինչպես նաև Սերգեյ Խալաթյանը, Արիստակես Կլիկչյանը, Երվանդ Ղասաբյանը և շատ ուրիշներ։ Նրանցից ամեն մեկը բնավորությամբ, խառնվածքով իրարից տարբեր մարդիկ են, բայց նրանց միավորել ու նպատակամղել է Հայրենիքի սերը, ջերմ հայրենասիրության վսեմ զգացմունքը։ Ընթերցողի հիշողության մեջ են մնում Պյոտր Բրայկոյի, Դավիթ Բագրաձեի, Պ. Վերշիգորայի, ղազախ Ալթաևի, Մ. Սխիրթլաձեի, թաթար Ախմեդ Աբդիշևի և շատ ուրիշ քաջերի պորտրետները։ Ահա և հայկական պարտիզանական հեծելավաշտի հրամանատար Արամայիս Հովսեփյանը, սանհրահանգիչ Մամիկոնյանը, որը լինելով ծանր վիրավոր՝ փրկում է կոմիսարի կյանքը, շատերի հետ ընկնելով գերության ճանապարհին։

Միաժամանակ հեղինակն արգահատանքով նկարագրել է մի բուռն մարդկանց, որոնք դավաճանելով Հայրենիքին, իրենց ողորմելի, քստմնելի կյանքը փրկելու նպատակով՝ ծառայության էին մտել հիտլերականների մոտ։

Հայրենիքի պատվի, անկախության ու ազատության համար մղվող պայքարում ընկան բազմաթիվ հայ պարտիզաններ։ «Թող թեթև լինի ուկրաինական հողը նրանց վրա,— գրում է ներածական հոդվածում գեներալ-մայոր Պ. Վերշիգորան։— Այդ հողի մեջ հանգչեցին նրանք ընդհանուր գործի համար մղված մարտերում»։

Գիրքը տոգորված է սովետական ժողովուրդների բարեկամության ջերմ շնչով, բարեկամություն, որ դիմացավ պատերազմի դաժան փորձությանը։ Ահա ռուս և ուկրաինացի հասարակ մարդիկ, որոնք վտանգելով իրենց և իրենց հարազատների կյանքը, օգնում են հայ մարտիկներին, ուղեկցում են նրանց, պատսպարում, կերակրում։ Ահա և հայ կտրիճ Բագրատ Գալստյանը, որը վերահաս մահից փրկում է դասակի հրամանատար Վանո Ռեխվիաշվիլուն։

Գրախոսվող գիրքը դաստիարակչական մեծ նշանակություն ունի մեր աշխատավորների, հատկապես երիտասարդության համար։

Այս արժեքավոր գիրքը, սակայն, ունի որոշ թերություններ, որոնք հնարավոր է և պետք է վերացնել հետագա հրատարակությունների ժամանակ։ Գրախոսվող գիրքը, ինչպես ասացինք, գեղարվեստական ամբողջական գործ չէ, այլ պարտիզանական պայքարի անմիջական մասնակցի հուշեր, գրառումներ։ Սակայն հեղինակը ջանալով որքան հնարավոր է ճշգրտորեն վերարտադրել պարտիզանական պայքարի անցած դեպքերն ու փաստերը, քիչ է ուշադրություն դարձրել շարադրանքի գեղարվեստական կողմի վրա։ Սա վերաբերում է գրքի երկրորդ, և մանավանդ երրորդ գլուխներին, ուր բազմաթիվ էջերում ժամանակագրական կարգով սոսկ արձանագրված են դեպքերը. գրքում քիչ են պարտիզանական կյանքի ուշագրավ նկարագրություններ, էպիզոդներ, լավ չեն երևում մարդիկ իրենց անձնական խոհերով ու մտորումներով։

Համոզիչ չէ Դեմբլինի համակենտրոնացման ճամբարի պարետի օգնական Խորենի կերպարը։ Գրքի սկզբում (էջ 28—29) Խորենը դիմելով հայ ռազմագերիներին, ասում է, որ ճամբարի պարետ Արսենը դավաճան է, վայելում է

հիտլերականների անսահման վստահությունը և մերկացնում վերջինիս կողմից տարածվող ստահոդ լուրերը ֆաշիստների ինչ-որ հաղթական արշավանքների մասին։ Միաժամանակ գերիներին խորհուրդ է տալիս լրջորեն կշռադատել և ապա նոր որոշում ընդունել ազգային լեգեոնի շարքերը մտնելու մասին։ Այնպիսի տպավորություն է ստացվում, որ պարետի օգնականը բարեկամ է։ Սակայն հետագայում, առանց հեղինակի որևէ մեկնաբանության, գրքի հետագա շարադրանքից երևում է, որ Խորենը նա դավաճան է, ֆաշիստների հնազանդ կամակատարը։

Ահա և նման կարգի մի այլ փաստ։ Ռազմագերիների մեջ կային մարդիկ, որոնք տատանվում էին, սպասողական վիճակում էին։ Այդ խմբի ղեկավարը Ռաֆիկ Սահակյանն էր, որը համոզում էր գերիներին ծառայության մտնել ֆաշիստների կողմից կազմակերպված դաշնակցական լեգեոնում (էջ 46—47)։ Հասկանալի պատճառով ընդհատակյա պարտիական բյուրոն որոշում է ընդունում ռազմագերիների այդ մասին ազատագրել Ռ. Սահակյանի ազդեցությունից (էջ 51)։ Մի քանի էջ հետո ընթերցողի համար անսպասելի կերպով, առանց հարկավոր մեկնաբանությունների ու վերլուծությունների, Ռ. Սահակյանը ճամբար եկած դաշնակցական գործչի ելույթից հետո հանդես է գալիս ազգային լեգեոնի դեմ, և ապա հետագայում պարտիզանական ջոկատում նա քաջաբար կռվում է զավթիչների դեմ ու հերոսաբար զոհվում։

Գրքի ներածական մասում պարտիզանական միավորման հրամանատար Պ. Վերշիգորան թվարկում է մի քանի հայ պարտիզանների անուններ, որոնք հերոսի մահով ընկան Հայրենիքի ազատության ու անկախության համար մղվող պայքարում։ Անհասկանալի պատճառներով Ս. Հարությունյանցը ոչինչ չի գրում, թե ինչպես, ինչ պայմաններում զոհվեցին այդ ընկերները։ Այստեղ հարկ ենք համարում ասել մեր ցանկությունը. լավ կլիներ, եթե հեղինակը վերջաբանի փոխարեն համառոտակի պատմեր կենդանի մնացած նախկին ռազմիկների մասին, որոնք վերադարձել են խաղաղ աշխատանքի։

Թշնամու դեմ մղված պարտիզանական պայքարի առնչությամբ ընթերցողը գրքում հանդիպում է բազմաթիվ տեղանունների, որոնց շատերին նա ծանոթ չէ։ Ցանկալի էր գրքում տեսնել պարտիզանական հայկական «Հաղթանակ» ջոկատի և Կովպակի անվան ուկրաինական դիվիզիայի մարտական գործողությունների, արշավանքների քարտեզը։ Առանց դրան ընթերցողը հստակ պատկերացում չի կարող կազմել ժողովրդական վրիժառուների անցած մարտական ուղու մասին։ Միաժամանակ լավ կլիներ գրքում ունենալ նաև որոշ ֆոտոփաստաթղթեր։

Ցավոք սրտի այս արժեքավոր գիրքը լույս է տեսել միայն ռուսերեն և այն էլ 3.000 օրինակ տիրաժով։

Մի ցանկություն ևս։ Շատ օգտակար կլիներ Հայրենական Մեծ պատերազմում մեր քաջարի հայ պարտիզանների կյանքն ու մարտական սխրագործությունները տեսնել կինոէկրանի վրա. այդ նպատակով լավ կլինի, որ Երևանի կինոստուդիան «Ռազմաճակատի այն կողմում» գրքի և պարտիզանական պատերազմի մյուս մասնակիցների հիշողությունների հիման վրա ստեղծի մի գեղարվեստական ֆիլմ։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

---

# ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ ՀԱՅ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի պատմության ինստիտուտը հրատարակել է պատմական գիտությունների դոկտոր Ս. Ե. Հակոբյանի «Հայ գյուղացիության պատմություն» մենագրության առաջին հատորը[1]։ Ինչպես երևում է հեղինակի առաջաբանից, հիշյալ աշխատությունը բաղկացած է չորս հատորից և այս առաջին հատորն ընդգրկում է վաղ ֆեոդալիզմի շրջանը։ Հեղինակի այս նախաձեռնությունը, անշուշտ, արժանի է խրախուսանքի և չի կարող իր վրա չգրավել պատմաբանների, տնտեսագետների և հասարակական գիտությունների մյուս մասնագետների ուշադրությունը։

Ֆեոդալական հասարակության գյուղացիության պատմությունը նախ և առաջ այդ հասարակարգում շահագործվող դասակարգի պատմությունն է, նրա պայքարի պատմությունն ընդդեմ շահագործողների։ Գյուղացիության պատմությունը շարադրողի առջև ծառանում են պատմական և տնտեսագիտական բնույթի բազմաթիվ հարցեր, որոնց ճիշտ լուծումից էլ մեծապես կախված է աշխատության հաջողությունը։

Պատմական բնույթի հարցերի շարքում, մեր կարծիքով, առաջին տեղը պետք է գրավի այն, թե ժամանակագրական առումով հեղինակն ինչպես է սահմանազատում իր ուսումնասիրած շրջանը նրան նախորդող և հաջորդող շրջաններից։ Սա որքան որ հասարակ է թվում, նույնքան էլ կարևոր է։ Քանի որ աշխատությունը նվիրված է մի ամբողջ էպոխայի՝ վաղ ֆեոդալիզմի դարաշրջանին, այսինքն՝ ավելի քան 7 դար, ապա հարկ կա, որ գյուղացիության պատմությունը շարադրվի ըստ առանձին ենթաշրջանների, որոնց մեջ զարգացել են պատմական պրոցեսները։ Մասնավորապես Հայաստանի պատմության համար սա շատ կարևոր է, նկատի ունենալով, որ հայ ժողովրդի պատմությունը վաղ ֆեոդալիզմի տարբեր շրջաններում ընթացել է քաղաքական տարբեր և հաճախ միմյանց հակադիր պայմանների մեջ։ Ուստի անհնար է տնտեսական երևույթները վերլուծելիս հաշվի չառնել քաղաքական այն պայմանները, որոնք խթանել կամ խանգարել են պատմական պրոցեսի զարգացմանը։

Չի կարելի պնդել, թե պատմական բնույթի աշխատությանը ներկայացվող այս տարրական պահանջները լիովին հաշվի են առնված գրախոսվող աշխատության մեջ, որը և մեր կարծիքով կանխորոշել է գրքի անհաջող կառուցվածքը։ Հաշվի չառնելով, որ աշխատությունը նվիրված է գյուղացիության պատմությանը և ոչ թե գյուղացիությանը բնորոշող կամ նրա հետ կապված զանազան տերմինների ստուգաբանությանը, հեղինակը գիրքը կառուցել է ըստ տերմինների հաջորդական զարգացման և գլխավոր շեշտը դրել է զանազան տերմինների ստուգաբանական քննության վրա։ Ներածական բաժնում խոսելով գյուղացիության մասին՝ հեղինակը գրում է. «Մատենագրական աղբյուրները հիշատակում են ռամիկ, շինական, գեղջուկ, մշակ, գռեհիկ, կարճազատ, տառապյալ, բռնկոտն, ծառա, աղախին, ստրուկ, վար ու այգի չունեցող, տնանկ, վարձկան, նվազունք տերմինները, որոնք անկասկած ունեն սոցիալական տարբեր բովանդակություն... Այս տերմինների տարբերությունները, նրանց գործածությունը կոնկրետ պատմական պայմաններում, ցույց են տալիս նույնպես նրանց զարգացման էտապները։ Գյուղացիական բնակչության տարբեր խավերի սոցիալ-տնտեսական կացությունն արտահայտող այդ տերմինների բացահայտումն ու արժեքավորումը հայ ժողովրդի պատմության ամենակենտրոն հարցերից մեկն է, որը և դրվել է մեր ուսումնասիրության և ուշադրության կենտրոնում» (էջ 47—48, ընդգծ. մերն է—Հ. Թ., Վ. Գ.)։ Չնկատելով, որ սոցիալ-տնտեսական երևույթների ներքին էությունը հնարավոր է բացահայտել այդ երևույթների բազմակողմանի վերլուծության ճանապարհով և ոչ թե այդ երևույթների այս կամ այն կողմն արտահայտող տերմինների պարզ մեկնաբանությամբ, հեղինակը որոշ նահանջ է կատարել տնտեսական երևույթների հետազոտման վաղուց արդեն ճանաչված գիտական մեթոդից։ Սոցիալ-տնտեսա-

---

[1] Ս. Ե. Հակոբյան, «Հայ գյուղացիության պատմություն» (վաղ ֆեոդալիզմի դարաշրջան), Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակչություն, Երևան, 1957 թ., 542 էջ։

այն կատարված էր եկեղեցական ժողովների կողմից՝ քահանաներին պտղի վճարելու չափը որոշելու նկատառումով։ Դա մի կողմնակի վկայություն է, որ կարող է կռվան ծառայել՝ նշելու համար գյուղացիների միջև եղած ունեցվածքային տարբերությունները։

Իհարկե, ճիշտ չէ «Հայ գյուղացիության պատմության» հեղինակը, երբ եկեղեցական ժողովի կողմից սահմանված կանոնների մասին եղած վկայության հիման վրա գյուղացիությանը արհեստականորեն բաժանում է 10 դասի և շեշտում, թե այդ տարբեր դասերը շահագործում էին միմյանց։ «Թուանիկը» գյուղում հանդես եկած այն ունևոր գյուղացին էր,—ասում է ընկ. Հակոբյանը,— որը շահագործում էր «վար ու այգի չունեցող», սեփականազուրկ համագյուղացիների աշխատանքը» (էջ 268)։ Իսկապես, եթե մենք ընդունում ենք, որ մարզպանական Հայաստանում գյուղական համայնքում գոյություն ունեին ունեցվածքային տարբերություններ, իհարկե հնարավոր է, որ ունևորները շահագործած լինեին սակավազորներին։ Սակայն գյուղացիության պատմության մարքսիստական շարադրանքի առանցքը վաղ ֆեոդալիզմի շրջանում ոչ թե պետք է կազմի այդ հանգամանքը, այլ այն, որ ամբողջ գյուղացիությունը որպես շահագործվող դասակարգ հեծում էր տիրապետող դասերի ծանր լծի տակ։ Ահա թե ինչու պետք է մերժել ընկ. Հակոբյանի ուսումնասիրության այն մեթոդը, որով գյուղացիության պատմության հիմքում դրվում է նրանից զանազան դասեր սարքելու անճիշտ և ըստ էության սխալ սկզբունքը։

Քննության առնելով շինականության տնտեսական ու քաղաքական վիճակը՝ ընկ. Հակոբյանը հետևողականորեն զարգացրել է մի օրիգինալ տեսություն, թե իբրև շինականները վաղ ֆեոդալիզմի շրջանում հանդիսանալով համայնքի ազատ անդամներ, օժտված էին լայն իրավունքներով։ Առարկելով ակադեմիկոս Մանանդյանին, պրոֆեսոր Սամվելյանին և ուրիշների, մեղադրելով նրանց զանազան սխալների մեջ, ընկ. Հակոբյանը եկեղեցական կանոններից ու եկեղեցական ժողովներից զանազան մեջբերումներ կատարելով, ամեն կերպ ջանում է ցույց տալ, թե շինականները եղել են ազատ, օժտված քաղաքացիական որոշակի իրավունքներով։ Մարքսիստ հետազոտողը չի կարող կղերա-ֆեոդալական պատմագիրների ասույթները և եկեղեցական կանոնները սովորական ռեֆերացիայի ենթարկել, նա պարտավոր է գիտենալ, որ եկեղեցին լինելով գործիք տիրող դասերի ձեռքին, միշտ էլ իրեն ձևացրել է որպես ապադասակարգային, համաժողովրդական, համազգային ինստիտուտ։ Առանց այս հանգամանքը հաշվի առնելու եկեղեցական կանոնների, հոգևորականների կողմից գրված ամեն մի փաստաթղթի ոչ քննադատաբար օգտագործելը ժամանակակից պատմաբանին կարող է շեղել իր ճանապարհից, ինչպես այդ տեղի է ունեցել ընկ. Հակոբյանի հետ։ Ընկ. Հակոբյանը ձեռք բերելով և օգտագործելով եկեղեցական կանոնները, գտել է, որ դրանք իրենց սոցիալական իմաստով խիստ հետաքրքրական և բովանդակալից են։ Մասնավորապես նկատի ունենալով «Կանոնք Շահապիվանի ժողովոյն», ընկ. Հակոբյանը գտել է, որ այդ կանոնները տալիս են ոչ միայն հինգերորդ դարի տնտեսական կյանքի պատկերը, այլև շինականների իրավական դրությունը։ Նա գրում է. «Այս ժողովը խիստ ու դաժան կանոններ է մշակել հոգևորականների պիղծ և այլասերված բարքերի, աշխարհիկ ֆեոդալների ցոփ ու անբարոյական վարքի, ամուսնալուծության... ծծղնեական աղանդի դեմ։ Մինչև օրս, մեզ թվում է, ճիշտ չեն մեկնաբանված այս կանոնների բովանդակությունները։ Շահապիվանի կանոնները հետազոտող մասնագետները կարծել են, որ հանցապարտ ազատները ենթակա են եղել միայն դրամական տուգանքների, որ նրանք իբր ազատ են եղել հարկադիր աշխատանքից, իսկ շինականները բացի դրամական տուգանքներից ենթակա են եղել նաև հարկադիր աշխատանքի, ծեծի, մրելու, նրանց ճակատին աղվեսադրոշմ խարանելու։ Այստեղից էլ շինականների դրությունը հետազոտողները հանգել են այն սխալ եզրակացության, որ շինականը եղել է «անազատ», «ճորտ» և հանդիսացել է տիրոջ սեփականությունը» (էջ 283—284)։ Իհարկե, եթե վերջում բերված փաստերը չեն հերքվում, ապա ճիշտ են վարվում շինականների դրությունը հետազոտողները, երբ շինականներին անվանել են անազատ, ի հակակշիռ ազատների դասի։ Գրախոսվող գրքի ընթերցողը բնականաբար հանգում է այն հետևության, որ հեղինակի բազմաթիվ առարկությունները շինականների անազատ լինելու դեմ, տվյալ դեպքում զուրկ են ծանրակշիռ փաստարկներից։ Միաժամանակ հեղինակը հարկ եղած չափով չի վերլուծում Շահապիվանի ժողովի մշակած կանոնների սոցիալ-դասակարգային էությունը, որի հետևանքով էլ ընթերցողը չի կարողանում հստակ պատկերացում ունենալ այդ ժամանակաշրջանի իրավական նորմերի վերաբերյալ։ Ընկ. Հակոբյանն այնպես է ներկայացնում ֆեոդալական հասարակության մեջ սոցիալական ամենացածր աստիճանի վրա կանգնած գյուղացիությանը, որ կարծես նրանց դիտում է իբր ֆեոդալների և հոգևորականության հողերն իրենց ձեռքը կուտակողների։ Շինականները,— գրում է Հակոբ-



յանը,— իրավունք են ունեցել գնումների միջոցով լայնացնելու իրենց հողակտորները՝ ինչպես աշխարհիկ, այնպես էլ հոգևոր ֆեոդալների հողերի հաշվին (էջ 285)։ Մեկը մյուսի հետևից շարադրելով եկեղեցական և առաքելական կանոնները՝ մեր հեղինակը հանգում է այն եզրակացության, թե շինականները հողային տիրույթների տեր էին դառնում և սպառնում եկեղեցական ու աշխարհիկ ֆեոդալների հողատիրությանը և միամիտ կերպով հայտարարում է, թե այդ պրոցեսը կանխելու համար էր, որ եկեղեցական կանոնները դաժան միջոցներ էին նախատեսում շինականների համար։

Ընկ. Հակոբյանի աշխատության վերջին գլուխը, անշուշտ, ավելի հաջող է գրված։ Այստեղ հեղինակը ուշագրավ ձևով շարադրում է գյուղացիական շարժումների պատմությունը։ Մատնանշենք, որ այս գլխում բերված մի շարք ուշագրավ փաստերն ու հեղինակի կատարած ճիշտ եզրակացությունները աղաղակող հակասության մեջ են մտնում «շինականներ» ենթագլխի ողջ շարադրանքի հետ և հերքում հեղինակի մի շարք դատողությունները։ Գրքի նախավերջին գլուխը մենք քննության ենք ենթարկում առանձին, նկատի ունենալով, որ այդ գլխում էլ հեղինակը քննել է հարցերի երկրորդ խումբը՝ տնտեսագիտության հարցերը։

* * *

Գրախոսվող աշխատության ամենաընդարձակը յոթերորդ գլուխն է, որն իր ծավալով կազմում է ամբողջ աշխատության մոտ մեկ երրորդը։ Գլուխը վերնագրված է այսպես՝ «Ֆեոդալական հողային ռենտաները Հին և Միջնադարյան Հայաստանում։ Հարկերը և տուրքերը։ Ֆեոդալական պարտավորությունները։ Անմիջական նյութական բարիքներ արտադրողների շահագործման ձևերն և մեթոդները»։

Դրան համապատասխան գլուխը բաժանված է հետևյալ ենթագլուխների՝

1. Աշխատանքային ռենտա կամ կոռային աշխատանք։
2. Արդյունքներով ռենտա։
3. Հոգևոր ֆեոդալներին, վանքերին ու եկեղեցիներին վճարված հարկեր, տուրքեր և ֆեոդալական պարհակներ։
4. Դրամական հարկեր և տուրքեր։

Հենց սկզբից պետք է նշել, որ հայ պատմական և տնտեսագիտական գրականության մեջ ֆեոդալական ռենտայի հարցերն այսպիսի կտրվածքով և սիստեմով դեռևս քննված չեն։ Եթե նկատի չունենանք ակադեմիկոս Մանանդյանի շատ արժեքավոր հոդվածը մարզպանական շրջանի Հայաստանի արքունական հարկերի մասին, ինչպես նաև նրա մի քանի ուրիշ հոդվածներ՝ նվիրված հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմությանը, Թ. Ավդալբեկյանի հոդվածները, որոնք, սակայն, գրված են գլխավորապես հարկերի և հարկային առանձին տերմինների մեկնության ասպեկտով, ապա ընկ. Հակոբյանն առաջինն է, որը փորձեր է անում մանրակրկիտ քննության ենթարկել ֆեոդալական ռենտան, որպես տնտեսական կատեգորիա։ Չի կարելի չնկատել, որ հարցի այսպիսի քննումը լինելով նոր, միաժամանակ կապված է խոշոր դժվարությունների հետ, որոնց հաղթահարումը պահանջում է ոչ միայն համառ աշխատանք հարցերի շարադրության բուն պրոցեսում, այլև մարքսիստական տնտեսագիտությունից որոշ պատրաստականություն։

Մենք տեսանք, որ գրքի չորրորդ գլխում, ուր քննվում էր հողատիրության հարցը, ընկ. Հակոբյանն անտեսել էր հողային սեփականատիրության հարցերը։ Դրա հետևանքով հայտնի չդարձավ, թե վաղ ֆեոդալիզմի շրջանում հողն առանձին մարդկանց սեփականությո՞ւնն էր, թե՞ հողի գերագույն սեփականատերը թագավորն էր։ Հասկանալի է, որ առանց այս հարցի լուծման հնարավոր չէ լուծել ոչ ֆեոդալական ռենտայի և ոչ էլ հարկերի ու տուրքերի հարցը։

Մարքսիստական տնտեսագիտությունն ուսուցանում է, որ ֆեոդալական ռենտան իր զարգացման ընթացքում երեք փուլ է անցել և երեք ձևերով դրսևորվել՝ աշխատավճար, բնավճար և դրամական։ Ֆեոդալական ռենտայի մարքսյան շարադրանքից հետևում է, որ վաղ ֆեոդալիզմի շրջանում ռենտայի տիրապետող ձևը եղել է աշխատավճարը, ավելի ուշ շրջանում՝ բնավճարը և վերջին շրջանում՝ դրամականը։ Ֆեոդալական ռենտայի տիրապետող ձև լինելու հիշյալ հաջորդականությունը սահմանելիս, անշուշտ, Մարքսը նկատի է ունեցել գլխավորապես եվրոպական երկրները և այն էլ թերևս միայն դրանց մեծամասնությունը, աբստրահելով առանձին երկրների զարգացման առանձնահատկություններից։ Ասածներից հետևում է, որ Հայաստանում կամ մի որևէ այլ երկրում ֆեոդալական ռենտայի հարցերը քննելիս ռենտայի վերաբերյալ մարքսյան թեորիայի ընդհանուր դրույթների վրա հենվելով, հետազոտողը պետք է կարողանա բացահայտել տնտեսական ու քաղաքական զարգացման այն կոնկրետ պայմանները, որոնց ներգործության տակ ձևավորվել և զարգացել են ֆեոդալական արտադրահարաբերությունները տվյալ երկրում ու դրան համապատասխան դրսևորվել են ռենտայի տարբեր ձևեր։ Մարքսը տալով ֆեոդալական ռենտայի ընդհանուր սկզբունքները, միաժամանակ նշում է. «Այս չի խանգարում, որ միևնույն—գլխավոր պայմանների կողմից միևնույն—տնտեսական պատվան-

է բացատրել այն, երբ հեղինակը բնավճար ռենտա է համարել նաև այն տուգանքը, որ պարտավոր է վճարել անհիմն պատճառով իր կնոջից բաժանվող ամուսինը։ Ահա ինչ է գրում ընկ. Հակոբյանը այդ կարգի բնավճար ռենտայի մասին։ «Եթե որևէ մեկը, ասում է Գոշը, իր կնոջը առանց լուրջ պատճառի բաց է թողնում, ապա «դատաստան այս լիցի զորդիսն և զկեանսն և զտուն և զհողն և զջուրն և զամենայն ինչ բաժանեսցեն հասարակաց»։ Հանցապարտ ազատի կամ շինականի գույքի կեսը բռնագրավվում ու հանձնվում է անարգված կնոջը» (էջ 376)։

Հարցն այն չէ, որ մատենագրական շատ վկայություններ բերվեն ռենտայի կամ հարկերի տարբեր ձևերի առկայության մասին։ Այլ այն, որ ճշտորեն սահմանվեն և դասակարգվեն ռենտայի և հարկերի պատմական ձևերը։

Բազմաթիվ ու անհամար արդյունքներով ռենտայի տեսակներ են բերված «Հայ գյուղացիության պատմություն» մեծածավալ գրքում և դժվար է ու թերևս անիմաստ ռենտայի այդ նոր տեսակներից թեկուզ մի քանիսի մասին խոսել։ Հեղինակն այնքան է հեռու գնացել, որ իշխանների կողմից թագավորներին հարկեր մուծելն էլ բնավճար ռենտա է համարել։ Այդ կարգի բազմաթիվ «ռենտաներից» բերում ենք մեկը։

«Թովմա Արծրունին թողել է այլ կարգի տեղեկություններ այն մասին, որ Սմբատ 1-ինը զենքի ուժով ստիպում է ոչ միայն Սյունյաց Սմբատ իշխանին, Աբդռահմանի որդիներին, այլև իր վասալ իշխաններին արքունի հարկեր մուծել ոչ թե արաբներին, այլ Բագրատունիների արքունի գանձարանը։ Սմբատ 1-ին թագավորին հարկատու էին ոչ միայն ֆեոդալները, այլև քաղաքի բնակիչները, հազարապետներ և գավառների կառավարիչներ» (էջ 374)։ Նման կարգի բազմաթիվ, հարցի հետ ոչ մի առնչություն չունեցող փաստերով է լրացված ռենտային վերաբերող այն գլուխը, որը բռնում է ամբողջ աշխատության ծավալի մոտ մեկ երրորդը։ Հասկանալի է, որ ֆեոդալական ռենտայի էության նման ըմբռնումը ոչինչ ընդհանուր չունի մարքսիստական պատմագիտության և տնտեսագիտության հետ, ուստի և չի կարող պատկերացում տալ Հայաստանի վաղ ֆեոդալիզմի դարաշրջանի արտադրական հարաբերությունների մասին՝ գյուղացիության, որպես ֆեոդալական հասարակության շահագործվող դասակարգի իրական պատմության մասին։

Այս ամենից բացի, ավելորդ չենք համարում անել մի քանի լրացուցիչ դիտողություններ։

1. Գրքի 8-րդ էջում ասված է, որ պատմագետ Ղուկ. Ինճիճյանը «համարձակ» և «հաջող» փորձեր կատարեց ստուգաբանելու հայ հասարակական հարաբերություններն արտահայտող սոցիալական տերմինների ոչ միայն լեզվական և տեխնիկական իմաստն ու նշանակությունը, այլև նրանց բովանդակությունը» (ընդգծ. մերն են — Հ. Թ., Վ. Պ.)։ Հեղինակը «շատ հաճախ հանգել է ճիշտ ու ընդունելի եզրակացություններին», ասում է ընկ. Ս. Հակոբյանը։ Սակայն հենց որ խոսքը վերաբերում է Ինճիճյանի կոնկրետ աշխատանքին, ընկ. Հակոբյանը նշում է, որ ինքը դեմ է պատմագետի մեթոդոլոգիային և հարցի դրվածքին։ Քանի որ ընկ. Հակոբյանը հայ գյուղացիության պատմությունը հանգեցրել է տարբեր դարերի զանազան տերմինների համեմատական վերծանման, ապա Ինճիճյանին տված նրա գնահատականը զուրկ է հետևողականությունից։ Եթե որևէ մտածող «ճիշտ և ընդունելի եզրակացություններին» է հանգում, ապա մեթոդոլոգիայի մասին ասվածը անհիմն է։

2. Իր աշխատության 9—10 էջերում հեղինակը անդրադառնալով Ալիշանին շեշտում է, որ նա փորձ չի կատարել «գտնել սոցիալական տերմինների զարգացման դինամիկան ու օրինաչափությունը, պարզաբանել այս կամ այն տերմինի ոչ միայն լեզվական, այլև սոցիալական իմաստն ու նշանակությունը։ Այդ է պատճառը (sic), որ նրա արժեքավոր աշխատությունները հնարավորություն չեն ընձեռնում մեկնաբանել Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների պատմությունը»։

Ընկ. Հակոբյանը Ալիշանին իրավամբ դասում է հայ կղերա-ֆեոդալական պատմագետների շարքը։ Տվյալ դեպքում ինչո՞ւ է նման բաներ ակնկալում նրանից, երբ նրա մեթոդոլոգիան այդ թույլ չի տալիս։ Ի՞նչպես կարելի է Ալիշանի կղերա-ֆեոդալական կոնցեպցիայի հիմքում գտնել «տերմինների զարգացման դինամիկան և օրինաչափությունը»։ Նման անհարիր ֆրազները խանգարում են ընթերցողին որևէ կոնկրետ բան հասկանալ հեղինակի ծանր շարադրանքից։

3. Մեր կարծիքով աշխատության էական արատն այն է, որ հեղինակը հայ գյուղացիության երկար դարերի պատմությունը փաստորեն հանգեցնում է «տերմինների զարգացման դինամիկային և օրինաչափություններին»։ Մինչդեռ նա Ինճիճյանի հարցադրումը չի ընդունում, բայց նշում է, որ նա փորձել է բացահայտել տուն, տեր, տանուտեր, նահապետ, նախարար, ազատ, սեպուհ, ռամիկ, շինական տերմինների ծագումն ու զարգացման պատմությունը։ Եթե ընկ. Հակոբյանին թույլատրվում է միայն տերմինների օգնությամբ



«բացել» անցյալի բոլոր դռները, ապա ինչո՞ւ նա քննադատում է, երբ այդպես են վարվում ուրիշները։

Անշուշտ պատմաբանին անհրաժեշտ է բացի շատ և շատ բաներից, հասկանալ նաև տերմինները։ Տերմինները որոշ օժանդակ և կարևոր դեր կարող են խաղալ պատմագետի համար։ Սակայն մարքսիստ պատմաբանը չպետք է պատմությունը բխեցնի տերմիններից, այլ տերմինները պետք է վերծանի, ելնելով իրական պատմությունից։

Միակողմանի է մեր հեղինակը, երբ պնդում է, որ «բոլոր տերմինները արտահայտում են շահագործվող դասի սոցիալական կացությունը» (էջ 48)։ Իսկ ինչո՞ւ միայն շահագործվող և ո՛չ շահագործող դասինն էլ։ Մի՞թե մեր պատմության մեջ չկան տերմիններ, որոնք շահագործողների սոցիալական վիճակի դրսևորումն են։ Այդ իսկ նախարար, սեպուհ, տեր, տանուտեր և այլն, կամ թե հեղինակի մատնանշած բոլոր տերմինները միաժամանակ շահագործողներին չե՞ն վերաբերում։

4. Բացում ենք գրքի 48-րդ էջը և կարդում հետևյալը. «Աշխատության մեջ գյուղացիության պատմությունը շարադրված է նրա զբաղմունքի, արտադրողական ուժերի, արտադրական հարաբերությունների, աշխարհիկ և հոգևոր խոշոր հողատիրության, ֆեոդալական էկոնոմիկայի, արհեստային արտադրության, քաղաքների, քաղաքային կյանքի, աշխատանքի հասարակական բաժանման, դասակարգային պայքարի, շահագործման ձևերի ու մեթոդների պատմության զուգընթաց»։

Իրականում գրքի հեղինակը մեխանիկորեն հայ գյուղացիության պատմությունը շարադրում է այդ ամենին զուգընթաց։ Մինչդեռ մեզ թվում է, որ գյուղացիության պատմությունն իր մեջ ներառնում է այդ ամենը։ Իսկ երբ այն շարադրվում է վերոհիշյալ հարցերին «զուգընթաց», ապա աղոտանում է հայ գյուղացիության պատմությունը։

5. Իր գրքի 13-րդ էջում ընկ. Հակոբյանը կատարում է մի այսպիսի ընդհանրացում. նա գրում է, որ «դասակարգերի և դասակարգային պայքարի ժխտումը ու բացասումը հատուկ է բուրժուական պատմական գիտության ներկայացուցիչներին»։ Որ բուրժուական շատ պատմագիրներ իրենց դասակարգի շահերն ու նպատակը ներկայացնում են իբրև ազգին կամ ամբողջ ժողովրդին հատուկ մի բան՝ դա ճիշտ է։ Հեղինակն իրավացի է, երբ նշում է, որ մի շարք հայ պատմաբաններ այդպես են վարվել։ Սակայն դա բոլորը չէ։ Հայտնի է, որ բուրժուական շատ գիտնականներ ընդունում էին և՛ դասակարգեր և՛ դասակարգային պայքարը։

Հավանաբար ընկ. Հակոբյանը մոռացել է 1852 թվականի մարտի 5-ին Վայդեմայերին գրած Մարքսի նամակը, ուր նա ասում է. «Ինչ վերաբերում է ինձ, ապա ինձ չի պատկանում ոչ այն ծառայությունը, թե ես եմ հայտաբերել դասակարգերի գոյությունը ժամանակակից հասարակության մեջ, ոչ էլ այն, թե ես եմ հայտաբերել նրանց պայքարը միմյանց դեմ։ Բուրժուական պատմաբանները ինձնից դեռ շատ առաջ շարադրել են դասակարգերի այդ պայքարի պատմական զարգացումը, իսկ բուրժուական տնտեսագետները՝ դասակարգերի տնտեսական անատոմիան» («Նամակներ «Կապիտալ»-ի մասին», էջ 50)։

Ելնելով սրանից, Լենինը գրել է. «...դասակարգային պայքարի ուսմունքն ստեղծել է ո՛չ թե Մարքսը, այլ բուրժուազիան՝ մինչև Մարքսը, և այդ ուսմունքը, ընդհանրապես ասած, բուրժուազիայի համար ընդունելի է։ Ով ընդունում է միմիայն դասակարգերի պայքարը, նա դեռ մարքսիստ չէ, նա կարող է դեռ բուրժուական մտածողության ու բուրժուական քաղաքականության շրջանակներից դուրս եկած չլինել... Մարքսիստ է միմիայն նա, ով դասակարգերի պայքարի ընդունումը տարածում է մինչև պրոլետարիատի դիկտատուրայի ճանաչումը» (հ. 25, էջ 531)։

6. Գրքի հեղինակի նայիվ ասույթները հաճախ զարմանալի չափերի են հասնում։ Նրա աշխատության 49-րդ էջում ասված է. «Սովետական-մարքսիստական պատմագրության ներկայացուցիչները և առանձնապես գյուղացիության պատմությունը հետազոտող գիտնականները անվերադարձ կերպով ապացուցել են, որ չկան, պատմությանը հայտնի չեն եղել, ժողովուրդներ առանց անմիջական նախնիների պատմության և հետևաբար չկա և չի կարող լինել գիտական պատմություն, առանց այդ նախնիների կողմից ստեղծած ժառանգության ուսումնասիրության»։ Որքան մեզ է հայտնի, տակավին Մովսես Խորենացին այդպես էր վարվում, երբ գրում էր Հայոց պատմությունը։ Միայն սովետական պատմաբաններին վերագրել այս ծառայությունը, առնվազն անիմաստ է։

7. «Հայ գյուղացիության պատմության» 50-րդ էջում ընկ. Հակոբյանի մի հայտարարություն լուրջ տարակուսանք և շփոթ է առաջացնում իր ընթերցողի մոտ։ Այստեղ կարդում ենք, որ «հայերը տեղական՝ բնիկ ցեղերից ժառանգել են ոչ միայն հողագործությունը, մետաղագործությունը, այլև կուլտուրական կյանքի շատ կողմերը»։ Այստեղից մի եզրակացություն է բխում, այն, որ պատմական Խայասայում հայերը բնիկներ չեն և իրենց

*մայիսից մինչև 1919 թվականի վերջին վերաբերող փաստաթղթերը: Այս փաստաթղթերը մերկացնում են դաշնակցական կառավարության և օտարերկրյա ինտերվենտների հակաժողովրդական քաղաքականությունը Հայաստանում, ցույց են տալիս այդ քաղաքականության հետևանքով սովի և աղքատության մատնված հայ ժողովրդի վիճակը և նրա պայքարն իր ազատության համար:*

*Չորրորդ և հինգերորդ գլուխներում տեղավորված նյութերը նվիրված են Հայաստանում ռևոլյուցիոն շարժման հետագա վերելքին, մայիսյան զինված ապստամբությանը, Հայաստանում Սովետական իշխանություն հաստատելու և ամրապնդելու համար հայ ժողովրդի մղած պայքարին:*

*Ժողովածուն ընթերցող լայն շրջաններին կօգնի ավելի համոզիչ կերպով ըմբռնելու Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի վճռական նշանակությունը Անդրկովկասի ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի պատմական բախտը լուծելու գործում:*

*Այս ժողովածուն մեծ օգնություն կհանդիսանա նաև Անդրկովկասում, ինչպես և Հայաստանում, սովետական կարգեր հաստատելու և ամրապնդելու համար Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների մղած պայքարի պատմությունն ուսումնասիրողներին:*

---

# ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՀԱՅԳՐՔԻ ՈՒ ՀԱՅԿՈՈՊԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳԾՈՎ

*Լենին Վ. Ի.*— Նամակ Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին. *Հայպետհրատ, 1957 թ., գինը 15 կ.:*

*Միտին* — Գիտա-աթեիստական պրոպագանդայի բովանդակությունը և խնդիրները ներկա պայմաններում, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 70 կ.:*

*Չարչօղլյան Ա.*— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի զարգացումը, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 80 կ.:*

*Հարությունյան.*— Հոկտեմբերյան ռևոլյուցիան և սովետական կարգերի հաստատումը Հայաստանում, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 80 կ.:*

Չինաստան, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 8 ռ. 65 կ.:*

*Մելիքյան Հ.*— Մարքսիստական կազմակերպությունները և ռևոլյուցիոն շարժումները Լոռիում, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 1 ռ. 85 կ.:*

*Թովմասյան Ն.*— Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացումը Բուլղարական ժողովրդական ռեսպուբլիկայում, *Քաղ. և գիտ. տարածման ընկեր., 1957 թ., գինը 1 ռ. 85 կ.:*

*Կիրակոսյան Ջ.*—Հնդիկ ժողովրդի ազգայինազատագրական պայքարի ներսական էջը. *Հայպետհրատ, 1957 թ., գինը 85 կ.:*

*Գրիգորյան Հ.*— Հայ հասարակական առաջավոր մտքի պատմությունից, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 7 ռ. 25 կ.:*

*Ոսկանյան Ա.*— Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան և մեր երկրի բնության սոցիալիստական վերափոխումը, *Գիտ. Ակադեմիա, 1957 թ., գինը 2 ռ.:*

### ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Դիկենս Չ.*— Դամբի և որդին, *1-ին հատոր, Հայպետհրատ, 1957 թ., գինը 10 ռ. 20 կ.:*

*Դիկենս Չ.*— Դոմբի և որդին, *2-րդ հատոր, Հայպետհրատ, 1957 թ., գինը 10 ռ. 40 կ.:*

*Նահապետ Քուչակ*— Հայրենի կարգավ, *1957 թ., Հայպետհրատ, գինը 7 ռ. 10 կ.:*

*Թոթովենց Վ.*— Աղավնիներ, *Հայպետհրատ, 1947 թ., գինը 85 կ.:*

*Բրյուսով Վ.*— Բանաստեղծություններ, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 60 կ.:*

*Հյուսյան Մ.*— Գրիգոր Զոհրապ, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 9 ռ.:*

*Հոմերոս*—Ոդիսական, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 6 ռ. 90 կ.:*

*Զարյան Ն.*— Արև և ստվեր, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 5 ռ. 75 կ.:*

*Սադրիդդին Այնի*— Բուխարա, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 6ռ. 10 կ.:*

*Տոլստոյ Լ.*— Աննա Կարենինա, *1-ին հատոր, Հայպետհրատ, 1957 թ., գինը 12 ռ. 70 կ.:*

*Տոլստոյ Լ.*— Աննա Կարենինա, *2-րդ հատոր, Հայպետհրատ, 1957 թ., գինը 11 ռ. 55 կ.:*

*Հաֆեզ* — Լիրիկա, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 3 ռ. 25 կ.:*

*Պանովա Վ.*—Սերյոժա, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 1 ռ. 65 կ.:*

*Ամինե Ավդալ* — Քրդական ժողովրդական հեքիաթներ, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 1 ռ. 30 կ.:*

*Նար-Դոս* — Պայքար, Մահը, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 11 ռ. 65 կ.:*

*Արազի Մ.*— Երկերի ժողովածու, *հատոր 3-րդ, Հայպետհրատ, 1957 թ., գինը 7 ռ. 25 կ.:*

### ԳԻՏԱԿԱՆ, ԳԻՏԱ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Բուլավսկի Ս. Կ.*— Իտալիա, *Հայպետհրատ, գինը 5 ռ. 05 կ.:*

*Ժողուե Դե Կաստրո* — Սովի աշխարհագրություն, *Հայպետհրատ, 1957 թ., գինը 7 ռ. 80 կ.:*

*Աճառյան Հ.*— Լիակատար քերականություն հայոց լեզվի, *3-րդ հատոր, Գիտ. Ակադեմիա, 1957 թ., գինը 34 ռ.:*

*Բաղդասարյան Ա.*—Արեգակի էներգիայի ռեսուրսները և նրանց օգտագործման հեռանկարները Սովետական Հայաստանում, *Գիտ. Ակադ., գինը 1 ռ. 10 կ.:*

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении. тел. 2—03—18, 2—56—92, 2—04—66.



ՎՖ 09786 Պատվեր 2422 Տիրաժ 5900
Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 17/X 1957 թ.:
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51:

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

## ԻՆՉ ՊԵՏՔ Է ԻՄԱՆԱԼ ՊԵՏԱԿԱՆ 3%-ԱՆՈՑ ՆԵՐՔԻՆ ՇԱՀՈՂ ՓՈԽԱՌՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Պետական 3%-անոց ներքին շահող փոխառության պարտատոմսերը բաց են թողնված 200 և 100 ռ. արժողությամբ։ Հիմնական միավորը հանդիսանում է 200 ռուբլիանոց պարտատոմսը, իսկ 100 ռուբլիանոց պարտատոմսը 200 ռուբլիանոց պարտատոմսի կեսն է։*

*Այս փոխառության գծով տարեկան կայանում է շահումների վեց հիմնական խաղարկություն՝ հունվարի 30-ին, մարտի 30-ին, մայիսի 30-ին, հուլիսի 30-ին, սեպտեմբերի 30-ին, նոյեմբերի 30-ին և մեկ լրացուցիչ խաղարկություն՝ սեպտեմբերի 30-ին։*

*Հիմնական խաղարկության շահումները սահմանված է՝ 50 000, 25 000, 10 000, 5 000, 1000 և 400 ռուբլի, իսկ լրացուցիչ խաղարկության ժամանակ նաև 100 000 ռուբլի։*

*Հիմնական խաղարկություններում ընկած շահումները վճարվում են անկախ պարտատոմսերը ձեռք բերելու ժամկետից, իսկ լրացուցիչ խաղարկությունում ընկած շահումները վճարվում են այն պարտատոմսերով, որոնք ձեռք են բերվել ոչ պակաս քան 9 ամիս առաջ մինչև լրացուցիչ խաղարկության օրը, այսինքն՝ սեպտեմբերի 30-ը, և իրենց կից ունեն 10-րդ և հետագա տալոնները։ Մինչև 1958 թ. հունվարի 1-ը ձեռք բերված պետական 3%-անոց փոխառության պարտատոմսերի վրա կլինեն 11-րդ տալոնները և դրանք կմասնակցեն 1958 թ. սեպտեմբերի 30-ին կայանալիք լրացուցիչ խաղարկությանը, ինչպես նաև 6 հիմնական խաղարկություններին։*

*1958 թ. հունվարի 1-ից հետո ձեռք բերված պարտատոմսերը իրենց կից չեն ունենա 11-րդ տալոնը և նրանք չեն մասնակցի 1958 թվականի լրացուցիչ խաղարկությանը։*

*ՊԵՏԱԿԱՆ 3%-ԱՆՈՑ ՓՈԽԱՌՈՒԹՅԱՆ ՊԱՐՏԱՏՈՄՍԵՐ ԿԱՐԵԼԻ Է ՁԵՌՔ ԲԵՐԵԼ ԲՈԼՈՐ ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԴՐԱՄԱՐԿՂՆԵՐՈՒՄ ԵՎ ՑԱՆԿԱՑԱԾ ԺԱՄԱՆԱԿ ԵՏ ՏԱԼ ՈՒ ՍՏԱՆԱԼ ԱՐԺԵՔԸ։*

ՊԵՏԱՇԽՆԱՅԴՐԱՄԱՐԿՂՆԵՐԻ ԵՎ ՊԵՏՎԱՐԿԻ ՀՍՍՌ
ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ